ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՄԼԳ.

# ԴՐԱՄԱԿԱՆ ՇՐՋԱՆԱՌՈՒԹԻՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

## ՍԿԶԲԻՑ ՄԻՆՉԵՒ Ժ. ԴԱՐ Յ. Ք.Ի

Խ. Ա. ՄՈՒՇԵՂԵԱՆ

ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1979



# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՀԱՏՈՐ ՄԻԴ.

---

# NATIONALBIBLIOTHEK

BAND 224

# MÜNZENUMLAUF IN ARMENIEN
## VOM BEGINN BIS ZUM 10. JH. N. CHR.

VON

CH. A. MUSCHEGHIAN

WIEN

MECHITHARISTEN-BUCHDRUCKEREI

1979

# ԴՐԱՄԱԿԱՆ ՇՐՋԱՆԱՌՈՒԹԻՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

## ՍԿԶԲԻՑ ՄԻՆՉԵՒ Ժ. ԴԱՐ Յ. Ք.Ի

Խ. Ա. ՄՈՒՇԵՂԵԱՆ

ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1979

ԱՐՏԱՏՊՈՒԹԻՒՆ

«ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ»Է

1976, Թ. 1—12, էջ 441—470, 1975, Թ. 10—12, էջ 423—448, 1975, Թ. 7—9, էջ 321—356, 1974, Թ. 7—9, էջ 335—350, 1974, Թ. 10—12, էջ 505—520, 1977, Թ. 1—12, էջ 149—204

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Արեւելքում հին դրամների ու դրամական գանձերի յայտնութիւններով ամենահարուստ երկրներից մէկը հանդիսանում է Հայաստանը: Դրամագիտերը ցոյց են տալիս, որ Հայաստանում միշտ յայտնաբերուել եւ մեր օրերում նոյնպէս տեղական բնակչութեան դաշտային ու շինարարական աշխատանքների միջոցին, ինչպէս նաեւ ծաւալուող հնագիտական պեղումների շնորհիւ, յայտնաբերւում են տարբեր դարաշրջանների պատկանող հին ու միջնադարեան դրամներ: Հայկական ՍՍՀ ողջ տարածքի վրայ հազիւ թէ նշուի որեւէ շրջան, ուր գտնուած չլինեն տարբեր ազգային ծագում ունեցող դրամներ ու դրամական ամբողջական գանձեր: Պատմական բնոյթի այդ վկայութիւնների առատութիւնն ինքնստինքեան օրինաչափ արտացոլումն է այն դերի ու նշանակութեան, որ գրաւոր աղբիւրների հաղորդմամբ ունեցել է հայ ժողովուրդը Արեւելքի ու Արեւմուտքի միջազգային ապրանքափոխանակութեան գործում:

Հայաստանի դրամական գանձերի ուսումնասիրութիւններն ունեն աղբիւրա-

գիտական նշանակութիւն, եթէ նկատի ունենանք, որ դրանք կապուած են Արեւելքում տարբեր հարստութիւնների ծագման ու զարգացման պատմութեան հետ: Հետազօտութիւններն այս ուղղութեամբ լոյս կը սփռեն ոչ միայն բուն Հայաստանի, այլեւ նրա հետ առնչուած երկրների պատմութեան հարցերին (ժամանակագրութեան, չափագիտութեան, պատկերագրութեան, հնագրութեան, արուեստի եւ այլն):

Ներկայ աշխատութեամբ ուրուագծւում է Հայաստանի դրամական շրջանառութեան պատմութիւնը սկզբից մինչեւ Ժ. դար յ. Ք.ի վերաբերեալ: Հիմնականը տեղում գտնուած դրամների ու դրամական գանձերի քննութեան արդիւնքներն են, որ ներկայացնում է հեղինակը: Առաջիկայում հին ու միջնադարեան դրամների նոր յայտնաբերումները կարող են լրացնել եղած պատկերացումները հայկական քաղաքներում տարածուած դրամակշռային դրութիւնների, տեղական ու օտար տիրապետութիւնների կողմից թողարկուած դրամների ժամանակագրութեան, պատկերագրութեան եւ այլ հարցերի մասին:

Հեղինակը յայտնում է իր երախտագիտութիւնը «Հանդէս Ամսօրեայ» ուսումնաթերթի խմբագրութեանը սոյն աշխատութեան հրատարակման համար:

Խ. Ա. ՄՈՒՇԵՂԵԱՆ

## ԳԼՈՒԽ Ա.

# ԴՐԱՄԱԿԱՆ ՇՐՋԱՆԱՌՈՒԹԵԱՆ ՍԿԶԲՆԱՒՈՐՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

### Ա. ԱՅՐԱՐԱՏՈՒՄ ԵՒ ՍԻՒՆԻՔՈՒՄ ԳՏՆՈՒԱԾ Մ. Թ. Ա. 6—5ՐԴ ԴԱՐԵՐԻՆ ՊԱՏԿԱՆՈՂ ԴՐԱՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Մետաղեայ դրամների շրջանառութիւնը, որ ծայր էր առել յունական աշխարհում մ. թ. ա.* 8—7*րդ դարերի սահմանագլխին, բաւական մեծ ուշացումով արտայայտուեց Հայաստանում: Վաղ հայկական թագաւորներ Երուանդ* 1*ին Սակաւակեացը* (585—550) *եւ կամ նրա անմիջական յաջորդը՝ Տիգրան Երուանդեանը, դրամներ չեն թողարկել: Հին աշխարհի դրամագիտական նիւթի մէջ հայկական ծագում ունեցող հնամենի դրամներ յայտնի չեն: Հայաստանում գտնուած ամենահին դրամները վերաբերում են մ. թ. ա.* 6—5*րդ դարերին եւ պահպանուել են հատ ու կենտ նմուշներով:*

*Դրանք հետեւեալներն են.*

1. *Աքեմենեան արծաթ դրամ — մէկ հատ*

2. Միլետեան արծաթ դրամ — երկու հատ

3. Աթենական արծաթ դրամ — մէկ հատ

Առաջինի՝ աքեմենեան արծաթ դրամի մասին մենք գիտենք Ե. Ա. Պախոմովի հաղորդագրութիւնից։ 1905 թուին, Ե. Ա. Պախոմովը Երեւան քաղաքում, անձամբ տեսել է այդ դրամը եւ իր տպաւորութիւնները յայտնել է Ադրբեջանի դրամագիտական նիւթերին նուիրուած գրքում[1]։ Տարաբախտաբար վաստակաշատ գիտնականը յիշատակելով այդ դրամի մասին, չի տուել նրա մանրակրկիտ նկարագիրը կամ լուսանկարը։ Աւելին, գիտութեանը մինչեւ օրս յայտնի չէ թէ ինչ է եղել հաղուագիւտ այդ դրամը, որտեղ է այն պահւում կամ թէ արդեօք գոյութիւն ունի նոյն վիճակում ինչպէս տեսել է Ե. Ա. Պախոմովը։ Վերջինիս հաղորդագրութիւնից որոշակի իմացւում է, որ դրամը իր կշռային անուանումով եղել է աքեմենեան «Սիկղ»։ Տարիներ անց, այդ վկայութեանն անդրադարձել է Ա. Ն. Զոգրաֆը եւ հիմք ընդունելով Ե. Ա. Պախոմովի դրուոր յայտարարութիւնը դրամը վերագրել է մ. թ. ա. 6—4րդ դարերին, այսինքն աքե-

[1] Е. А. Пахомов, Монетные клады Азербайджана и Закавказья. Труды общества обследования и изучения Азербайджана, вып. 3, Баку, 1926 г., стр. 36, թի. 1.

մենեան դրամների թողարկման ընդհանուր ժամանակաշրջանին[2]։

Ցիրաւի, Աքեմենեանները շուրջ երկուհարիւր տարի թողարկել են դրամներ, ըստ որում առաւելապէս փոքրասիական երկրամասերում, ուր մինչ Դարեհից տիրակալութիւնը դրամական շրջանառութիւնը նշանակալից զարգացում էր ապրել։ Աքեմենեանների օրօք Փոքր Ասիայի վաճառաշահ քաղաքներում ապրանքա – փոխանակութիւնը կատարւում էր ոչ միայն աքեմենեան, այլ և միաժամանակ միլետեան, փոկէյան, եգինեան, եւբէյան ու այլ ծագման դրամներով։ Աքեմենեանները թողարկում էին ոսկեայ ու արծաթեայ դրամներ, որոնց վրայ պատկերները կնքւում էին նախապէս միայն մի կողմից։ Որոշակի կշռով ձուլուած ոսկեայ կամ արծաթեայ կլորակ հատիկի վրայ, շիկացած վիճակում, դրոշմում էին աքեմենեան արքայի պատկերը ուռուցիկ տեսքով։ Միապետը ներկայացւում էր ողջ հասակով, մի ոտքով ծնրադիր, նետ ու աղեղ և կամ դաշոյն բռնած, կիսադէմ, մօրուքաւոր, ճոխ վարսերով, գլխին ճառա—

---

[2] Зограф А. Н., Распространение находок античных монет на Кавказе. Труды отдела нумизматики Государственного Эрмитажа, том I, Ленинград, 1945, стр. 56, թիւ 25. Այսուհետեւ այն աշխատութիւնը յիշատակւում է ЗК տառերով։

գայթաւոր թագ, կրծքից մինչեւ ոտքերը ծիրանու մէջ[3]:

Աքեմենեանների դրամական դրութեան հիմնական միաւորը ոսկու գծով կոչւում էր դահեկան կամ դարեհկան, ΔΑΡΕΙΚΟΣ, սերուած Դարեհ թագաւորի անունից: Ըստ էութեան դահեկանների թողարկումը սկսուել էր դեռեւս Կիւրոս Մեծի (558—538) թագաւորութեան տարիներից, բայց Դարեհ առաջինի (524—486) օրօք այն դարձել էր առաւել բնորոշ: Իւրաքանչիւր դահեկանի օրինական քաշը սահմանուած էր 8,40 գրամ, մաքուր ոսկուց, կազմելով հին պարսկական «Մինէ» կամ «Մնա» (MNA), հայերէնում «Մնաս» կոչուած ծանրութեան չափի 1/60 մասը[4]: Իբրեւ վճարամիջոց դահեկանները երկար մնացին շրջանառութեան մէջ:

Արծաթի գծով Աքեմենեանների հիմնական միաւորը կոչւում էր «Սիկլ» կամ «Սիկղ» (ΣΙΓΛΟΣ), որի կշիռը սահմանուած

---

[3] DE MORGAN JACQUES, Manuel de Numismatique orientale de l'Antiquité et du Moyen âge. Publication achevée sous la direction de K. J. Basmadjian. Tome I, Paris 1923—1936, p. 40—47. Հետագայում այս աշխատութիւնը յիշատակւում է MN տառերով:

[4] Зограф А. Н., Античные монеты, Материалы и исследования по археологии СССР, թի. 16, АН СССР, Москва-Ленинград, 1951, стр. 42. Հետագայում այն աշխատութիւնը յիշատակւում է Зограф անուանումով:

էր 5,60 գրամ։ Առեւտրում մէկ դահեկանը փոխանակւում էր 20 սիկղով։ Այլ կերպ ասած 8,40 գրամ ոսկու դիմաց ընդունւում էր 112 գրամ արծաթ։ Սակայն աքեմենեան դրամները բուն Իրանի եւ Հայաստանի ներքին առեւտրում լայն տարածում չեն ունեցել։

Հայաստանում ապրանքափոխանակութիւնը մ. թ. ա. 6րդ դարում վարուել է առաւելապէս բնատուր ձեւով, այսինքն ապրանքն ապրանքով եւ կամ ձուլածոյ ոսկու, ինչպէս նաեւ արծաթի կշռային չափով։ Հետեւապէս աքեմենեան արծաթ դրամի երեւանեան օրինակը, լինելով միակ վկայութիւնը, դեռեւս հնարաւորութիւն չի ընձեռնում դատելու թէ որքանով այդպիսիները տարածուած են եղել եւ վճարամիջոցի նշանակութիւն են ունեցել հայկական շուկաներում։ Նկատենք, որ Ե. Ա. Պախոմովը տեսնելով այդ խիստ ուշադրաւ դրամը եւ իմանալով նրա «Երեւանեան նահանգում» գտնուած լինելու մասին, սակայն իր հաղորդման մէջ կասկած է յայտնել դրամի տեղական գիւտի վերաբերեալ հնարաւոր համարելով դրսից բերուած լինելու վարկածը։

Միանգամայն այլ իրադրութեամբ մեր առաջ ներկայանում են միլետեան դրամները։ Սոյդ գիտենք, որ դրանք ի յայտ են եկել ոչ թէ պատահականօրէն, այլ հնագիտական պեղումների շնորհիւ, ուրարտական քաղաք–

ամրոց Երեբունիի, այսինքն այսօրվա Երեւանի հիմքից: Յոնիական ծագման մ. թ. ա. 6—5րդ դարերի արծաթեայ այդ դրամների հետ գտնուել են նոյն ժամանակաշրջանին պատկանող երկաթէ նետասլաքներ եւ ուլունքներ: Դրամները, բարեբախտաբար լաւ են պահպանուել: Առանց գրութեան, բարձրաքանդակ առիւծադէմ պատկերներով, նոյնանման, բայց տարբեր կնիքներով դրուագուած երկու դրամները իրենց հակառակ կողմերի վրայ ունեն քառակուսի փոսիկներ: Նմանօրինակ արծաթ դրամներ թողարկւում էին մ. թ. ա. 6—5րդ դարերում փոքր Ասիայի յոնիական ծովափի վաճառաշահ քաղաքներում, ըստ որում առաւելապէս Միլետում, որը մետաղեայ դրամների թողարկման նշանաւոր կենտրոններից մէկն է եղել հին աշխարհում: Առիւծի գլուխը բարձրաքանդակ պատկերով ներկայացնող դրամներն ամենուրեք յայտնի էին իբրեւ «Միլետեան» դրամներ, չնայած կարող էին դրուագուած լինել ոչ անպայման Միլետում, այլ նաեւ յոնիական ուրիշ քաղաքներում: Մեծ է եղել Միլետի դերն ու նշանակութիւնը Փոքր Ասիայի դրամագործութեան մէջ: Նրանում է ծագել հնագոյն դրամակշռային դրութիւններից մէկը՝ այսպէս կոչուած «Միլետեան» դրամական դրութիւնը: Այդ դրութեան հիմնական միաւորը ոսկու եւ արծաթի բնական խառնուրդը հանդիսացող էլեկտր մետաղից 14 դրամ քաշով ստա-

տեր (ΣΤΑΤΗΡ) կոչուող դրամն էր: Մաքուր ոսկին էլեկտրի մէջ հանդէս էր գալիս մօտ 50% չափով, թէեւ պատահում էր եւ աւելին[5]:

Միլետեան էլեկտրէ ստատերը համապատասխանաբար ստորաբաժանւում էր 1/2, 1/3, 1/4, 1/6, 1/12, 1/24, 1/48, եւ 1/96 մասերի: Էլեկտրի եւ արծաթի փոխյարաբերութիւնը այդ ժամանակների առեւտրում դրսեւորուել էր 1 : 10 չափով[6]: Երեւանում գտնուած «միլետեան» արծաթեայ դրամները իրենց վրայ ունեցած քառակուսի փոսիկներով (QUADRATUM INCUSUM) միանգամայն բնորոշ են դրամագործութեան հնամենի շրջանի վերջին եւ դասական շրջանի սկզբին, այսինքն այն ժամանակներին, երբ դեռեւս հնուց մնացած զուտ արհեստական բնոյթի մակերեսային խորութիւնները դրամների վրայ պահպանւում էին, բայց նրանց մէջ նշւում էին պատկերներ: Առաւել պարզ այդ խորութիւնը դիտւում է մ. թ. ա. 6րդ դարի վերջին եւ մ. թ. ա. 5րդ դարի սկզբին: Երեւանեան օրինակների վրայ քառակուսի փոսիկների մէջ դիտւում են աստղաձեւ զարդանշաններ: Սակայն յիշեալ դրամները ուշադրաւ են նաեւ իրենց կշռային չափերով:

Դրանից իւրաքանչիւրը պահպանուել է

---

[5] Зограф, стр. 41—42.

[6] Fr. Schrötter, Wörterbuch der Münzkunde, Berlin, 1930, s. 174. Հետագայում այս աշխատութիւնը յիշատակւում է Schrötter անուանումով:

0,70—0,80 *գրամ քաշով։ Անշուշտ երկու գրամի կշռային տուեալներով պատկերացում կազմել ողջ դրամական դրութեան մասին հնարաւոր չէ։ Այդուհանդերձ կշռային այդ չափերը մօտենում են մ. թ. ա. 6րդ դարի կէսից Միլետոսում ընդունուած Եգինեան դրութեամբ թողարկուող օբողոսներին* (ΟΒΟΛΟΣ)*։ Յիրաւի, Եգինայում դրուագում էին արծաթէ սատերներ* 12,14 *գրամ օրինական քաշով, որոնցից իւրաքանչիւրը տեսականօրէն հաւասարազօր էր երկու դրախմայի, ըստ որում մէկ դրախման պարունակում էր իր մէջ վեց օբողոս։ Վերջինս իր հերթին ստորաբաժանւում էր աւելի փոքր միաւորների*[7]*։*



Յոնիական արծաթեայ դրամ, թողարկուած մ. թ. ա. 6—5րդ դարերում, Միլետոս քաղաքում։ Գտնուած 1956 թուին, Էրեբունի ամրոցի պեղումներից։ Մեծացուած 3 անգամ

---

[7] Head V. Barclay, Historia Numorum. A manual of Greek numismatics. New and enlarged edition, Oxford, 1911, Reprint, London, 1963, p. 585. *Հետագայում այս աշխատութիւնը յիշատակւում է* Head *անուանումով։*

Միլետեան դրախմայի կշիռը օրինական սահմանումով 6,07 գրամ էր: Գործնականում կշռային այդ չափով բուն Միլետում թողարկուող դրախման մեծ տարբերութիւն չունէր աքեմենեան 5,60 գրամ կշռող սիկլից (ΣΙΓΛΟΣ), որի 1/6 մասը ներկայացնում էր մէկ օբոլոս՝ մօտ 0,93 գրամ: Այս տուեալներից ելնելով հարկ է ենթադրել, որ Երեւանում գտնուած արծաթեայ փոքրիկ դրամները կամ Միլետեան օբոլոսներ են, մօտ մէկ գրամ քաշով, կամ դրանք թողարկուել են ատտիկեան կշռային դրութեամբ, որի մէկ օբոլոսը 0,728 գրամ էր: Կշռային չափի չնչին շեղումը՝ 0,27 գրամ, որ ներկայ դէպքում դիտւում է տեսականի եւ իրականի միջեւ, կարող էր առաջանալ ոչ միայն ձեռքի աշխատանքի պայմաններից, այլեւ շրջանառութեան մէջ դրամների մաշուելուց: Նկատենք նաեւ, որ ընդհանրապէս պեղածոյ դրամները մաքրման ենթարկուելուց յետոյ նոյնպէս կորցնում են իրենց նախապէս ունեցած կշիռը, թէկուզ շատ աննշան չափով: Սակայն այդ բոլոր հնարաւորութիւններով հանդերձ մենք ունենք խիստ փոքր կշռային չափի արծաթ դրամներ: Այդպիսիները թողարկւում էին մանր առեւտրի համար եւ տեղական շուկայի նեղ սահմաններից սովորաբար դուրս չէին անցնում: Յայտնի է նաեւ, որ մ. թ. ա. 6—5րդ դա-

*բերում Միջերկրականի յոնիական վաճառաշահ քաղաքներում, մասնաւորապէս Միլետում, արծաթի գծով եգինեան տիպար օբոլոսներից բացի թողարկւում էին կըրկնակի ու եռակի օբոլոսներ եւ կամ աւելի փոքր կշռային չափի արծաթ դրամներ, որոնք բոլորն էլ մնում էին տեղական շուկայի շրջանառութեան մէջ: Դրամագիւտերի հաշուարքը ցոյց է տալիս, որ ոչ Հայաստանում, եւ ոչ էլ նրան հարեւան անդրկովկասեան երկրներում մինչեւ օրս չեն գտնուել այսպէս կոչուած «Միլետեան» փոքր կշռային չափի արծաթ դրամներ: Երեւանում գտնուած նմուշներն արտաքին առեւտրի համար բնորոշ չեն եւ հազիւ թէ վկայեն Արարատեան ու յոնիական քաղաքների ապրանքափոխանակութեան մասին: Դրանք լայնօրէն տարածուած են եղել Միջերկրականի փոքրասիական շուկաներում:*

*Հայաստանում հազուադէպ այդ երկու դրամները շատ քիչ են փաստելու համար, որ առեւտուրը Փոքր Ասիայից նրանց բերել է Արաքսի հովիտը:* Զուտ ներքին շուկային բնորոշ փոքր արժեչափի նմանօրինակ դրամների նոր յայտնութիւնները միայն, առաջիկայում կարող են հնարաւորութիւն ընձեռնել դատելու թէ արդեօք այդպիսիները չեն հանդիսացել տեղական դրամագործութեան արգասիք, ճիշտ այնպէս ինչպէս Բոսփորում մ. թ. ա. 6րդ դարում, միլետեան դրամների

ընդօրինակութեամբ թողարկում էին տեղական կերտուածքի դրամներ [8]:

*Մեր այս հարցադրումը կարող է հաստատուել կամ բացասուել դրամագիտական ու հնագիտական նորայայտ տուեալներով:*

*Վերջին հաշուով, Երեւանի հիմքում, Երեբունի ամրոցում, պալատական շէնքի փլատակներից ի յայտ եկած, մ. թ. ա. 6—5րդ դարերի արծաթեայ դրամներն առայսօր մնում են իբրեւ բացառիկ կարգի վկայութիւններ: Դրանց նոր օրինակների յայտնաբերումները շատ կարեւոր են ոչ միայն դրամագիտութեան, այլ եւ մեր հայկական պատմութեան շատ հարցերի համար: Աքեմենեանների օրօք Հայաստանի եւ Փոքր Ասիայի միջեւ եղած առեւտրա—դրամական փոխ—յարաբերութիւնների անմիջականութիւնը պարզելու համար, պահանջւում են ոչ թէ երկու այլ աւելի վկայութիւններ:*

*Ինչ վերաբերում է երրորդ վկայութեանը՝ աթենական դրամին, ապա դա գտնուել է Սիսիանում, շինարարական աշխատանքների ժամանակ 1963 թուին: Դրամը թանգարանին է յանձնել տեղի բնակիչ, շինարար Ռափայէլ Եղիազարեանը: Պատկերագրութեան տուեալներով արծաթեայ այդ դրամը թողարկուել է Յունաստանի Աթէնք քաղաքում մ. թ. ա. 6—5րդ դարե-*

---

[8] Д. Б. Шелов, Монетное дело Боспора VI—VII вв., Москва, 1956, стр. 18, 76.

րում: Զափագիտական առումով այն ատտիկեան դրութեան տետրադրախմա է 16,32 գրամ մաքուր արծաթի կշռով եւ 27 միլիմետր տրամագծով: Դրամի մի կողմին յատակօրէն դիտւում է Աթէնքի պաշտպան դիցուհի Աթենասի կիսադէմ պատկերը, իսկ միւս կողմին պատկերուած է քաղաքի խորհրդանշանը՝ բու թռչունը եւ փողերանոցի անուան յունատառ կրճատ գրութիւնը: Ելնելով դրամագիտական տեղագրական տուեալներից, կարելի է ասել, որ ողջ Անդրկովկասում մ. թ. ա. 6—5րդ դարերին թողարկած աթենական տետրադրախմաները խիստ հազուադէպ են: Սիսիանում յայտնաբերուած օրինակը Հայկական ՍՍՀ տարածքի վրայ առաջին պաշտօնապէս արձանագրուած փաստն է: Յայտնի է նաեւ, որ դրամագործութեան մէջ Աթէնքում աւելի վաղ քան հին աշխարհի մէկ ուրիշ քաղաքում, դրամները թողարկում էին երկու կողմից դրոշմուած պատկերներով: Երկու կողմից փորագրուած պատկերներով կնիքների գործածութիւնը սկսուել է մ. թ. ա. 6րդ դարից, մի ժամանակաշրջանից, երբ յունական աշխարհում լայն ընդունելութիւն էր գտել ատտիկեան դրամա-կշռային դրութիւնը: Վերջինիս հիմնական միաւորը արծաթի գծով դրախման էր, սահմանուած 4,36 գրամ քաշով: Ա-

տիկեան դրամա–կշռային համակարգի սկըզբունքներին մենք կ՚անդրադառնանք ստորեւ։ Սակայն կարեւոր է նկատել, որ բարձրորակ արծաթից այս դրամի կշիռը (16,32 դրամ) միանգամայն համապատասխանում է չափագիտութեան ատտիկեան տուեալներով թողարկուող տետրադրախմաների իրական քաշին։ Մինչեւ մ. թ. ա. 4րդ դարի վերջին տասնամեակները, երբ դեռ միջազգային առեւտրում չէին երեւացել Ալեքսանդր Մակեդոնացու դրամները, աթենական տետրադրախմաները նշանակալից տարածում են ունեցել։ Ուշադրաւ է, որ հին թողարկման աթենական դրամների վրայ որոշակի դիտւում է դրամագործութեան վաղ ժամանակներից մնացած այսպէս կոչուած QUADRATUM INCUSUM հատուածքը։ Այդ քառակուսի խորութիւնները շատ լաւ վկայում են, որ Սիսիանում գտնուած օրինակը վերաբերում է մ. թ. ա. 6րդ դարի վերջին եւ կամ 5րդ դարի սկզբին։ Սակայն եղե՞լ են արդեօք Հայաստանում շրջանառութեան մէջ յիշեալ պատկերագրութեան աթենական դրամները։ Որքան էլ ուշագրաւ եւ հետաքրքրական լինի դրամի յայտնութիւնը, այդուհանդերձ Հայաստանում ունեցած նրա դերի ու նշանակութեան մասին Սիսիանի այս եզակի օրինակի հիման վրայ դատել հնարաւոր չէ։



Յունական չորեքդրամեան, թողարկուած Աթենքում, մ. թ. ա. 6—5րդ դարերում: Գտնուած Սիսիանում 1963 թուին: Մեծացուած 1.5 անգամ

*Ամփոփելով մեր խօսքը Հայաստանում գտնուած ամենահին դրամների մասին, կարող ենք ասել, որ դրանք վերաբերում են մ. թ. ա. 6—5րդ դարերին եւ իրենց պատկերագրութեան ու կշռային տուեալներով ներկայացնում են հին պարսկական, միլեթեան եւ ատտիկեան դրամակշռային դրութիւնները, որոնք ընդունուած են եղել փոքրասիական շուկաներում: Հայաստանում դրանք յայտնուել են հատ ու կենտ նմուշներով, արձանագրուած Այրարատում եւ Սիւնիքում: Այդ բացառիկ կարգի վկայութիւնները դեռեւս հնարաւորութիւն չեն ընձեռնում դատելու Աքեմենեանների ժամանակ հայկական շուկաներում տարածուած դրամների հիմնական խմբերի մասին: Սակայն դրանք պատահականութիւններ չեն, այլ մ. թ. ա. 6րդ դարի վերջին եւ առաւելա–*

պէս 5րդ դարի տնտեսական կեանքին վերաբերող վկայութիւններ :

Եթէ մի կողմ թողնենք դրամագիտական վկայութիւնները եւ հարցին մօտենանք տեսականօրէն, ապա բացառուած չէ, որ միջազգային առեւտրի մղումով մ. թ. ա. 6—5րդ դարերում ուշ հնամենի կամ վաղ դասական շրջանի դրամները Փոքր Ասիայից կարող էին թափանցել հայկական շուկաները, յատկապէս տարանցիկ առեւտրի մայրուղիներին մօտ գտնուող հայաբնակ երկրամասերը : Վերջիններիս բնակչութիւնը պէտք է որ ծանօթ լինէր դրամի գործածութեանը : Հետեւապէս Հայաստանը չէր կարող Առաջաւոր Ասիայի դրամային շրջանառութեան ոլորտից դուրս մնալ : Հայկական լեռնաշխարհի վրայով անցնող կարաւանները տեղական շուկաներն էին բերում օտարերկրեայ ապրանքներ : Հայերը եւս իրենց արտադրութեան սեփական բերքով մասնակցութիւն ունէին համաշխարհային առեւտրին : Պատահական չէ, որ պատմահայր Հերոդոտոսը (485—425) այնքան հետաքրքրական ձեւով նկարագրել է Եփրատի վրայով Հայաստանի եւ Բաբելոնի միջեւ կատարուած ապրանքափոխանակութիւնը[9] : Արդէն մի փոքր ուշ Քսենոփոնը (430—354) իր «Կիւրոպեդիա»ի մէջ հայերին ուղղուած արքայական խօս–

[9] Геродот, История, том I, перевод с греческого Ф. Г. Мищенка, Москва, 1885, стр. 101.

քում, յիշատակել է դրամի նշանակութեան մասին ապրանքներ ձեռք բերելու գործում:

Աքեմենեան թագաւոր Կիւրոս Մեծը դիմելով հայերին յայտնել է այն միտքը, որ թանկարժէք իրերը, զարդարանքները եւ ընդհանրապէս «այն ամենն ինչով կարելի է կեանքն աւելի գեղեցիկ եւ ուրախ դարձնել» դրամով է ձեռք բերւում[10]: Քսենոփոնի շարադրանքի մի այլ տեղից իմացւում է նաեւ, որ Աքեմենեանների միապետը դիմելով հայերին պահանջում է ծախու ապրանքներ բերեն, եթէ կամենում են վաճառել[11]: Սակայն նախահելլենիստական ժամանակներին վերաբերող դրամների հազուադիպութիւնը մեծապէս դժուարացնում է պարզել Եփրատի ու Տիգրիսի ակունքների մօտ, Ծոփքի, Փոքր Հայքի, ինչպէս նաեւ Վանայ լճի աւազանում եղած դրամային տնտեսութեան բնորոշութիւնը: Պետական կնիքով երաշխաւորուած, որոշակի կշռային չափերով թողարկուած մետաղեայ դրամների շրջանառութիւնը, որ բազմաթիւ վկայութիւններով մ. թ. ա. 7—5րդ դարերի վերաբերեալ փաստուած է Փոքր Ասիայի յոնիական քաղաքների եւ բուն Յունաստանի համար շատ աննշան, հազիւ նշմարելի չափով

10 Մանանդեան Հ., Քննական տեսութիւն հայ ժողովրդի պատմութեան, հատոր Ա, Երեւան, 1944, էջ 412: Հետագայում այս աշխատութիւնը յիշատակւում է հեղինակի ազգանունով՝ Մանանդեան:

11 Նոյնը 399:

է գտնւում Հայաստանում: Անհրաժեշտ են իրեղէն ապացոյցներ՝ հնամենի կամ դասական պատկերագրութեան արծաթեայ ու պղնձեայ դրամների աւելի շատ յայտնութիւններ քան դրութիւն ունեն:

Այդուհանդերձ նկատի ունենալով ինչպէս յայտնաբերուած դրամների այնպէս էլ գրաւոր հաղորդումների տուեալները, կարելի է ասել, որ դրամային շրջանառութիւնը Հայկական լեռնաշխարհում սկզբնաւորուել է մ. թ. ա. 5րդ դարի վերջին:

Վաճառականութիւնը, միջազգային առեւտրի հայկական կենտրոններում, ծանօթ էր մետաղեայ դրամների գործածութեանը: Սակայն հայերի ներքին կեանքում ապրանքափոխանակութիւնը կատարւում էր բնատուր ձեւով:

## Բ. ԱՔԵՄԵՆԵԱՆ ՍԱՏՐԱՊՆԵՐ ՏԻՐԻԲԱԶՈՍԻ ԵՒ ՈՐՈՆՏԱՍԻ ԴՐԱՄԱԿԱՆ ՄԻԱՒՈՐՆԵՐԻ ԾԱԳՄԱՆ ՇՈՒՐՋ

Աքեմենեան բռնակալութիւնը մ. թ. ա. 5րդ դարի վերջերին ապրում էր իր ուժերի անկումը[12]: Այդ ժամանակ Առաջաւոր ու Միջին Ասիայում տեղական սատրապները (փոխարքաները) նուաճել էին առեւտրի հա—

---

[12] М. М. Дьяконов, Очерки истории древнего Ирана, Москва, 1961, стр. 90.





մար սեփական դրամ կտրելու իրավունքը, որ մինչ այդ արքայից արքաների մենաշնորհն էր[13]: Սատրապական դրամները թողարկում էին նույն աքեմենեան կշռային չափերի սկզբունքներով: Սակայն ի տարբերութիւն արքայականի, սատրապական դրամային միաւորը սահմանուել էր 11,20 դրամ արծաթ: Այլ կերպ ասած սատրապական արծաթ դրամը կշռային չափով երկու անգամ ծանր էր նոյն մետաղի արքայական միաւորից: Առանձին սատրապութիւններում, արտակարգ իրադրութիւնների հետ կապուած, երեւան էին եկել նաեւ տեղական կերտուածքի ոսկեայ դրամներ[14]: Ներքին շուկայի համար թողարկում էին պղնձեայ դրամներ:

Սակայն թէ արքայական եւ թէ սատրապական դրամները շրջանառութեան մէջ էին մտնում մեծ մասամբ Փոքր Ասիայի վաճառաշահ քաղաքներում, ուր 5—4րդ դարերում քաղաքային կեանքի զարգացման հետ կապուած ապրանքափոխանակութիւնը աշխոյժ ընթացքի մէջ էր:

Հայկական լեռնաշխարհը եւ նրա հարեւան գաւառները, Աքեմենեանների վարչա—

---

[13] Зограф, 42.

[14] Ernest Babelon, Les Perses Achéménides, les Satrapes et les dynasties tributaires de leur Empire, Chypre et Phénicie. Paris, 1893, p. XXIX. Հետագայում այս աշխատութիւնը յիշատակւում է Achéménides անուանումով:

կան բաժանմամբ ընդգրկուել էին երկու տարբեր սատրապութիւնների կամ փոխարքայութիւնների կազմում: Դրանցից մէկը Տաւրոսեան լեռների հիւսիսից, Արածանու հովտով, Մշոյ դաշտից տարածուելով հասնում էր մինչեւ Փոքր Հայքի Սեւծովեան ափերը: Մօտաւոր առումով այն ընդգրկել էր իր մէջ Հայկական լեռնաշխարհի կենտրոնական, հիւսիս-արեւմտեան եւ հիւսիսային շրջանները, ներկայացնելով մէկ առանձին սատրապութիւն: Հայաստանի այդ մասը պատմութեան մէջ յիշատակուել է իբրեւ «Արեւմտեան Հայաստան» եւ ճանաչուել որպէս Աքեմենեանների 13րդ սատրապութիւնը: Ուսումնասիրութիւնները թոյլ են տալիս ենթադրելու, որ այդ «Արեւմտեան Հայաստանի» կառավարչութիւնը գտնուել է Վանում[15]:

Յայտնի է նաեւ, որ մ. թ. ա. 5րդ դարի վերջին եւ 4րդ դարի սկզբին «Արեւմտեան Հայաստանի» հիպարքոսը (կառավարիչը) եղել է Աքեմենեան Արտաքսերքսէս արքայի (404—358) բարեկամ Տիրիբազոսը: Վեր-

---

15 Հայ ժողովրդի պատմութիւն, հատոր 1ին, Հայաստանը նախնադարեան-համայնական եւ ստրկատիրական կարգերի ժամանակաշրջանում, Հայկական ՍՍՀ Գիտութիւնների ակադեմիա, Պատմութեան ինստիտուտ, Երեւան, 1971, էջ 451:

ջինիս մասին յիշատակում է ականատես յոյն պատմիչ Քսենոփոնը[16]:

Միւս սատրապութիւնն իր մէջ ընդգրկել է հիմնականում Հայկական լեռնաշխարհի հարաւային ու արեւելեան շրջանները եւ մատենագրութեամբ յիշատակւում է «Արեւելեան Հայաստան» կամ պարզապէս «Հայաստան» անուններով: Աքեմենեանների վարչական բաժանմամբ այդ «Արեւելեան Հայաստանը» ներկայացրել է արքայից արքայի 18րդ սատրապութիւնը: Վերջինիս քաղաքական կենտրոնը գտնուել է նախկին ուրարտական քաղաք Էրեբունիի միջնաբերդում, ինչպէս ենթադրւում է նոր հետազօտութիւններով[17]: Իրանի արքայից արքայ Արտաքսերքսէսի փեսան, յիշատակուած Որոնտաս (հայերի մէջ Երուանդ) անունով մ. թ. ա. 5րդ դարի վերջին եւ 4րդի սկզբին իշխել է այստեղ որպէս փոխարքայ[18]: Նկատի ունենալով 5—4րդ դդ. սատրապութիւնների քաղաքական սահմանների փոփոխութիւնները, ենթադրւում է, որ Արեւմտեան Հա–

---

[16] Ксенофонт, Анабасис, перевод М. И. Максимовой, под редакцией академика И. И. Толстого, Москва-Ленинград, 1951, книга IV, гл. IV. — էջ 107: Քսենոփոն, Անաբասիս, Թարգմանութիւնը Սիմոն Կրկեաշարեանի, Երեւան, 1970, էջ 93—95, 197:

[17] Հայ ժողովրդի պատմութիւն, 1ին, էջ 452:

[18] Քսենոփոն, Անաբասիս, էջ 75, 81, 228—229:

բատանի կառավարիչ ենթարկուել է Որոնտասին: Սակայն մի կողմ թողնելով ենթադրութիւնները, որոնք վերջին ժամանակներս հրապարակւում են մատենագրութիւնից քաղուած կցկտուր տուեալների մեկնաբանութիւններով[19], դրամագիտութեան համար կարեւորը ժամանակի անմիջական վկաներն են՝ դարերի խորքից եկած մետաղեայ հնչիւն դրամները: Եւ այսպէս, իբրեւ իրեղէն ապացոյցներ բարեբախտաբար պահպանուել են Աքեմենեան սատրապներ Տիրիբազոսի եւ Որոնտասի դրամները: Դրանց պատկերագրութիւնը, ինչպէս նաեւ չափագիտութեան տուեալները պատմութեան հարցերի համար ունեն սկզբնաղբիւրի առաջնահերթ նշանակութիւն: Պարզւում է, որ Հայաստանում ոչ Տիրիբազոսը եւ ոչ էլ Որոնտասը դրամներ չեն թողարկել: Նրանց դրամները ծագել են Աքեմենեանների փոքրասիական երկրամասերում, ուր պաշտոնի բերումով ինչպէս Տիրիբազոսը, այնպէս էլ Որոնտասը իշխանութիւն են ունեցել եւ տեղական առեւտրի համար դրամներ են թողարկել:

Նկատի ունենալով Տիրիբազոսի եւ Որոնտասի թողարկուած դրամների աղբիւրագիտական նշանակութիւնը հայ-փոքրասիական առնչութիւնների եւ ընդհանրապէս այս շրջանի պատմութեան համար, անհրաժեշտ

---

19 Հայ ժողովրդի պատմութիւն, 1ին, էջ 454:

*ենք համարում ներկայացնել նրանց շարքից պահպանուած եւ մեզ յայտնի օրինակների պատկերագրութիւնը․*

### ՏԻՐԻԲԱԶՈՍ, ԿԻԼԻԿԻԱ
արծաթ

Ստատեր, թողարկուած Իսսոս քաղաքում, 386—380 թուերին:

*Ա․ կողմ․ Կենտրոնում պատկերուած է հողի եւ ջրի աստուած Բահալը, կանգնած մի փոքր թեքութեամբ դէպի ձախ, առնական, բաց կրծքով, ուսից մինչեւ ոտքերը ծիրանում, գանգրահեր գլուխը մօրուքաւոր դէմքով շրջել է եւ նայում է իր աջին բազմած արծուին, իսկ միւս ձեռքով բռնել է գաւազանը: Այս կերպարանքի երկու կողմերից արձանագրուած է․ աջից, արամերէն, Տիրիբազոսի անունը, ձախից յունարէն Իսսոս քաղաքի անունը ΙΣΣΙΚΟΝ: Ողջ պատկերագրութիւնը վերցուած է կիտաւոր շրջանակի մէջ: Բ․ կողմ․ Կենտրոնում պատկերուած է Աքեմենեանների գերագոյն աստուածը՝ Ահուրամազդան, ողջ գործարանական կեանքի, յաւերժական լոյսի ու բարութեան նախատիպը․ առնական տեսքով, կուրծքը բաց, մինչեւ գօտկատեղին մերկամարմին, գլխին պսակ, դէմքը մօրուքաւոր, դէպի աջ, ձախ ձեռքում չուշան, աջով պահում է ու գլխին է մօտեցրել ճառագայթաւոր*

մի պսակ եւ դէպի վեր բարձրացրած թեւի տակ յունարէն գրերով AMP յիշատակուած է մագիստրոսի անունը: Դիցական այս կերպարանքը ներքեւում յենուած է գնդի եւ ստոքերի փախարէն ունի արծուային թեւեր ու պոչ, որոնցմով ներկայանում է իբրեւ երկնքում ճախրող գերբնական տիրակալ:



Հայաստանի Աքեմենեան փոխարքայ Տիրիբազոսի արծաթեայ դրամը, թողարկուած մ. թ. ա. 4րդ դարում: Մեծացուած 1,5 անգամ

*Արծաթեայ այս դրամը պահւում է Փարիզում, Ազգային մատենադարանում*[20]*: Կշիռը՝ 10,32 գրամ, տրամագիծը՝ 22 մմ.: Նոյն պատկերագրութեան ուրիշ օրինակներ*

[20] Ernest Babelon, Inventaire sommaire de la Collection Waddington, 241, *թիւ* 4333, pl. X, *թիւ* 14, Paris, 1898. *Հետագայում այս աշխատութիւնը յիշատակւում է* Waddington *անուանումով:*

*յայտնի են նաեւ Բեռլինի*[21] *եւ Բրիտանական*[22] *թանգարանների մէջ հաւաքուած դասական դրամների շարքից։ Անմիջական տարբերու- թիւններով Տիրիբազոսի նոյնանման դրամ- ներից թողարկուել են նաեւ Կիլիկիայի այլ քաղաքներում։ Այսպէս օրինակ.*

Ստատեր, թողարկուած Մալլոս քաղաքում,
386—380 թթ.

*Ա. կողմ. Կենտրոնում պատկերուած է Բահաղը, կանգնած դէպի ձախ, նոյն խոր- հրդանշաններով, ինչպէս Իսոսս քաղաքի դրամի վրայ, թիկունքի մօտ Տիրիբազոս արամէատառ անունը, բայց ձախից յունա- րէն MAP գրերը, որոնցով նշուած է Մալլոս քաղաքի անուան կրճատ ձեւը (ΜΑΡΛΩΤΗΣ)։ Բ. կողմ. Ահուրամազդան, պատկերուած նոյն ձեւով, ինչպէս Իսոսում թողարկուած դրամի վրայ, բայց առանց մաղխատրատի անուան յիշատակութեան։ Ողջ պատկերա-*

---

[21] Sallet Alfred, Satrapenmünzen mit griechischer Inschrift. Numismatische Zeitschrift, III. Jahrgang, 1871, Wien, 1872, S. 145—146. *Հետագայում այս աշխատութիւնը յիշատակւում է* Sallet *անուանումով։*

[22] Hill George Francis, M. A., Catalogue of the Greek coins of Lycaonia, Isauria and Cilicia. London, 1900, P 90, No. 3, pl. XV, No. 3. *Հետագայում այս աշխատութիւնը յիշատակւում է* Hill *անուանումով։*

*քանդակը վերցուած է կիտազարդ շրջանակի մէջ:*

*Կշիռը՝* 10,77 *գրամ, տրամագիծը՝* 22 *մմ.: Արծաթեայ այս ստատերի տուեալները յայտնի են աւստրիական եւ ֆրանսիական հրատարակութիւններով*[23] :

Ստատեր, թողարկուած Սոլի քաղաքում,
386—380 թուերին:

*Ա. կողմ. Բահաղը կանգնած մի փոքր թեքութեամբ դէպի ձախ, կուրծքը բաց, ուսին ծիրանին, փաթաթուած գօտկատեղին եւ իջած մինչեւ ոտքերը:*

*Պարզել է իր աջ թեւը վրան արծիւ պահած, իսկ ձախ ձեռքով յենուել է գաւազանին: Դաշտի աջ կողմում Տիրիբազոսի անունը Արամերէն արձանագրութեամբ, իսկ ձախից Սոլի քաղաքի անուան կրճատ յիշատակումը ΣΟ յունարէն տառերով: Երիզափակ շրջանակը կիտազարդ:* *Բ. կողմ. Ահուրամազդան, պատկերուած նոյն ձեւով, ինչպէս Իսսոս քաղաքի ստատերի վրայ, ըստ որում Մազխտրոսի անուան նոյն* AMP *գրերի յիշատակութեամբ, բայց առանց երիզափակ շրջանակի:*

*Տիրիբազոսի արծաթեայ այս դրամը*

[23] Imhoof-Blumer F., Kleinasiatische Münzen, II, Wien, 1902, s. 466—467. *Հետագայում այս աշխատութիւնը յիշատակւում է* KM *տառերով:*

յայտնի է բրիտանական թանգարանի հրատարակութեամբ, ուր եւ այն ներկայումս պահւում է[24]: Կշիռը՝ 10,30 գրամ, տրամագիծը՝ 20 մմ.:

Ստատեր, թողարկուած Տարսոն քաղաքում, 386—380 թթ.

Ա. կողմ. Պատկերագրութիւնը, ինչպէս նախորդ օրինակների վրայ, Տիրիբազոսի անուան արամէատառ արձանագրութեամբ, բայց դիւցազնական կերպարի առջեւ յունարէն T տառը. յիշատակ Տարսոնից, ուր ծագել է դրամը: Պատկեր կիտագարդ շրջանակի մէջ: Բ. կողմ. Ահուրամազդան պատկերուած նոյն ձեւով, ինչպէս նախորդ ստատերների վրայ, բայց գանդրահեր գլուխը զարդարուած թագով (?), դէմքը թեթեւակի մօրուքաւոր, մինչեւ պորտը մերկամարմին, վերջաւորութիւնը արծուաթեւ:

Խորհրդանշանները. Լուսապսակ եւ շուշան, սակայն առանց մագխարոսի անուան տառերի: Ողջ պատկերաքանդակը, շրջանաւոր փոսիկի մէջ:

Հիանալի պահպանուած այս արծաթեայ դրամը պահւում է բրիտանական թանգա-

[24] Hill, 148, No. 26, pl. XXVI, No. 2.

*րանում*[25]: *Կշիռը․* 10 *գրամ, տրամագիծը․* 21 *մմ․*:

Ստատեր, թողարկուած Իսոս քաղաքում, 386—380 թուերին:

*Ա․ կողմ․ Հերակլէսի (Վահագնի) կիսանդրին, գանգրահեր գլխով դէպի աջ, ուսին առիւծենու հանդերձը, կէտագիծ շրջանակի մէջ: Բ․ կողմ․ Տիրիբազոսի գլխաքանդակը, գանգրահեր եւ թեթեւակի մօրուքաւոր, ականջակալներով ու վզկալով սատրապական գլխարկով, որի ճակատը զարդարուած է զոհարներով, պարանոցին մանեակներ, դէմքով դէպի աջ, հայեացքի դիմաց յունարէն արձանագրուած է անունը TEIPIBAZOY: Երիզափակ շրջանակ չունի:*

*Աննշան մաշուածութեամբ արծաթեայ այս դրամը յայտնի է Փրանսիական*[26] *եւ աւստրիական*[27] *հրատարակութիւններով: Կշիռը․* 9,85 *գրամ, տրամագիծը․* 24 *մմ․: Տիրիբազոսի եւ Հերակլէսի (Վահագն) յիշեալ պատկերներով, սակայն գեղարուեստի ոչ պակաս կատարելութեամբ նոյնանման արծաթ դրամներ թողարկուել են նաեւ Կիլիկիայի ուրիշ քաղաքներում, որոնցից յիշատակելի են․*

---

[25] Hill, 164, No. 12, pl. XXIX, No. 1.
[26] Waddington, 241, No. 4335, pl. X, No. 15.
[27] KM, 450.

Ստատեր, թողարկուած Մալլոս քաղաքում, 386—380 թուերին:

*Ա. կողմ. Հերակլէսի կիսանդրին, գանգրահեր գլխով դէպի աջ, դէմքը թեթեւակի մօրուքաւոր, ուսին երեւում է առիւծենու հանդոյցը: Պատկերաքանդակը կիտագարդ շրջանակի մէջ: Բ. կողմ. Տրիպտողոսի կիսանդրին դէպի աջ, դէմքը թեթեւակի մօրուքաւոր, գլխին ականջակալներով ու վզկալով, սատրապական գլխարկ, ճակատին ականագարդ ժապաւէն, որի ծայրերը հանգուցուած են ծոծրակի մօտ, ուր նշուած են յունարէն* MAΛ — *Մալլոս քաղաքի անուան առաջին երեք տառերը: Պարանոցին մանեակներ, ուսին մի փունջ գանգրահեր մազերից: Երիզափակ շրջանակ չունի:*

*Արծաթեայ այս դրամը պահւում է բրիտանական թանգարանում*[28]*: Կշիռը.* 10,42 *գրամ, տրամագիծը.* 22 *մմ.: Յայտնի են նոյն պատկերագրութեան այլ օրինակներ տարբեր ժողովածուներում*[29]*:*

*Ստատեր, թողարկուած Սոլի քաղաքում,* 386—380 *թուերին:*

*Ա. կողմ. Հերակլէսի գանգրահեր գլուխը դէմքով դէպի աջ: Մանրամասնու-*

---

[28] Hill, 100, No. 28.

[29] Государственный Эрмитаж (Ленинград) рукописный каталог античных монет, *թի.* 30. *Հետագայում այս աշխատութիւնը յիշատակւում է* 9 *տառով*; Achéménides, 22, No. 166, pl. IV, No. 3; Waddington, 243, No. 4360, pl. X, No. 21; Зограф, табл. X, *թի.* 10.

*Թիւնները ինչպէս նախորդ օրինակի վրայ, բայց դրուագուած ուրիշ կնիքներով։ Բ. կողմ. Տիրիբազոսի դիմաքանդակը, սատրապական գլխարկով, դէպի աջ, նման նախորդ օրինակին, բայց դրուագուած այլ կնիքներով։ Շուրջը արձանագրուած է քաղաքի անունը. ΣΟΛΙΚΟΝ։ Այդ ամենը, դիտւում է զուգաւորութեան մէջ, առանց երիզափակ շրջանակի։*



Հայաստանի Աքեմենեան փոխարքայ Տիրիբազոսի դիմաքանդակը· մ· թ· ա· 4րդ դար, արծաթեայ դրամի վրայ։ Մեծացուած 3,5 անգամ

Արծաթեայ այս դրամը (կշիռը 9,60 գրամ, տրամագիծը. 23 մմ.) պահւում է Ֆրանսիայի ազգային մատենադարանում[30]:

Նոյնանման մէկ ուրիշ օրինակ էլ յայտնի է բրիտանական թանգարանի հրատարակութեամբ[31]: Այս պատկերագրութեամբ Սոլի քաղաքում դրուագուած արծաթ ստատերներից մեզ յայտնի են նաեւ այլ նմուշներ, որոնց վրայ ինչպէս Հերակլէսի, այնպէս էլ Տիրիբազոսի գլխաքանդակները թէեւ կերտուած է նոյն ոճով, բայց մանրամասնութիւնների մէջ ունեն որոշ տարբերութիւններ եւ կշռային չափերով տալիս են 0,20—0,50 գրամների տատանումներ: Այդպիսիները վկայում են գործածուած տարբեր կնիքների եւ հատածոյների պահպանուածութեան տարբեր աստիճանների մասին[32]: Ստատերներից մէկի վրայ քաղաքի անունը նշուած է ոչ թէ ΣΟΛΙΚΟΝ, այլ ΣΟΛΕ[ΩΝ] ձեւով, ըստ որում արձանագրուած ուղիղ Տիրիբազոսի հայեացքի առջեւ, դրամի աջ կողմում[33]:

---

[30] Achéménides, 21—22, No. 159, pl. III, fig. 19; Waddington, 252, No. 4492.

[31] Hill, 149, pl. XXVI, No. 3.

[32] Achéménides, 22, Nos. 160, 161, pl. III, Nos. 20—21.

[33] Նոյնը, 22, No. 162, pl. III, No. 22.

Սատարեր, թողարկուած Մալլոս քաղաքում, 386—380 թուերին:

*Ա. կողմ. գեղեցկութեան դիցուհի Աֆրոդիտէի գլուխը դէմքով դէպի աջ, վարսերը գնդաձեւ ամփոփուած են ծոծրակին, ականջին սրտաձեւ օղ, պարանոցին մանեակ, ճակատին վարսակալ: Ողջ գլխաքանդակը շրջանակի մէջ: Բ. կողմ. Տիրիբազոսի գլուխը դէպի աջ, սատրապական գլխարկով, որի ականջակալները անցնում են ծնօտի տակով եւ փակել են դէմքի այդ մասը: Հիպարքոսի ուսի մօտ գտնւում է ծիրանու ծալքերը, պարանոցին մանեակների երկու շարան, ճակատին օղակաձեւ զարդեր, գլխարկի վրայով զոյգ ժապաւէն, որի ծայրերը հանգուցւում են ծոծրակից վերեւ: Տիրիբազոսի հայեացքի դիմաց պահպանուել են յունարէն* MAΛ *տառերը. Մալլոս քաղաքի անուան, նշուած համառօտագրութեամբ:*

*Արծաթեայ այս դրամը յայտնի է Ֆրանսիական հրատարակութեամբ*[34]*: Կշիռը.* 10,12 *գրամ, տրամագիծը.* 22 *մմ.:*

---

[34] Jean Babelon, Catalogue de la Collection de Luynes. Monnaies grèques, I—IV, Paris, 1924—1936, p. 1—2. *Հետագայում այս աշխատութիւնը յիշատակւում է* Luynes *անուանումով:* Achéménides, 22, No. 164, pl. IV, fig. 1.

*Նոյն պատկերագրութեամբ Տիրիբազոսի արծաթեայ ստատերներ, դրուագուած ուրիշ կնիքներով, յայտնի են նաեւ այլ ժողովածուներից, ըստ որում դրանցից մէկի վրայ քաղաքի անունը յիշատակուած է ոչ թէ ΜΑΛ, այլ ΜΑΛΛΩΤΗΣ ձեւով[35]: Բացի դրանից տուեալ տեղանունը մէկ ուրիշ դրամի վրայ ներկայացուած է ΜΑΛΛΩΤΩΝ յունատառ արձանագրութեամբ[36]:*

Ստատեր, թողարկուած Իսսոս քաղաքում, 386—380 թուերին:

*Ա. կողմ. Բահաղը, կանգնած մի փոքր թեքութեամբ դէպի ձախ, առաջ պարզած աջ ափի վրայ արծիւ, ձախով յենուել է գաւազանին, կուրծքը կիսով չափ բաց, ուսից մինչեւ ոտքերը ծիրանու մէջ: Առջեւում, ծնկների մօտ ΙΣ գրերը, թիկունքի մօտ ջնջուած արձանագրութիւն:*

*Բ. կողմ. կենտրոնում Հերակլէսը կանգնած մերկամարմին, առնական կերպարանքի եւ հուժկու մկանների չեշտուած արտայայտութեամբ:*

---

[35] Waddington, 243, No. 4362, pl. X, fig. 22.
[36] Achéménides, 22, No. 165, pl. IV, fig. 2.



Դիւցազնական Հերակլէսի (Վահագնի) պատկերը, Հայաստանի Աքեմենեան փոխարքայ Տիրիբազոսի դրամի վրայ: Մ· թ· ա· 4րդ դարում: Մեծացուած 3 անգամ

*Դանդրահեր գլուխը թեքել է դէպի իր ձախ թեւը, որի վրայ առիւծի մորթին, իսկ աջով բռնել է մահակը:*

*Արծաթեայ այս դրամը պահւում է Փրանսիայի ազգային մատենադարանում (Փարիզ)*[37]*: Կշիռը· 10,42 գրամ, տրամագիծը· 22 մմ·:*

---

[37] Achéménides, 21, No. 157, pl. III, No. 7.

Օրողոս, թողարկուած Իսսոս քաղաքում, 386—380 թուերին:

*Ա․ կողմ․ Բահաղը կանգնած ուղիղ, առնական բայց կրծքով, ուսից մինչեւ ոտքերը ծիրանու մէջ, ձախ ձեռքին գաւազան, պարզել է աջը, որի ափին արծիւ, իսկ ներքեւում, ծնկների դիմաց մենագիր ₽, Թիկունքի մօտ Տիրիբազոսի անուան արամխատառ արձանագրութիւնը (կիսով չափ ջնջուած): Բ․ կողմ․ Ահուրամազդայի գլուխը պսակաձեւ զարդով, դէմքը թեթեւակի մօրուքաւոր, դէպի աջ:*

*Արծաթեայ փոքրիկ այս դրամը (կշիռ 0,85 գրամ, տրամագիծը 8 մմ․) պահւում է Վիեննայի մխիթարեան թանգարանում*[38]: *Այս տուեալներով դրամներ յայտնի են նաեւ այլ հրատարակութիւններով*[39]:

## ՈՐՈՆՏԱՍ
## ՄԻՒՍԻԱ
## ՈՍԿԻ

Ստատեր, թողարկուած Լամպսակ քաղաքում, մ․ թ․ ա․ 302 թուին:

*Ա․ կողմ․ Որոնտասի կիսանդրին, մօրուքաւոր դէմքով դէպի ձախ, գլխին սատ–*

[38] P. Clemens Sibilian, Drei sehr seltene Münzen armenischer Dynasten. NZ, II, 1870, Wien, 338—339.

[39] KM, 466—467; Achéménides, 21, No. 158.

բապական գլխարկ, ճակատը զարդարուած գինդերով, պարանոցին զոյգ մանեակներ:

Բ. կողմ. կենտրոնում բարձրաքանդակ պատկերուած է թեւաւոր մի ձի, առջեւի երկու ոտքերով թռիչքի մէջ, առանց վերջաւորութեամբ ուղղութեամբ դէպի աջ:

Հազուագիւտ այս ոսկեայ դրամը պահւում է Փարիզում, ազգային մատենադարանի դրամագիտութեան կաբինետում (թիւ 375):

Տրամագիծը. 15 մմ., կշիռը 8,50 գրամ: Յայտնի է ինչպէս Սատրապական[40], այնպէս էլ Բրիտանական[41] ու Ֆրանսիական[42] հրատարակութիւններով:

## ԱՐԾԱԹ

Կէս դրամ, թողարկուած Լամպսակ քաղաքում, մ. թ. ա. 362 թուին

Ա. կողմ. Աթենասի գլուխը սաղաւարտով, դէպի ձախ, բարձրաքանդակ: Բ. կողմ. թեւաւոր ձի, առջեւի ոտքերով թռիչքի մէջ,

[40] Alfred von Sallet, Satrapenmünzen mit griechischer Inschrift, NZ, III, Wien, 1872, s. 419—426. (կշիռը՝ 8,42 գրամ ոսկի):

[41] Macdonald George, Catalogue of the Greek coins in the Hunterian collection. II, Glasgow, 1899—1905, pl. XLVII, No. 2. Հետազօտում այս աշխատութիւնը յիշ. է MHC անուանումով:

[42] Achéménides. LXXIII. fig. 32; MN, 53, fig. 34.

*առանց վերջաւորութեան, չուրջը յունարէն արձանագրուած է OPONTA:*

*Կշիռը· 2,84 գրամ, տրամագիծը· 16 մմ·, յայտնի է բրիտանական*[43] *եւ այլ ժողովածուների հրատարակութիւններով*[44]*:*

Կէս դրամ, թողարկուած Կլազոմէնի քաղաքում, մ· թ· ա· 362 թուին:

*Ա· կողմ· Մերկամարմին մի ռազմիկ, ծնրադիր կեցուածքով, դէպի ձախ, Գլխին կոնաձեւ սաղաւարտ, աջ ձեռքին նիզակ, ձախով բռնել է իր մեծադիր վահանը, որով պաշտպանում է առջեւից: Ոտքերի մէջ յունարէն Ξ գիրը: Բ· կողմ· Թեւաւոր վարազ, առջեւի ոտքերը թռիչքի մէջ, առանց վերջաւորութեան, դէպի աջ, չուրջը յունարէն OPONTA, որով ներկայացուած է Որոնտասի անունը:*

*Արծաթեայ այս կէս դրամը պահւում է Փարիզում*[45] *եւ յայտնի է նաեւ Բրիտանա–*

[43] Head V. Barclay, Catalogue of the Greek coins of Ionia. British Museum, Edited by Reginald Stuart Poole, London, 1892, XXXI, No. 3. *Հետագայում այս աշխատութիւնը յիշատակւում է* Ionia *անուանումով:*

[44] Numismatische Zeitschrift, III, Wien, 1872, s. 421; Waddington, 75, No. 1362 (*Կշիռը՝* 3,13 *գրամ*):

[45] Waddington, 75, No. 1361, pl. III, No. 1.

*կան Թանգարանի*[46], *Պետական էրմիտաժի (Լենինգրադ)*[47] *ու այլ ժողովածուներից*[48]:

## ՊՂԻՆՁ

Երկու լեպտոն թողարկուած Կիսթենէ քա-ղաքում, մ. թ. ա. 362 թ.

*Ա. կողմ. Որոնտասի դիմաքանդակը, թեթեւակի մօրուքաւոր, սատրապական գլխարկով դէպի աջ: Բ. կողմ. Արշաւող հեծեալ, ձեռքին արմաւենու ճիւղ, դէպի աջ: Ներքեւում յունարէն* KIΣΘA *տառերով յիշատակուած է քաղաքի անունը:*

*Պահւում է Մինխենի Թանգարանում*[49]: *Կշիռը.* 2,91 *գրամ, տրամագիծը* 12 *մմ.:*

Լեպտոն, թողարկուած Լամպսակ, մ. թ. ա. 362 թուին:

*Ա. կողմ. Զեւսի կիսանդրին, դանդրա-հեր գլխով, թեթեւակի մօրուքաւոր, դէմ-քով դէպի աջ: Բ. կողմ. Թեւաւոր ձի, առ-*

---

[46] Ionia, pl. XXXI, No. 10.

[47] Э *թիւ* 14973 (*կշիռը* 2,70 *գրամ արծաթ, տրամագիծը՝* 13—14 *մմ.*):

[48] Sallet, Satrapenmünzen mit griechischer Inschrift, NZ, III, Wien, 1872, s. 419—426; Droysen, 318 (z. f. N. II, 1875).

[49] F. Imhoof-Blumer. Griechische Münzen, Münich, 1890, pl. VI, Nr. 27; Achéménides, LXXIV.

*ջեւի ոտքերով Թռիչքի մէջ, առանց վերջաւորութեան, դէպի աջ:*

*Շուրջը հազիւ նշմարելի պահպանուել են ОРОNТА յունարէն գրերը, որոնցով յիշատակուած է Որոնտասի անունը:*



Հայաստանի Աքեմենեան փոխարքայ Օրոնտասի դիմաքանդակը, մ. թ. ա. 4րդ դար, ոսկեայ դրամի վրայ:
Մեծացուած 3.5 անգամ

*Փոքր արժէչափի պղնձեայ այս դրամը (կշիռը. 1,76 գրամ, տրամագիծը. 12 մմ.) պահւում է Փարիզում եւ հրատարակուել է*

Էռնեստ Բաբելոնի կողմից[50]: Նոյն պատկերագրութեամբ, սակայն արծաթէ դրամ (կշիռը. 3,13 գրամ, տրամագիծը. 17 մմ.) յայտնի է Վադինգտոնի հաւաքած նախահելլենիստական դրամների շարքից[51]:

Լեպտոնն, թողարկուած Լամպսակ քաղաքում, մ. թ. ա. 362 թուին:

*Ա. կողմ. Որոնտասի գլխաքանդակը, սատրապական վեղարաձեւ գլխարկով, առանց մօրուքի դէպի աջ:*

*Բ. կողմ. Թեւաւոր ձի, առջեւի ոտքերով թռիչքի մէջ, առանց վերջաւորութեան, դէպի աջ: Շուրջը մաշուած, անընթեռնելի գրութիւն [OPONT]A(C):*

*Պղնձեայ փոքր չափի այս դրամը (կշիռը. 1,12 գրամ, տրամագիծը. 12 մմ.) պահւում է Պարիզում (ազգային մատենադարանի դրամագիտութեան բաժնում) եւ յայտնի է Էռնեստ Բաբելոնի հրատարակութեամբ[52]:*

*Աքեմենեան սատրապ Որոնտասի դրամները շարքում կան նաեւ պղնձեայ ու արծաթեայ փոքր արժեչափի դրամային միաւորներ, որոնք առանձին տարբերութիւններով կրկնում են ընդունուած պատկերագրութիւնը, բայց, (ինչպէս կերպուածքի ոճով,*

---

50 Achéménides, IX, Nr. 12; Sonia, XXXI, Nr. 9.

51 Waddington, III, No. 2.

52 Achéménides, 56, No. 379, pl. IX, No. 15.

*այնպէս էլ խորհրդանշանների տարբերութիւններով) նորութիւններ չեն: Այսպէս օրինակ:*

## ԱՐԾԱԹ

Օբոլոս, թողարկուած Լամփսակ քաղաքում, մ. թ. ա. 362 թուին:

*Ա. կողմ. Պսակաւոր որմզդական գլուխ, երկարաւուն վարսերով եւ պատկառելի մօրուքով, դէմքը աջ: Ողջ դիմաքանդակը կիտազարդ շրջանակի մէջ: Բ. կողմ. Թեւաւոր ձի, առաջին ոտքերով թռիչքի մէջ, առանց վերջաւորութեան ուղղութիւնը դէպի աջ:*

*Անեպիգրաֆ, արծաթեայ այս փոքրիկ դրամը պահւում է Փարիզում, ազգային մատենադարանի դրամագիտութեան բաժնում*[53]*: Կշիռը. 0,67 գրամ, տրամագիծը, 12 մմ.:*

## ՊՂԻՆՁ

Կէս քաղկոս, թողարկուած Լամփսակ քաղաքում, մ. թ. ա. 362 թ.

*Ա. կողմ. Աթենասի գլուխը սաղաւարտով, դէպի ձախ, կիտազարդ շրջանակի մէջ: Խիստ մաշուած:*

---

[53] Jean Babelon, Catalogue de la collection de Luynes, III, Paris, 1930, p. 102, No. 2899, pl. CVII. *Հետագայում այս աշխատութիւնը յիշ. է BCL տառերով:*

Բ. կողմ. Թեւաւոր ձի, առջեւի ոտքերով թռիչքի մէջ, առանց վերջաւորութեան, դէպի աջ: Ներքեւում առիւծի գլուխ: Շուրջը մաշուած գրերով ընթերցւում է. OPONTA:



Հայաստանի Աքեմենեան փոխարքայ Օրոնտասի ոսկեայ դրամը թեւաւոր ձիու պատկերով, թողարկուած մ. թ. ա. 4րդ դարում, Լամպսակ քաղաքում: Մեծացուած 4 անգամ

Պահւում է Փարիզում, Ֆրանսիայի Ազգային Մատենադարանում: Հրատարակել է Էռնեստ Բաբելոնը[54]: Կշիռը. 4,52 գրամ, տրամագիծը. 16 մմ.:

---

[54] Achéménides, IX, No. 13.

Յիշեալ տուեալներով դեռեւս չեն սպառւում Հայաստանի ալքեմենեան սատրապներ Տիրիբազոսի եւ Որոնտասի կողմից թողարկուած դրամներից պահպանուած նմուշների մասին եղած վկայութիւնները:

Սակայն նկարագրուած օրինակները հանդիսանում են դրամագիտական այն կարեւոր վկայութիւնները, որոնք լայնօրէն յայտնի են եւ հնարաւորութիւն են ընձեռնում դատելու իրենց ծագման մասին: Նախ եւ առաջ բացայայտուած է, որ ալքեմենեան սատրապ Տիրիբազոսը դրամները է թողարկել Կիլիկիայի Իսսոս, Մալլոս, Սոլի եւ Տարսոն քաղաքներում, մ. թ. ա. 386—380 թուերին:

Թողարկուած դրամների վրայ նշուած են ինչպէս Տիրիբազոսի, այնպէս էլ յիշեալ քաղաքների անունները, բառ որում թէ յունարէն եւ թէ երկլեզուեան յունարէն ու արամերէն արձանագրութիւններով:

Դրոշմուած պատկերները պաշտամունքային նշանակութիւն են ունեցել, նուիրուած Ահուրամազդայի, Բահաղի, Հերակլէսի, Աֆրոդիտէի, Դիոնիսոսի երկրպագութիւններին, ինչպէս նաեւ իրեն Տիրիբազոսին, որի դիմաքանդակը պահպանուել է յիշեալ դրամներով: Պատկերները, կերտուած դասական շրջանին բնորոշ արուեստի ոճով, դրամների վրայ ներկայացուած են հետեւեալ իմաստի համադրութիւններով:

*Հերակլէս — Տիրիդատոս (դիմաքանդակներ)*

*Աֆրոդիտէ — Տիրիդատոս (դիմաքանդակներ)*

*Բահաղ — Ահուրամազդա (ամբողջական տեսքով)*

*Բահաղ — Հերակլէս (ամբողջական տեսքով)*

*Բահաղ — Ահուրամազդա (դիմաքանդակներ)*

*Կշռային չափերով Տիրիդատոսի դրամները արտայայտում են Աքեմենեանների դրամային դրութեան բնորոշ տուեալներ մ. թ. ա. 4րդ դարի վերաբերեալ:*

*Արծաթի մխուրները կրկնակի դրախմաներ կամ երկդրամներ են, որոնք Փոքր Ասիայի քաղաքներում կոչւում էին արծաթեայ ստատերներ:*

*Վերջիններս պահպանուել են ծանրութեան չափի հետեւեալ դրամներով.*

| | | |
|---|---|---|
| 10,65 | 10,30 | 9,65 |
| 10,47 | 10,12 | 9,80 |
| 10,42 | 10,10 | 9,60 |
| 10,42 | 10,00 | 9,23 |
| 10,32 | 9,85 | |

*Փոքր կշռային մխուրները կազմել են աքեմենեան արծաթ դրամի (դրախմայի)* 1/6 *մասը եւ պահպանուել են հետեւեալ չափերով.*

0,85 գրամ արծաթ
0,78 գրամ արծաթ
0,71 գրամ արծաթ
0,51 գրամ արծաթ

*Ինչպէս արծաթի, այնպէս էլ պղնձի դրամային միաւորները հազուադէպ են: Ծագելով Կիլիկիայում Տիգրանի դրամները տարածուել են առաւելապէս այդ երկրամասերի մէջ:*

*Նրանց թափանցումը Փոքր Ասիայի եւ Միջագետքի տարանցիկ առեւտրի համար կարեւոր նշանակութիւն ունեցող Հայկական շրջանները մասնաւորապէս Ծոփքի եւ Փոքր Հայքի տնտեսական կենտրոնները, որոնք մ. թ. ա. 4րդ դարի առաջին կէսին ենթակայ էին դարձել Տիգրանի կառավարչութեանը, բացառուած չէ:*

*Առաջիկայում նոր յայտնաբերումները կարող են հաստատել մեր ենթադրութիւնը թերեւս զուտ Տիգրանի դրամների շրջանառութեան ոլորտը ուրուագծելու առումով:*

*Ինչ վերաբերում է Արեւելեան Հայաստանի սատրապ Որոնտասի (Երուանդ) դրամներին, ապա դրանք յայտնի են ոսկեայ, արծաթեայ եւ պղնձեայ միաւորներով, թողարկուած Փոքր Ասիայի Լամպսակ, Կիթենէ եւ Կլազոմէն քաղաքներում մ. թ. ա. 362 թուին: Որոնտասը քաղաքական հանգամանքների բերումով իշխանութիւն է ու–*

նեցել Միւսխայում եւ իր զօրքով մտել է յունա–պարսկական շահերի բախման ասպարէզը, պայքարելով Աքեմենեան Արտաքսերքսէս 2րդ Մնեմոնի դէմ :

Որոնտասի դրամական միաւորների վրայ նոյնպէս դրոշմուել են ժամանակի գաղափարախօսութեանը բնորոշ, պաշտամունքային իմաստի պատկերներ, նուիրուած Զեւսին, Աթենասին, Ապոլլոնին ինչպէս նաեւ իրեն Որոնտասին :

Պատկերները Որոնտասի դրամների վրայ դրոշմուել են կնիքների հետեւեալ զուգորդութեամբ :

Զեւս — թեւաւոր ձի
Աթենաս — թեւաւոր ձի
Որոնտաս — թեւաւոր ձի
Որոնտաս — արշաւող հեծեալ
Ռազմիկ — թեւաւոր վարազ

Չափագիտական առումով Որոնտասի դրամային միաւորները մեզ յայտնի են հետեւեալ տուեալներով·

Ոսկեայ ստատերներ

8,50 գրամ
8,43 գրամ
8,42 գրամ

Արծաթեայ կէսդրամեաններ

3,28 *դրամ*
3,13 *դրամ*
2,84 *դրամ*
2,79 *դրամ*
2,70 *դրամ*

Պղնձեայ քաղկոս

4,52 *դրամ*

Պղնձեայ կէս քաղկոս

2,91 *դրամ*

Պղնձեայ Լեպտոն

1,76 *դրամ*
1,12 *դրամ*

*Սակայն Օրոնտասի յիշեալ դրամները ոչ իրենց ծագմամբ եւ ոչ էլ շրջանառութեան տարածմամբ Հայաստանի դրամային տնտեսութեան հետ չեն առնչւում:*

*Թողարկուած լինելով Փոքր Ասիայի արեւմտեան երկրամասերում նրանք բնորոշ են այդ վայրերի համար:*

*Քաղաքական պատմութեան տեսակէտից Օրոնտասի դրամների գոյութեամբ հաստատւում են մատենագրական հաղորդումներն այն մասին, որ նա ռազմա-քաղաքական հանգամանքների մղումով Հայաստանից անցել էր Փոքր Ասիա: Ի վերջոյ մ. թ. ա. 4րդ դարի 60ական թուականներին Օրոնտասի պատկերով ոսկեայ դրամի հանդէս գալը արքայից*

արքային հակադրուելու մի ցոյց էր, եթէ նկատի ունենանք, որ աքեմենեանների տիրապետութեան մէջ ոսկեայ դրամները թողարկւում էին բացառապէս գերագոյն իշխողի կողմից:

Այս երեւոյթը իւրովի փաստում է Արտաքսերքսէս 2րդ Մնեմոնի դէմ ապստամբած Որոնտասի մասին մատենագրական հաղորդումների իսկութիւնը:

Աւելին, Լամպսակ քաղաքում, Հելլեսպոնտոսի ափին, Որոնտասի պատկերով ոսկեայ դրամը իր կշռային չափով ներկայացնում է տեղական դրամային դրութեան բնորոշ տուեալ եւ անյարիր է աքեմենեան դահեկանների կշռային չափին:

Դրամի վրայ հիանալի յատկութեամբ պահպանուած է Որոնտասի դիմանկարը, որը միակ պաշտօնական վկայութիւնն է աքեմենեան տիրապետութեան վերջում Հայաստանի քաղաքական պատմութեան մէջ յիշատակուած, հայերի մէջ Երուանդեան անունով յայտնի դարձած, սատրապ-փոխարքայի համար:

Պատկերագրական ուրիշ վկայութիւններ տարաբախտաբար մեզ չեն հասել:

## ԳԼՈՒԽ Բ.

# ՀԵԼԼԵՆԻՍՏԱԿԱՆ ԴՐԱՄՆԵՐԻ ՇՐՋԱՆԱՌՈՒԹԻՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

*Աքեմենեանների կործանումից յետոյ նրանց դրամա-կշռային սիստեմը Հայաստանում եւ հարեւան երկրներում չվերացաւ, այլ մնաց իբրեւ այդպիսին դեռեւս Մակեդոնական տիրապետութեան սկզբնական շրջանում: Այդ մասին է վկայում այն իրողութիւնը, որ երբ Ալեքսանդր Մակեդոնացու զօրքերը, նուաճել էին Իրանը, բռնագրաւած ոսկու պաշարներից թողարկում էին կրկնակի դահեկաններ նոյն հին պարսկական կշռային սիստեմի սկզբունքով եւ անցեալում ընդունուած աքեմենեան դրամների պատկերատիպով*[1]:

*Բացի դրանից Հայաստանում Ալեքսանդր Մակեդոնացուն ենթակայ սատրապ Միթրանեսի (Միհրան) արծաթեայ դրամները իրենց կշռային տուեալներով ներկայացնում են Աքեմենեան կրկնակի դրախմաներ կամ սիկղներ, թողարկուած մ. թ. ա.*

---

[1] А. Н Зограф, Античные монеты, Материалы и Исследования по археологии СССР, *թիւ* 16. Москва-Ленинград, 1951, стр. 42.

331—330 թուերին[2]: Սակայն Միջազգային առեւտուրը ծայրագոյն Արեւմուտքի յունական գաղութներից մինչեւ Հնդկաստանի հիւսիսային մասերը, որ Ալեքսանդր Մակեդոնացու նուաճումներով անցել էր նրա գերիշխանութեան տակ, մ. թ. ա. 4րդ դարի վերջերից սկսել էր վարուել հիմնականում չափերի ու կշիռների ատտիկեան սիստեմով: Հայաստանի դրամական տնտեսութիւնը, որ սերտ կապուած էր Իրանի, Միջագետքի եւ Փոքր Ասիայի հետ, թեւակոխել էր իր զարգացման հելլենիստական փուլը: Անցեալում ընդունուած բոլոր սիստեմները եթէ անգամ չէին վերացել, ապա ունէին սոսկ տեղական նշանակութիւն, առանձին երկրների ներքին շուկաներում: Մինչդեռ Միջազգային ապրանքա-դրամական գործարքներում լայն ճանաչում էր ձեռք բերել ատտիկեան դրամաչափային սիստեմը: Վերջինիս ամենայայտնի միաւորները արծաթի գծով հետեւեալներն էին.

| | |
|---|---|
| | Կիլոգրամ |
| *Տաղանդ* (ΤΑΛΑΝΤΟΝ) | 26,20 |
| | Գրամ |
| *Մնաս* (ΜΝΑ) | 436,60 |
| *Դրամ* (ΔΡΑΧΜΗ) | 4,336 |
| *Օբոլոս* (ΟΒΟΛΟΣ) | 0,728 |
| *Քաղկոս* (ΧΑΛΚΟΣ) | 0,091 |

[2] Generalconsul Dr. Otto Blau, Die Herren von Sophene und deren Münzen. Numismatische Zeitschrift, IX, Wien, 1871, s. 101.

*Յունարէն անուանումների հայերէն ձեւերը յիշատակուած են հին հայկական գրաւոր աղբիւրներում*[3]*: Տուեալ միաւորները միմեանց նկատմամբ բաղդատւում էին հաշուառքի որոշակի օրինաչափութիւններով.*

| Քաղկոս | Օբողոս | Դրամ | Մնաս | |
|---|---|---|---|---|
| 8 | | | | |
| 48 | 6 | | | |
| 4·800 | 600 | 100 | | |
| 288·000 | 36·000 | 6·000 | 60 | Տաղանտ |

*Սակայն հիմնական միաւորը դրամական շրջանառութեան մէջ արծաթեայ դրախման էր, որը հայ մատենագրութեան մէջ արտացոլուել է «Դրամ» կամ «Դրաքմէ» անունով*[4]*:*

*Հիմք ընդունելով ատտիկեան այդ արծաթեայ դրամի* (ΔΡΑΧΜΗ) *կշռային չափը, որը կազմում էր «Մնասի»* 1/100 *բաժինը, այսինքն* 4,366 *գրամ, դրուագւում էին նրա տասնապատիկը, քառապատիկը, կրկնապատիկը ներկայացնող, ինչպէս նաեւ կէսը եւ կէսից պակաս չափ այլ միաւորներ, որոնց անուանական ցանկը կազմում էին հետեւեալները.*

---

[3] *Յակոբ Մանանդեան, Կշիռները եւ չափերը հնագոյն հայ աղբիւրներում, Երեւան,* 1930, *էջ* 47:

[4] *Հ. Աճառեան, Հայերէն արմատական բառարան, հատոր Բ, Երեւան,* 1926, *էջ* 626:

| | Դրախմա |
|---|---|
| Տասդրամեան (ΔΕΚΑΔΡΑΧΜΟΝ) | 10 |
| Չորեքդրամեան (ΤΕΤΡΑΔΡΑΧΜΟΝ) | 4 |
| Երկդրամեան (ΔΙΔΡΑΧΜΟΝ) | 2 |
| Դրամ (ΔΡΑΧΜΗ) | 1 |
| Հինգ Օբողոս (ΠΕΝΤΟΒΟΛΟΝ) | 5/6 |
| Չորս Օբողոս (ΤΕΤΡΟΒΟΛΟΝ) | 2/3 |
| Կէս դրամեան (ΗΜΙΔΡΑΧΜΟΝ) | 1/2 |
| Երկօբողոս (ΔΙΟΒΟΛΟΝ) | 1/2 |
| Մէկ ու կէս Օբողոս (ΤΡΙΗΜΙΟΒΟΛΟΝ) | 1/4 |
| Օբողոս (ΟΒΟΛΟΣ) | 1/6 |
| Երեք քառորդ Օբողոս (ΤΡΙΤΗΜΟΡΙΟΝ) | 1/8 |
| Կէս Օբողոս (ΗΜΙΟΒΟΛΟΝ) | 1/12 |
| Երեք ութերորդ Օբողոս (ΤΡΙΗΜΙΤΑΡΤΗΜΟΡΙΟΝ) | 1/16 |
| Քառորդ Օբողոս (ΤΕΤΑΡΤΗΜΟΡΙΟΝ) | 1/24 |
| Մէկ ութերորդ Օբողոս (ΗΜΙΤΕΤΑΡΤΗΜΟΡΙΟΝ) | 1/48 |

Այս ամբողջ շարքից դեկադրախմաները (տասդրամեան) թողարկւում էին բացառիկ դէպքերում: Հազուադէպ էին շրջանառութեան մէջ նաեւ դիդրախմաները (երկդրամեանները) ու հեմիդրախմաները (կէս դրամեանները): Դրախմայի 5/6, 2/3, 1/3, 1/4, 1/6, 1/8, 1/12, 1/16, 1/24 եւ 1/48 մասերը ունէին ներքին նշանակութիւն եւ Մայր Յունաստանի տեղական շուկայից դուրս չէին անցնում:

Ատտիկեան դրամա–հաշուային սիստեմի կառուցուածքը եւ նրանում ընդունուած միաւորների բաղդատութիւնները կարելի է պատկերացնել նաեւ այսպիսի սխեմայով.

| Լեպտոն | Քաղկոս | Երկքաղկոս | Կեսօբողոս | Օբողոս | Երկօբողոս | Երեքօբողոս | Չորեքօբողոս | Դրամ | Երկդրամ | Չորեքդրամ | Մնաս | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 7 | | | | | | | | | | | | |
| 14 | 2 | | | | | | | | | | | |
| 28 | 4 | 2 | | | | | | | | | | |
| 56 | 8 | 4 | 2 | | | | | | | | | |
| 112 | 16 | 8 | 4 | 2 | | | | | | | | |
| 168 | 24 | 12 | 6 | 3 | 1½ | | | | | | | |
| 224 | 32 | 16 | 8 | 4 | 2 | 1⅓ | | | | | | |
| 336 | 48 | 24 | 12 | 6 | 3 | 2 | 1½ | | | | | |
| 672 | 96 | 48 | 24 | 12 | 6 | 4 | 3 | 2 | | | | |
| 1·344 | 192 | 96 | 48 | 24 | 12 | 8 | 6 | 4 | 2 | | | |
| 33·600 | 4·800 | 2·400 | 1·200 | 600 | 300 | 200 | 150 | 100 | 50 | 25 | | |
| 2,016·000 | 288·000 | 144·000 | 72·000 | 36·000 | 18·000 | 12·000 | 9·000 | 6·000 | 3·000 | 1·500 | 60 | Տաղանդ |

Սակայն իրականում միջազգային շրջանառութեան մէջ լայն տարածում ունէին յատկապէս արծաթեայ դրամեանները (ΔΡΑΧΜΗ) եւ չորեքդրամեանները (ΤΕΤΡΑΔΡΑΧΜΟΝ)։ Հայաստանում եւ հարեւան երկրներում գտնուած հելլենիստական դրամները դրախմաներ եւ տետրադրախմաներ են։

Ատտիկեան սիստեմի ոսկեայ դրամը կոչւում էր «Ստատեր» (ΣΤΑΤΗΡ), որի օրինակային կշիռը սահմանուած էր 8,60 դրամ։ Հայ մատենագրութեան մէջ այդ անուանումը յաճախ յիշատակւում է «Ստատեր» ձեւով[5]։

Ի տարբերութիւն արծաթեայ դրամների, ոսկեայ դրամները համեմատաբար քիչ էին թողարկւում։ Ոսկին ունէր գերազանցապէս հաշուային նշանակութիւն․ հաշւում էին ոսկով վճարում արծաթով։ Հելլենիստական դարաշրջանում ոսկու եւ արծաթի փոխանակութիւնը միջազգային առեւտրում նշւում էր 1 ։10 յարաբերութեամբ։ Նկատենք, որ այդ յարաբերութիւնը կայուն չէր։ Այն կապուած էր ոսկու եւ արծաթի շուկայական գների փոփոխման հետ։ Մէկ ոսկեայ ստատերը փոխանակւում էր 20 արծաթեայ դրախմայի (դրամի) եւ կամ 5 տետրա-

---

[5] Յակոբ Մանանդեան, Կշիռները եւ չափերը հնագոյն հայ աղբիւրներում, Երեւան, 1930, էջ 24, 134։

դրախմայի (չորեքդրամեանի) հետ: Ինչ վերաբերում է արծաթի եւ պղնձի փոխյարաբերութեանը, ապա դրանք դրսեւորուել էին 1 : 40 կամ 1 : 30 չափով[6]:

* * *

Հելլենիստական դրամների տարածումը ուրուագծւում է աւելի քան երեք հարիւրամեայ պարզացման մի ժամանակահատուած հին աշխարհի դրամական տնտեսութեան մէջ: Այդ պարզացումը գնւում է Աղեքսանդր Մակեդոնացու աշխարհակալութիւնից մինչեւ հռոմէական հանրապետութեան անկումը: Մակեդոնական նուաճումներով միաւորուած երկրներում հնարաւորութիւն էր ստեղծուել ընդհանուր ճանաչում գտած կշռային սիստեմով դրամները թողարկել միաժամանակ տարբեր վաճառաշահ կենտրոններում:

Հելլենիստական դարաշրջանի դրամները դրամագործութեան մէջ կատարուած առաջդիմութեան շնորհիւ ունէին իրենց կերտուածքի որոշակի բնորոշութիւնը եւ տարբերւում էին անցեալի ինչպէս հնամենի, այնպէս էլ դասական շրջանի դրամներից: Նախ եւ առաջ դրամի մի կողմի վրայ, որպէս կանոն յաճախ դրոշմում էին իշխող միապետի դիմաքանդակ-պատկերը, մի երեւոյթ, որ մինչ այդ Արեւմուտքում բա-

[6] А. Н. Зограф, Античные монеты, стр. 49.

ցառուած էր: Արձանագրութիւնները հիմնականում յունատառ էին եւ տաւել ընդարձակ քան անցեալում: Բացի միապետների ու քաղաքների անուններից յիշատակւում էին նաեւ փողերանոցների կառավարիչների անունները: Յատուկ ուշադրութիւն էր դարձւում դրամների թողարկման տարեթուերին, նշուած տարբեր տոմարային սկզբունքներով: Պատկերագրութեան մէջ մտնում էին լրացուցիչ խորհրդանշաններ մագիստրատների, արհեստանոցների, ինչպէս նաեւ թողարկման հերթականութեան վերաբերեալ: Դրամների կլորակները ուռուցիկ էին եւ թեթեւակի գոգաւոր, եզրերը նեղացուած: Նրանց տրամագծային չափերը դրախմաների համար կազմում էին մօտ 20 միլիմետր, իսկ տետրադրախմաների մօտ 30 միլիմետր: Կլորակները նախապէս ձուլում էին յատուկ կաղապարներում եւ այնուհետեւ ենթարկւում կնքման: Դրուագումը կատարւում էր պատկերներով ու արձանագրութիւններով փորագրուած կնիքների միջոցով: Կնիքների կերտման համար աշխատում էին ժամանակի լաւագոյն քանդակագործ-փորագրիչները, որոնք ստեղծում էին պետութեան կողմից ընդունուած պատկերագրութեան դրոշմը: Փողերանոցները գործում էին արհեստների ու առեւտրի նշանաւոր կենտրոններում, գտնուելով գերագոյն իշխանութեան հսկողութեան ներքոյ: Աշ-

խոտանքի բաժանումը փողերանոցներում կարգաւորւում էր մետաղների ընդունման, նրանցից սահմանուած կշռային չափերով կլորակների ձուլման, այնուհետեւ հատաձոյլների յղկման, կնքման եւ ի վերջոյ պատրաստի դրամական միաւորների ստուգման, հաշուառքի ու պահպանման ստորադասութիւններով: Յատուկ հսկողութեան տակ էին պահւում կնիքները, որոնց մաշուելուց յետոյ կերտւում էին նորերը: Ընդհանրապէս փողերանոցներում աշխատող վարպետները մեկուսացուած էին եւ սերնդէ սերունդ զբաղւում էին նոյն գործով: Դրամի կեղծումը պատժւում էր օրէնքի ծայրագոյն խստութեամբ[7]:

* * *

Հայաստանում հելլենիստական դրամների շրջանառութիւնը կատարուել է ինչպէս տեղական, այնպէս էլ օտար ծագման դրամական միաւորներով, որոնք միջազգային ապրանքա-փոխանակութեան շնորհիւ թափանցել ու տարածուել են արհեստների ու առեւտրի հայկական կենտրոնները: Բազմատեսակ այդ դրամների հիմնական խմբերի

---

7 Փողերանոցների գործունէութեան եւ դրամների դրուագման արհեստական մանրամասնութիւնները քննութեան ենթակայ առանձին հարցեր են:

յաջորդականութեամբ ու փոփոխութիւննե-
րով դիտւում է հելլենիստական Հայաստանի
դրամական շրջանառութեան զարգացումը
նրա պատմութեան կարեւոր փուլերում։
Տեղական կերտուածքի հայկական դրամ-
ները ներկայացնում են հայոց միապետու-
թիւնները՝ շատ քիչ Ծոփքի ու Փոքր Հայքի
եւ առաւելապէս Արտաշէսեանների վերա-
բերեալ։ Օտարամուտ դրամները ներկայաց-
նում են այն տէրութիւնները, որոնք քաղա-
քական ու տնտեսական առնչութիւն են
ունեցել Հայաստանի հետ հելլենական դարա-
շրջանում։ Սակայն կարեւոր է նշել, որ
Հայաստանում տարածուած հելլենիստական
դրամները, անկախ իրենց ծագման բնորո-
շութիւններից, մեծ մասամբ թողարկուել
են ատտիկեան կշռային սիստեմով եւ շըր-
ջանառութեան պրոցեսում յաճախ միասին
էլ սպասարկել են առեւտրի պահանջները։

Հայաստանում գտնուած հելլենիստա-
կան դրամների շարքում վաղագոյն դրա-
մական միաւորները միջազգային առեւտրի
մէջ մտել են մ. թ. ա. 336—323 թուերին։
Դրանք Ալեքսանդր Մակեդոնացու արծա-
թեայ դրամեաններն ու չորեքդրամեաններն
են, որոնցով եւ սկսուել է Հայկական լեռն-
աշխարհում հելլենիստական դրամների շըր-
ջանառութիւնը։



Ալեքսանդր Մակեդոնացու դիմաքանդակը դրամի վրայ: Մեծացուած 3 անգամ

Մակեդոնացու դրամները Հայաստանում յայտնաբերուել են ինչպէս հնագիտական պեղումների շնորհիւ, այնպէս էլ պատահականօրէն, տեղական բնակչութեան հողային աշխատանքների միջոցին[8]:

Իրենց ծագման տուեալներով Հայաստանում գտնուած մակեդոնական դրախ–

---

8 Հայաստանի Պատմութեան պետական թանգարան, թիւ 14591, 13576, 12023, 17916, 17832, 17815 եւ այլն: Հայաստանի Պատմութեան պետական թանգարանի անունը հետագայ յիշատակարաններում տրւում է համառօտագրուած՝ ՀՊԹ տառերով:

մաներն ու տետրադրախմաները նշում են Հայոց երկրի կայերը Միջագետքի ու Փոքր Ասիայի ուղղութիւններով: Հայաստանում գտնուած մակեդոնական դրամները թողարկուել են Բաբելոնում, Միլետում կամ Եփեսոսում(°), Կարդիայում եւ Աբիդոսում:

Ընդհանուր առմամբ պէտք է նկատել, որ Ալեքսանդր Մակեդոնացու դրամները նրա լայնածաւալ աշխարհակալութեան մէջ, դրուագւում էին միաժամանակ տարբեր երկրներում, ըստ որում ոչ միայն մ. թ. ա. 4րդ դարի վերջերին, այլ նաեւ հետագայում: Հելլենիստական դրամների բազմատեսակութեան մէջ, Ալեքսանդր Մեծի դրամները եղել են ամենատարածուած, ամենակայուն գնահատութեան եւ այդ պատճառով էլ շրրջանառութեան ոլորտում ամենէն երկարակեաց դրամները: Նրանք յաճախ յայտնաբերւում են անգամ մ. թ. ա. 1ին դարի դրամական գանձերի կազմում[9]:

Կովկասում Ալեքսանդր Մակեդոնացու

[9] Е. А. Пахомов, Монетние клады Азербайджана и других республик, краев и областей Кавказа, Баку вып. I, 1926; вып. II, 1938; вып. 3, 1940; вып. 4—5, 1949; вып. 6, 1954; вып. 7, 19, вып. 8, 1959; вып. 9, 1966. յետագայում այս աշխատութիւնը յիշատակւում է համառօտագրուած՝ ПМК տառերով: ПМК, II, թիւ 314, 649; ՀՊԹ թիւ 24119, 24120.

դրամների տարածումը դիտւում է ոսկու եւ արծաթի գծով, ըստ որում տարբեր ուղղութիւններով: Ոսկին յաճախ է Սեւ ծովի հիւսիս-արեւմտեան մասերում[10] ու Վրաստանի արեւմուտքում[11]: Մինչդեռ արծաթը բնորոշ է Հայաստանին եւ նրան մերձաւոր Անդրկովկասի արեւելեան մասին, Շամխոր — Պարտաւից մինչեւ Օրդուբադի շըրջանները[12]:

Վաղ հելլենիստական ոսկեայ տեւական շրջանառութիւնը Կովկասի հիւսիս-արեւմտեան մասերում, ուր նրանք թափանցել են Փոքր Ասիայից ծովային ճանապարհներով[13], արդէն մ. թ. ա. 1ին դարում եւ աւելի ուշ, առաջ էր բերել Ալեքսանդր Մակեդոնացու ստատերներից ընդօրինակուած տեղական կերտուածքի ոսկեայ դրամական միաւորների թողարկումը: Սակայն այդ երեւոյթը Հայաստանի համար բնորոշ չէ: Դրամա-

---

[10] ПМК, III, թւ. 654, 655, 656; V, թւ. 1317; VII, թւ. 1703; IX, թւ. 2076.

[11] ПМК, I, թւ. 15; II, թւ. 316; III, թւ. 651—653; V, թւ. 1318—1319; VII, թւ. 1702.

[12] ПМК, II, թւ. 313—314; III, թւ. 649—650; IV, թւ. 1003; V, թւ. 1320.

[13] К. В. Толенко, Денежное обращение Колхиды в римское время, Ленинград, 1964, стр. 13—14.

գիւտերի հաստատագրուած վկայութիւնները ցոյց են տալիս, որ Հայկական ՍՍՀ տարածութեան վրայ Մակեդոնացու եւ նրա անմիջական յաջորդների ոսկեայ դրամները հազուագիւտ են[14]: Կովկասեան ընդօրինակութեան Մակեդոնական ոսկեայ դրամներից մէկ հատ գտնուել է Սիսիանում:

Հայաստանում շրջանառութեան մէջ են եղել Ալեքսանդր Մակեդոնացու անմիջական յաջորդ՝ Փիլիպպոս 3րդ Արիդայոսի արծաթեայ դրամները, թողարկուած Բաբելոնում, Մագնեզիայում եւ Կոլոֆոնում: Սրանք եւս նշում են Հայաստանի ապրանքադրամական կապերի ուղղութիւնները Միջագետքի եւ Փոքր Ասիայի հետ, որ դիտւում էր նախա–հելլենիստական ժամանակներում: Ուշադրաւ է, որ ըստ պատկերատիպերի Փիլիպպոս 3րդի Հայաստանում գտնուած դրամները յար ու նման են Մակեդոնացու դրամներին եւ եթէ չլինէին նրանց վրայ արքայական անձնանունների յունատառ տարբերութիւնները, ապա հազիւ թէ հնարաւոր լինէր ջոկել միմեանցից: Դրանցից մի կողմերին

---

[14] А. Н. Зограф, Распространение находок античных монет на Кавказе. Труды отдела нумизматики Государственного Эрмитажа, том I, Ленинград, 1946, стр. 40–41.




Զեւսի պատկերը Ալեքսանդր Մակեդոնացու դրամի վրայ: Մեծացուած 3 անգամ

դրոշմուած է դիւցազնական Հերակլէսի (հայերի մօտ Վահագնի) պատկերը, գլուխը զարդարուած առիւծի մորթով, իսկ միւս կողմերին՝ աստուածահայր Զեւսի (Արամազդի) մերկամարմին կերպարը, բազմած գահին, արծիւը ձեռքին: Յիրաւի, դրանք հելլենիստական դարաշրջանի այն դրամներն էին, որոնց վրայ միապետի դիմաքանդակը դեռեւս բացայայտօրէն չէր ներկայացւում: Այն քողարկուած էր կիսաաստուած-կիսամարդ Հերակլէսի կարծեցեալ պատկերով, որին տրւում էր Ալեքսանդր Մակեդոնացու

անհատականութեանը բնորոշ դիմագծեր: Առաջաւոր Ասիայի վաճառաշահ քաղաքներում քաջ յայտնի էին մակեդոնական յիշեալ դրամները: Եթէ Վրաստանի հիւսիս-արեւմտեան շրջաններում Ալեքսանդր Մակեդոնացու եւ մասամբ Լիսիմաքոսի (323—281) ոսկէ դրամներն էին ընդօրինակում տեղական կերտուածքի թողարկմամբ[15], ապա Հայաստանի հարեւան Աղուանքում, մ.թ.ա. 1ին դարի երրորդ քառորդում ընդօրինակում էին հայկական շուկաներում այնքան յայտնի այդ նոյն Ալեքսանդր Մակեդոնացու արծաթեայ դրամները[16]: Այս իրողութիւնն ինքնըստինքեան վկայում է նրանց աւելորդապաշտական գնահատման մասին անգամ ուշ հելլենիստական ժամանակներում:

Արտակարգ վկայութիւն է Հայաստանի համար, նրա Արմաւիր մայրաքաղաքի աւերակների վայրում պատահականօրէն գտնուած մ.թ.ա. 333—304 թուերի ռոդոսեան արծաթեայ դրախման (կէս դրամեան)[17]:

---

[15] ПМК, I, թիւ 16; II, թիւ 315; III, թիւ 651; V, թիւ 1316, 1321, 1322, 1324—1327; VI, թիւ 1352; VII, թիւ 1705.

[16] Е. А. Пахомов, Чекан в Албании подражаний монетам македонским или селевкидским, в I в. до н. э. Материалы по истории Азербайджана, том V, Баку, 1962, стр. 75; К. Голенко, Важнойшие послевоенные находки античных монет. «Советский коллекционер», Москва, 1968, թիւ 6, стр. 96.

[17] ՀՊԹ, թիւ 17912:

Ընդհանրապէս Անդրկովկասում խիստ հազվադէպ են ռոդոսեան դրամները: Եզակի նմուշներով դրանցից ի յայտ են եկել Սեւ ծովի հիւսիս—արեւելեան ափերին ու Ղրիմում[18]: Միջերկրականի արեւելքում, Փոքր Ասիայի հարաւային նահանգներից Կարիային ու Լիկիային մերձաւոր Ռոդոս կղզին ապրանքա—փոխանակութեամբ գործօն մասնակցութիւն ունէր միջազգային առեւտրում: Ռոդոսում թողարկւում էին տեղական կերտուածքի արծաթեայ դրամներ, որոնք լայն տարածում ունէին Եգէական ծովի արեւելեան մասերում եւ դրանք իրենց միաւորների կշռային չափերով ներկայացնում էին մի ինքնուրոյն սիստեմ: Այդ այսպէս կոչուած ռոդոսեան սիստեմի դրամը կորցրել էր իր նախնական քաշը եւ մ. թ. ա. 4րդ դարի վերջերին ներկայացնում էր մօտ 3,50—3,30 գրամ արծաթի չափով: Արմաւիրում գտնուած ռոդոսեան կէս դրախմանոցը (1,65 գրամ արծաթ) կազմում է վաղ հելլենիստական քաշի նուազեցուած չափը[19]:

Սակայն ռոդոսեան դրամների թափանցումը Հայաստան եթէ անգամ առանձին դէպքերում բացառուած չհամարուի, ապա նրանց մշտական շրջանառութեան մասին դատելու լիարժէք վկայութիւններ դեռեւս

[18] ПМК, II, թիւ 312; III, թիւ 974.

[19] Historia numorum. A manual of Greek numismatics. New and enlarged edition by Barclay V. Head, London, 1963, p. 639—641.

չկան: Արմաւիրում յայտնուածը մնում է դեռեւս իբրեւ եզակի օրինակ[20]:

Հետագայ ժամանակներում, մինչեւ մ. թ. ա. 3րդ դարի կէսերը, Հայաստանի դրամական տնտեսութեան մէջ փոփոխութիւններ չեն դիտւում: Զարգացումը նկատւում է նախ եւ առաջ Հայկական լեռնաշխարհի արեւմտեան երկրամասերում՝ Ծոփքում ու Փոքր Հայքում ծագած հայոց թագաւորութիւնների դրամներով: Արդարեւ, սեփական դրամ կտրելու իրաւունքը վկայում է հայկական յիշեալ երկրամասերում տեղական իշխանութիւնների քաղաքական անկախութեան մասին: Բայց գործնականում այդ իրաւունքը խիստ սահմանափակ էր, եթէ նկատի ունենանք, որ հայկական ազգային դրամների անդրանիկ թողարկման այդ միաւորները ոչ թէ ոսկուց կամ արծաթից էին, այլ պղնձից, որոնք ունէին սոսկ տեղական նշանակութիւն եւ ներքին շրջանառութեան ոլորտից դուրս չէին անցնում: Կշռային չափերով դրանք ատտիկեան սիստեմի դրամներ էին: Սակայն կարեւորն այն իրողութիւնն է, որ Ծոփքում 3—2րդ դարերում ապրանքադրամական յարաբերութիւնների զարգա–

---

20 Առաջիկայում Արմաւիրի հնագիտական պեղումները, որ յաջողութեամբ իրագործւում են, թերեւս նոր լոյս սփռեն հայ-փոքրասիական առնչութիւնների հարցերին:

ցումը պահանջում էր ներքին առեւտրի կարիքների համար մանր արժեչափի դրամների թողարկում, մի անհրաժեշտութիւն, որ կարող էր առաջանալ դրամի պաշտօնական նշանակութեան լիակատար ծաւալման, քաղաքային կեանքի եւ նրանում զարգացող առեւտրի խորացման պայմաններում: Այլ կերպ ասած, Հայաստանի Արեւմուտքում մ. թ. ա. 3րդ դարի վերջերից մանր առ ու ծախսը կատարւում էր դրամով: Ծոփքի եւ Փոքր Հայքի հայ թագաւորներից յայտնի են Քարասպէսի, Արշամէսի, Արդիզարէսի եւ Քսերքսէսի դրամները, որոնք տարաբախտաբար պահպանուել են հատ ու կենտ նմոյշներով:

Մեծ Հայքի հիւսիս-արեւելեան շրջաններում, մասնաւորապէս Արարատում, Տիրակում, Սիւնիքում ու Լոռի-Փամբակում Ծոփքի թագաւորութեան հայկական դրամներից չեն գտնուել: Այդ իրողութիւնը թերեւս խօսում է այն սահմանափակ դերի մասին, որ յիշեալ խմբի դրամներն ունեցել են հին Հայաստանի մէջ: Դրանց սակաւութիւնը հնարաւորութիւն չի ընձեռնում պարզելու թէ շրջանառութեան ինչ ոլորտ են ունեցել այդ դրամները, հետեւապէս Մեծ Հայքի ու Ծոփքի միջեւ եղած ներքին կապերի մասին որոշակի պատկերացում ունենալ դրամային շրջանառութեան տեսակէտից: Բայց դրանից Ծոփքի Հայոց դրամների հազուադէպութիւնը, նրանց

պահպանուած օրինակների չնչին քանակութիւնը հնարաւորութիւն չի տալիս նաեւ համեմատական աշխատանք ծաւալել պարզելու այդպիսիների ժամանակագրութեանը եւ դասակարգման սկզբունքներին վերաբերող հարցերը: Պէտք է ենթադրել, որ վաղ հայկական այդ դրամների թողարկումը կատարուել է բացառապէս ներքին առեւտրի զարգացման պահանջով, որ ընթացել է Ծոփքի ու Փոքր Հայքի քաղաքներում մ. թ. ա. 3—2րդ դարերում: Գրաւոր աղբիւրներում յիշատակւում են Արշամաշատի եւ Արկաթիոկերտի մասին, որոնք եղել են տնտեսական կեանքի կենտրոններ հելլենիստական դարաշրջանում: Մինչդեռ Փոքր Հայքի դրամագործութեան կենտրոնները որոշուած չեն: Այդ խնդրի լուծմանը մեծապէս կարող են նպաստել տաջիկայում հնագիտական պեղումների շնորհիւ եւ տեղական բնակչութեան կողմից հաւաքուած դրամների քննութիւնները: Այդուհանդերձ, եթէ մ. թ. ա. 3րդ դարի վերջերից եւ 2րդ դարում Փոքր Հայքում եւ Ծոփքում մանր առեւտրի համար առկայ էին տեղական կերտուածքի պղնձեայ դրամները, ապա այդ նոյն ժամանակաշրջանում արտաքին ապրանքափոխանակութեան բերումով Հայաստանում տարածուած էին դտել Սելեւկեան պետութեան արծաթեայ դրամները: Դրանք ատտիկեան սիստեմի տետրադրախմաներ էին, թողարկուած Ասորիքի վաճառաշահ

քաղաքներում: Ժամանակագրական տառումով Հայաստանում գտնուած սելեւկեան դրամները վերաբերում են Անտիոքոս 4րդ (175—164) Եպիփանոսի, Անտիոքոս Ե. (164—162) Եւպատորի, Դեմետրիոս Ա. (162—150) Սոտերի, Ալեքսանդր Ա. (152—144) Բալասի իշխանութեան տարիներին: Սակայն առաւել նշանակալից է դառնում նրանց դերը մ. թ. ա. 2րդ դարի վերջերից եւ նամանաւանդ 1ին դարի ընթացքում: Անտիոքոս Է. (138—129) Եւերգետէսի եւ նամանաւանդ. (92—83) Փիլադելփոսի տետրադրախմաները սելեւկեան ամենատարածուած դրամներն են եղել Հայաստանի քաղաքներում եւ արտացոլում են հայ–սիրիական կապերի անմիջականութիւնը: Անդրկովկասում սելեւկեան դրամների շրջանառութիւնը դիտւում է նաեւ Աղուանքում[21], բայց Վրաստանում, Կուր գետի վերին հոսանքից հիւսիս–արեւմուտք հաստատագրուած վկայութիւններ չկան: Հարաւային Օսեթիայում ի յայտ եկած Անտիոքոս Է. Եւերգետէսի արծաթեայ դրամը միակ օրինակն է այդպիսիների շարքից եւ դեռեւս շատ աննշան է դատելու համար սելեւկեան դրամների այդտեղ ունեցած դերի մասին[22]: Ընդհանրապէս Կովկասում սելեւկեան դրամ–

---

[21] ПМК, II, թիւ 314; IX, թիւ 2080.
[22] ПМК, IV, թիւ 1346.

ները եւ նրանցով օժտուած դրամային գանձերը շատ չեն պահպանուել: Ամենայայտնի վկայութիւնները վերաբերում են Հայաստանին ու Աղուանքին: Հայկական ՍՍՀ տարածութեան վրայ սելեւկեան դրամներով հարուստ երկու գանձեր են յայտնի դարձել գիտութեանը, որոնցից մէկը բացուել է անցեալ դարի վերջերին Սեւանայ լճի ափին, նախկին Ելենովկա գիւղում[23], իսկ միւսը՝ 1945 թուին, Սիսիանի շրջանի Սառնակունք գիւղում[24]: Տեղագրական տուամով այդ երկուսն էլ գտնուել են քաղաքամայր Արտաշատից ոչ շատ հեռու: Աղուանքում նման դրամագիւտերը յայտնուել են անցեալի տնտեսական կարեւոր կենտրոնների՝ Պարտաւի[25] եւ Կապաղակի[26] մօտ: Նիւթի քննութիւնը ցոյց է տալիս, որ յիշեալ վայրերում տարածուած սելեւկեան դրամները թողարկուել են գլխաւորապէս Աւագն Անտիոքում (Որոնտէսի վրայ):

Միջազգային առեւտուրը Սիրիայից դուրս եկած սելեւկեան դրամների ընդհա-

---

[23] ПМК, I, թիւ 22.

[24] Х. А. Мушегян, Новые данные к характеристике сарнакунского клада античных монет. Доклад, прочитанный на юбилейной сессии РАИИМК, 21 апреля 1969 года, Ленинград, Государственый Эрмитаж, Отдел Нумизматики.

[25] ПМК, II, թիւ 314.

[26] ПМК, IX, թիւ 2080, сел. Хинислы, Шемахийский район, Азербайджанской ССР, 1958 год.

նուր հատանքով Հայաստան է բերել նաեւ փիւնիկեան ծագման տետրադրախմաններ Սիդոնից, Արադոսից եւ առաւելապէս Տիւրոսից: Պէտք է ընդգծել, որ Հայաստանում գտնուած թէ սելեւկեան եւ թէ փիւնիկեան դրամները տետրադրախմաններ են արծաթի 14,50 գրամ միջին քաշով: Դրախմանոցները եւ պղնձեայ դրամական միաւորները խիստ հազուադէպ են: Այդուհանդերձ, արտաքին առեւտրի գործարքներին բնորոշ սելեւկեան արծաթեայ դրամները, մակեդոնական դրախմաններից ու տետրադրախմաններից յետոյ, նշանակալից եղան Հայաստանի դրամական շրջանառութեան մէջ հելլենական դարաշրջանում, որոնցով եւ արտացոլւում են երկրի ապրանքա-դրամական առնչութիւնները միջերկրականի արեւելեան շուկաների հետ: Ըստ էութեան սելեւկեան դրամներով Հայաստանում սկսուեց ներկայացուել հելլենիստական միապետների պաշտօնական դիմանկարները, նրանց իւրաքանչիւրի անհատականութեանը բնորոշ տուեալներով: Ալեքսանդր Մակեդոնացու օրօք, ինչպէս ասուեց, նրա դիմաքանդակը ներկայացւում էր Հերակլէսի կերպարով: Սակայն կարեւորն այն է, որ մ. թ. ա. 2րդ դարի վերջերից եւ յատկապէս 1ին դարում հելլենիստական դրամների շրջանառութիւնը Հայաստանում ընդլայնուել էր մի կողմից հայ ազգային դրամների առաւել ծաւալուն թողարկմամբ, միւս կողմից մի-

ջադդային առևտրի մղումով սելևկեան, պարթևական, կապադովկիական, Հռոմի հանրապետական և այլ արծաթեայ դրամների տարածմամբ։ Այս շրջանի հայկական ծագման հելլենիստական դրամները թողարկւում էին Հայոց Արտաշէսեան թագաւորների կողմից, նրանց տիրակալութեան նշանաւոր տնտեսական ու քաղաքական կենտրոններում։ Արտաշէսեանների իշխանութիւնը 2—1ին դարերում տարածուել էր Հայկական լեռնաշխարհի վրայ միաւորելով տրոհուած, մանր հայաբնակ երկրամասերը մէկ համահայկական թագաւորութեան մէջ։ Արտաշէսեանների միապետութիւնը դարձել էր Առաջաւոր Ասիայում խոշոր տիրակալութիւններից մէկը։

Արտաշէսեան թագաւորութիւնը թողարկել է.

Տիգրան Ա. (123—96) պղնձեայ դրամներ

Տիգրան Բ. (95—56) արծաթեայ և պղնձեայ դրամներ

Արտաւազդ Բ. (56—34) արծաթեայ և պղնձեայ դրամներ

Արտաշէս Բ. (30—20) միայն պղնձեայ դրամներ

Տիգրան Գ. (20—8) արծաթեայ և պղնձեայ դրամներ

Տիգրան Դ. (8—5) միայն պղնձեայ դրամներ

Արտաւազդ Գ. (5—2) միայն պղնձեայ դրամներ

Արտաւազդ Դ. (4—6) արծաթեայ եւ պղնձեայ դրամներ

Տիգրան Ե. (6) միայն պղնձեայ դրամներ

Արտաշէսեանները սելեւկեանների նման, իրենց դրամները թողարկում էին ատտիկեան սիստեմի սկզբունքներով: Շրջանառութեան մէջ տարբեր է եղել նրանց դերը Հայաստանի ապրանքա – փոխանակութեան գործարքներում: Տիգրան Ա. (123—96) հելլենասէրի օրօք Հայոց դրամները տարածման խիստ սահմանափակ ոլորտ են ունեցել: Դրանք հազուադիւտ են Մեծ Հայքի հիւսիսարեւելեան մարզերում: Ոչ Այրարատում ու Գուգարքում եւ ոչ էլ Սիւնիքում, Արցախում կամ Ուտիքում, ինչպէս նաեւ վերջիններիս հարեւան Աղուանքում ու վրացական շրջաններում Արտաշէսեաններից վաղագոյն շրջանի դրամներ չեն գտնուել: Նրանց շրջանառութեան ոլորտը ուրուագծւում է Հայկական լեռնաշխարհի հարաւ–արեւմտեան կողմերում, մասնաւորապէս Հայոց Միջագետքում ու նրան մերձաւոր շուկաներում: Առաջնահերթ վկայութիւն է այդ մասին Մծբին քաղաքի մօտ բացուած պղնձեայ դրամների գանձը՝ հելլենիստական դարաշրջանի խոշորագոյն գանձերից մէկը[27]:

[27] Henri Seyrig, Trésor Monétarie de Nisibe, Paris, 1955. Revue Numismatique, p. 85—128.

Մծբինի գանձի մէջ եղել են նաև հայկական դրամներ, որոնք ըստ նորագոյն քննութիւնների, արդարև վերաբերում են Տիգրան Ա. (123—96) հայոց թագաւորի իշխանութեան տարիներին[28]: Պղնձեայ դրամները բնորոշ լինելով տեղական առևտրին, Մծբինի գանձի տուեալներով արտացոլում են միաժամանակ ներքին շուկայի կախումը արտաքին առևտրից, որը ընդլայնուել էր մ. թ. ա. 2—1-ին դարերի ընթացքում: Նրանում առկայ են պղնձեայ դրամներ Սոլի, Մոպսուեստիա, Աւագն Անտիոք, Սելեւկիա, Լաւոդիկէ, Ապամէա, Արադոս, Սիդոն, Դամասկոս և այլ քաղաքներից: Բուն Հայաստանում նման պարունակութեան գանձեր, և այն էլ հելլենիստական պղնձեայ դրամների, չեն գտնուել: Այդպիսիներն Անդրկովկասի դրամական տնտեսութեանը բնորոշ չեն: Հայկական դրամները Մծբինի գանձում տարաբախտաբար խիստ մաշուած են, չնայած նրանց պատկերագրութեան որոշակութիւնը պահպանուել է: Սակայն լինելով թողարկուած տեղական առևտրի համար, վաղ Արտաշէսեան այդ պղնձեայ դրամները լայն ճանաչում Մեծ Հայքում չեն ունեցել:

Հայկական դրամների միջազգային ճանաչումը դիտւում է Արտաշէսեանների հզօ-

---

[28] Paul Z. Bedoukian, A classification of the coins of the Artaxiad dynasty of Armenia. Reprinted from the American Numismatic Society. Museum Notes, 14, New York, 1968, p. 52—53.

*րութեան բարձրագոյն շրջանում՝ Տիգրան Մեծի (95—56) թագաւորութեան տարիներին։ Ներքին եւ արտաքին առեւտրի պահանջով Տիգրան Մեծի դրամները թողարկւում էին ոչ միայն բուն Հայաստանում, այլ եւ Հայոց տիրակալութեան սիրիական քաղաքներում։ Իրենց կշռային չափերով այդ դրամները անշեղօրէն պահպանում էին ատտիկեան սիստեմի սկզբունքները։ Շրջանառութեան մէջ տարածուած էին առաւելապէս Տիգրան Մեծի արծաթեայ դրախմաները եւ տետրադրախմաները, իսկ ներքին, մանր առ ու ծախի համար՝ պղնձեայ մէկ, ինչպէս նաեւ կէս ու քառորդ միաւորները։ Հայաստանում Տիգրան Մեծի փողերանոցները գործում էին երկրի առեւտական ու քաղաքական կենտրոններում՝ Տիգրանակերտում, Արտաշատում եւ այլուր, իսկ Սիրիայում՝ Անտիոքում (Որոնտէսի վրայ) եւ աւելի հարաւ՝ Դամասկոսում։*

*Անդրկովկասում Տիգրան Մեծի արծաթեայ դրամները տարածուել են Արարատեան դաշտի, Շիրակի, Գեղարքունիքի, Սիւնիքի, Արցախի, Գուգարքի շրջաններում, Կուր գետի միջին հոսանքից մինչեւ Սեւ ծովին մերձաւոր վայրերը*[29]*։ Հազուադէպ են նրա պղնձեայ դրամները, իսկ ոսկեայ դրամներ ինչպէս Տիգրան Մեծի, այնպէս էլ նրան*

---

[29] ПМК, I, *թիւ* 25, 26; II, *թիւ* 318; III, *թիւ* 776; V, *թիւ* 1348; VI, *թիւ* 1536, 1548.



Հայոց «արքայից արքայ» Տիգրան Մեծի (95—56) դիմաքանդակը դրամի վրայ: Մեծացուած 3 անգամ

նախորդող ու յաջորդող Արտաշէսեան թագաւորների կողմից չեն թողարկուել[30]:

Հայաստանում, ինչպէս նաեւ ողջ Կուր-Արաքսեան Միջագետքում գտնուած Տիգրանեան արծաթէ դրամները թողարկուել են առաւելապէս Անտիոքում՝ Որոնտէսի վրայ Դուրս գալով Սիրիայից նրանք ապրանքափոխանակութեան պահանջով մտել են Հայ-

[30] Տիգրան Մեծի պատկերով ոսկէ դրամների մի քանի օրինակներ պահւում են առանձին ժողովածուներում, սակայն դրանք բոլորն էլ կեղծ են: Այդ առթիւ տես Paul Bedoukian, Cold Forgeries of Tigranes the Great of Armenia. Reprinted from The American Numismatic Society, Museum Notes XI, p. 303—305, pl. XLIX.

*կական քաղաքները եւ դրանով իսկ նշում են Հայաստանի առնչութիւնը սիրիական շուկաների հետ Մերձաւոր Արեւելքում: Սակայն հետագայում, Տիգրան Մեծի անմիջական յաջորդների օրօք խիստ կրճատւում է հայկական դրամների թողարկումը եւ նսեմանում է նրանց դերն ու նշանակութիւնը միջազգային առեւտրում: Արտաւազդ Բ. (56—34) Արտաշէսեանի արծաթեայ դրամները թողարկւում էին հիմնականում միայն Հայաստանում:*



Հայոց «արքայից արքայ» Արտաւազդ Բ-ի (56—34) դիմաքանդակը պղնձեայ դրամի վրայ: Գտնուած Արտաշատում: Մեծացուած 3 անգամ

*Ի տարբերութիւն Տիգրան Մեծի դրամների, որոնք ստուար խումբ են կազմում Հին Հայկական դրամների շարքում, Արտաւազդ Բ-ի դրամները շատ քիչ օրինակներով են յայտնի:*

*Հազուադէպ են նաեւ վերջին Արտաշէսեան թագաւորների դրամները, որոնք նշանակալից տարածում չեն ունեցել ոչ արտաքին առեւտրում եւ ոչ էլ Հայաստանի ներսում: Լինելով մեծ մասամբ պղնձից*



Հայաստանի Արտաշէսեան Արտաւազդ Դ-ի դիմաքանդակը դրամի վրայ, դրուագուած 4—6 թուերին: Հրատարակւում է առաջին անգամ: Պահւում է Սանոյեանի հաւաքած դրամների շարքում: Մեծացուած 3 անգամ

պղնձիներն ընդունելութիւն չէին կարող ունենալ օտար շուկաներում, իսկ ներքին, մանր առեւտրում նրանց բնորոշութիւնը պարզելու վկայութիւններ չկան: Յամենայն դէպս ողջ Անդրկովկասում Արտաշէս Բ., Տիգրան Գ., Տիգրան Դ., Արտաւազդ Դ. եւ դրանց յաջորդող վերջին Հայոց թագաւորների դրամներից չեն գտնուել: Ընդհանուր առմամբ եւրոպական, ամերիկեան ու ասիական երկրների դրամագիտական ժողովածուներում Արտաշէսեան տոհմի վերջին արքաներին վերագրուած դրամները ներկայացուած են հատ ու կենտ նմուշներով: Այդ իրողութիւնն ինքնըստինքեան խօսում է նրանց ունեցած աննշան դերի մասին:

Այդուհանդերձ Արտաշատի պեղումները, որոնք արդէն սկսուել են, ամենայն հաւանականութեամբ ի յայտ պիտի բերեն հին հայկական պղնձեայ դրամներ, որոնք շատ կարեւոր են երկրի դրամային տնտեսութեան ներքին առանձնայատկութիւնները պարզելու համար: Ի տարբերութիւն արծաթի, պղինձը միշտ էլ աւելի շատ տեղում է մնում:

Հայաստանում շրջանառութեան մէջ եղել են նաեւ Կապադովկիական դրամներ: Արտաշէսեանների թագաւորութեան տարիներին արտաքին առեւտրի բերումով հայկական քաղաքները թափանցել են Կապադովկիայի Արիոբարզանէս Ա. (95—62) եւ նուազ չափով Արիարաթ Դ. (220—163),

Արխարաթ Ե. (163—130) թագաւորների արծաթեայ դրախմաները: Դրանք բոլորն էլ իրենց միջին կշռային չափով ներկայացնում են 3,82 գրամ արծաթ[31]: Նկատենք, որ Ազուանքի, Իբերիայի ու Կողքիսի շրջաններում կապադովկիական դրամներ չեն յայտնաբերուել:

Արտաշէսեան դրամներից բացի Հայաստանում 2—1ին դարերին լայնօրէն տարածուել էին պարթեւական արծաթեայ դրամները: Միջազգային առեւտուրը դրանց Իրանից ու Միջագետքից բերում էր հայկական շուկաները, ըստ որում շատ աւելի յաճախ Միհրդատ Բ. (123—88), Հրահատ Գ. (70—57), Որոդէս Բ. (57—38) եւ Հրահատ Դ. (38—2) Պարթեւաց թագաւորների դրախմաները: Վերջիններիս հետ նկատւում են նաեւ վաղ պարթեւական դրամներ, բայց խիստ հազուադէպ, հատ ու կենտ նմոյշներով: Սակայն իբրեւ ատտիկեան սիստեմի դրամական միաւորներ, Հայաստանում շրջանառութեան մէջ եղած պարթեւական արծաթեայ դրամները բացառապէս դրախմանոցներ էին, որոնց միջին քաշը պահպանուած օրինակների տուեալներով նշում է մօտ 3,4 գրամ: Հայաստանում պարթեւական տետրադրախմաներ չեն գտնուել եւ ընդհանրապէս դրանք հազուադէպ են:

[31] ՀՊԹ, նո. նո. 17824/55—59, 15108,, 15171, 15193:

Հելլենիստական ժամանակներին բնորոշ Պարթեւաց դրախմաների յայտնութիւնները Մուղանի հարթավայրից Շամախի, Նախճաւանից եւ Օրդուբադից մինչեւ Պարտաւի շրջանները ցոյց են տալիս, որ Հայաստանին մերձաւոր Աղուանքի առեւտրական կենտրոնները նոյնպէս ընդգրկուած են եղել նրանց շրջանառութեան ոլորտի մէջ[32]։ Վրաստանում այդ նոյն պարթեւական ծագման 2—1ին դարերի դրախմաները գտնուել են Կուր գետի վերին հոսանքի աւազանում՝ Թբիլիսի–Մցխեթի գծով մինչեւ Քութայիսի եւ Բոլնիսից մինչեւ Հարաւային Օսեթիայի շրջաններում[33]։ Առանձին դէպքերում նրանք թափանցել են Սեւ ծովի հիւսիսարեւմտեան կողմերը։

Ի տարբերութիւն անդրկովկասեան միւս երկրների, Հայաստանում գտնուել են պարթեւական 2—1ին դարերի պղնձեայ դրամներ։

Տարաբախտաբար այդ դրամները խիստ մաշուած են եւ նրանց կշռային տուեալները լրիւ չեն պահպանուել։ Հաստատագրուած օրինակները մեծ մասամբ խիստ փոքր կշռային չափի դրամներ են, որոնք ի յայտ

---

32 ПМК, I, թիւ 23, 31, II, թիւ 329, 332; III, թիւ 762; V, թիւ 1369, 1377; VI, թիւ 1544; IX, թիւ 2080.

33 ПМК, I, թիւ 40; II, թիւ 328, 337; III; թիւ 761; IV, թիւ 1020—1024, 1040; VII, թիւ 1738, 1742, 1743; VIII, թիւ 1925; IX, թիւ 2082.

են եկել Արթիկի, Ապարանի եւ Աշտարակի շրջաններում[34]: Սակայն քանի դեռ այդպիսիների տարածման օրինաչափութիւնը բացայայտուած չէ Կուր–Արաքսեան միջագետքի ողջ տարածութեան վրայ, հետեւապէս նրանց դերի ու նշանակութեան հարցը մնում է անորոշ: Առաջիկայում հնագիտական պեղումներն Արմաւիրում եւ Արտաշատում կարող են պարզել թէ որքանով անհրաժեշտ են եղել պարթեւական պղնձեայ դրամները Հայաստանի ապրանքա–փոխանակութեան ներքին ոլորտում մ. թ. ա. 1ին դարի վերջերին: Այլապէս դրանք ներկայանում են իբրեւ պատահական, ոչ լիարժէք վկայութիւններ:

Արեւելքի հելլենիստական դրամների շարքում Պարթեւաց դրամները ճանաչելի էին անմիջապէս իրենց ինքնատիպ պատկերագրութեամբ: Պարթեւ արքաները մօրուքաւոր էին, իսկ նրանց տիտղոսների ընդարձակ գրութիւնները տարբերւում էին ինչպէս սելեւկեան ու արտաշէսեան, այնպէս էլ կապադովկիական ու Հռոմի հանրապետական դրամներից: Դրանք բոլորն էլ շրջանառութեան մէջ Հայաստանում հանդէս էին գալիս միասին եւ յայտնի էին վաճառաշահ քաղաքների բնակիչներին:

Յիշատակուած հելլենիստական դրամ–

[34] ՀԴԹ, նո. նո. 4799—4808:

ներից բացի դրամական շրջանառութիւնը Հայաստանում Արտաշէսեանների հզօրութեան տարիներին, մանաւորապէս Տիգրան Մեծի եւ նրա անմիջական յաջորդների օրօք, զարգանում էր նաեւ հռոմէական դրամներով։ Հելլենիստական դարաշրջանի վերջերին հռոմէական դրամները ընդունուած էին Փոքր Ասիայի եւ Առաջաւոր Արեւելքի առեւտրական գործարքներում։ Ունենալով չափերի ու կշիռների սեփական համակարգ, հանրապետական Հռոմը մ. թ. ա. 2—1ին դարերին ողողել էր միջազգային շուկան զանգուածաբար թողարկուող իր արծաթեայ դրամներով։ Ոսկէ դրամներ Հռոմի հանրապետութիւնը գրեթէ չէր դրուագում։ Հռոմի հանրապետութեան առանձին զօրավարների անուններից մ. թ. ա. 1ին դարի երկրորդ կէսին միայն թողարկուեցին ոսկեայ դրամներ, որոնք սակայն խիստ հազուադէպ էին։ Պատահական չէ, որ ոչ Հայաստանում եւ ոչ էլ հարեւան երկրներում Հռոմի հանրապետական ոսկեայ դրամներ չեն գտնուել։ Բացառուած է նաեւ Հայաստանում հռոմէական այդ շրջանի պղնձեայ դրամների շրջանառութիւնը, եթէ նկատի ունենանք, որ պղնձեայ դրամական միաւորները թողարկւում էին զուտ տեղական կարիքների համար եւ ներքին շուկայի ոլորտից դուրս չէին անցնում։ Հանրապետական Հռոմի պղնձեայ

դրամների բացակայութիւնը Անդրկովկասում հաստատում է այդ իրողութիւնը[35]:

Հիմնական միաւորը հանդիսանում էր Հռոմի արծաթեայ դրամը, որը կոչւում էր Դենար = DENARIVS, սերուած լատիներէն deni = տասնեակ կամ տասնաւոր բառից[36]: Հայաստանում գտնուած Հռոմի հանրապետական դենարների միջին քաշը նշւում է 3,86—40,0 գրամ արծաթ[37]: Սակայն հնամեայ ատտիկեան դրախման էլ 2—1ին դարերում ներկայանում էր առեւտրում 4,04 գրամ արծաթի չափով[38]: Այդպիսով միջազգային շրջանառութեան մէջ ատտիկեան դրախմայի ու հռոմէական դենարի միջեւ ստեղծուել էր գրեթէ ամբողջական հաւասարակշռութիւն. մէկ ատտիկեան դրախման փոխանակւում էր մէկ հռոմէական դենարով: Յայտնաբերումները ցոյց են տալիս, որ հայկական շուկաներում տարածուած են եղել առաւելապէս մ. թ. ա. 1ին դարի

---

[35] E. Sydenham, p. 167—213. The coinage of the Roman Republic, London, 1952.

[36] Հ. Աճառեան, Հայերէն արմատական բառարան, հատոր Բ, Երեւան, 1926, էջ 338:

[37] Խ. Ա. Մուշեղեան, Հայաստանի դրամական գանձերը, հատոր 1ին, Երեւան, 1973, էջ 49:

[38] Fr. Schrötter, s. 160, Wörterbuch der Münzkunde, Berlin, 1930.



Հայոց Արտաշէսեան թագը, պատկերուած մ. թ. ա. Ա. դարի հռոմէական դրամի վրայ: Մեծացուած 3 անգամ

*80—30ական թուերի հռոմէական դենարները: Աւելի վաղ ժամանակների վերաբերեալ վկայութիւններ չկան:*

*Այդ նոյն վիճակը դիտւում է նաեւ Վրաստանի*[39] *եւ Աղուանքի*[40] *տարածութեան վրայ ինչպէս նաեւ Աբխազիայի, Կերչի, Կրասնոդարի կողմերը*[41]*: Սակայն դրամա-*

---

39 ПМК, I, *թիւ* 29; IV, *թիւ* 1022; V, *թիւ* 1761.

40 ПМК, VI, *թիւ* 1548; IX, *թիւ* 2080, *թիւ* 2081.

41 ПМК, II, *թիւ* 339; V, *թիւ* 1351; VII, *թիւ* 1736; VIII, *թիւ* 1915—1916.

դիւտերի տուեալներով Հայաստանում Հռոմի հանրապետական դենարների տարածումը նկատւում է շատ աւելի առատ քան Աղուանքում կամ Վրաստանում: Բաւական է նշել, որ միայն Սառնակունքի գանձի կազմից յայտնուել են 113 տարբեր պատկերներով եւ 80 տարբեր պաշտօնական անձնանունների յիշատակութեամբ արծաթեայ դրամներ: Դրանց մէջ առկայ են Մ. Անտոնիոսի, Յուլիոս Կեսարի, Տիտոս Կարիսիոսի, Մ. Բարբատիոսի, Պ. Կլոդիոսի, Գ. Կոնսիդիոս Պետոսի, Վիբիոս Պանսայի, Հոստիլիոս Սասեռնայի, Լ. Ռեգուլոսի եւ շատ այլոց դենարները, որոնք դրուագուել են ինչպէս բուն Հռոմում, այնպէս էլ նրա տիրակալութեան առանձին երկրներում: Հայկական քաղաքներում տարածուած Հռոմի հանրապետութեան դենարները թողարկուել են քաղաքամայր Հռոմում: Դրանց հետ Հայաստան են հասել նաեւ արծաթեայ հռոմէական դրամներ, որոնք ծագել են Գալլիայում, Իտալիայում, Սիկիլիայում, Աֆրիկայում, Յունաստանում, Փոքր Ասիայում եւ Միջերկրականի հարաւ-արեւելեան ափերին: Հռոմի հանրապետական դրամների տարածմամբ ուրուագծւում է միջազգային առեւտրի այն ոլորտը, որի մէջ ընդգրկուած է եղել Հայաստանը Հելլենիզմի մայրամուտին: Ժամանակագրական առումով հռոմէական դրամներով հայոց շուկաների լիցքաւորումը

առաւել նշանակալից էր դարձել Լուկուլ-լոսի, ինչպէս նաեւ Պոմպէոսի ու Մարկոս Անտոնիոսի դէպի Հայաստան կատարած ար-շաւանքների տարիներին :

Ապրանքա—փոխանակութեան գործարք-ներում հանրապետական Հռոմի դրամները հաւասարապէս ընդունելի էին հելլենիստա-կան դրամների հետ : Վերջիններս քանակա-պէս զիջում էին իրենց երբեմնի ունեցած գերիշխան դերը հռոմէական արծաթի ամեն-ուրեք թափանցող թարմ հոսանքին :

Ի տարբերութիւն հելլենիստական դրամ-ների, որոնց վրայ միշտ որպէս կանոն մի կողմից դրոշմում էին իշխող միապետի դիմանկարը, իսկ միւսին՝ դիցաբանական կամ տոհմային խորհրդանշան, Հռոմի հան-րապետական դենարները իրենց պատկերա-գրութեամբ բազմատեսակ էին : Այդ բազ-մատեսակութիւնը հետեւանք էր դրամագոր-ծութեան մէջ իշխող կարգից : Իւրաքանչիւր տարի Հռոմում փոխում էին ֆինանսական կառավարիչները, որոնք թողարկուելիք դրամների համար ընտրում էին բոլորովին նոր պատկերներ եւ գրութիւններ, տար-բերուող շրջանառութեան մէջ եղած նախորդ-տեսակներից[42] : Պատկերների չահագրական

---

[42] А. Н. Зограф, Античные монеты, Москва-Ленинград, 1957, стр. 68. Материалы и исследования по археологии СССР. Թիւ 11.

ընտրութեան մէջ Հռոմի հանրապետական կառավարիչները տուրք էին տալիս իրենց նախնիների փառաբանութեանը, հեթանոսական առանձին կուռքերի երկրպագութեան կամ պետութեանը մատուցած ծառայութիւնների յաւերժացման նպատակով: Հանրապետութեան անկման շրջանում, արտակարգ լիազօրութիւններով օժտուած զօրավարները թողարկել էին տալիս դրամներ իրենց իսկ դիմաքանդակների դրոշմով: Հայաստանում շրջանառութեան մէջ եղած Հռոմի հանրապետական դենարների պատկերային զանազանութիւններն իբրեւ անմիջական վկայութիւններ արտացոլուած են Սառնակունք գիւղում գտնուած գանձում: Նրանում առկայ են հռոմէական դենարներ, որոնց վրայ պատկերուած են հեթանոսական տարբեր աստուածների կարծեցեալ կերպարները եւ դենարներ, որոնց դրոշմով ներկայացուած են հանրապետական Հռոմի երեւելի զօրավարների ու պետական գործիչների դիմանկարները, ինչպէս նաեւ ռազմաքաղաքական կարեւոր դէպքերը յիշատակող տեսարաններ եւ յուշարձաններ: Աղբիւրագիտական առումով հանրապետական դրամները կարեւոր տեղեկութիւններ են հաղորդում Հռոմի հետ առնչուած երկրների քաղաքական պատմութեան հարցերին:

Այդ խմբի դրամներով աւարտւում է հելլենիստական դարաշրջանին բնորոշ Հայաստանի դրամական շրջանառութեան պատ-

մութիւնը: Այնուհետեւ սկսւում է զարգացման մի նոր շրջան, երբ ապրանքա-դրամական յարաբերութիւնների մէջ բացարձակ գերիշխանութիւն են ձեռք բերում կայսերական Հռոմի դրամները, որոնք կշռային համակարգի եւ Հայաստանի վերաբերեալ տուեալներին կ'անդրադառնանք առանձին շարադրանքով: Սակայն մինչ այդ անհրաժեշտ է յիշատակել նաեւ փոքրասիական ծագման դրամական սիստեմի մասին, որը գիտւում է Հայաստանում հելլենիստական եւ Հռոմի հանրապետական դրամների շրջանառութեան պրոցեսում: Այդ սիստեմը ներկայանում է մեր առաջ Հայաստան թափանցած այսպէս կոչուած «Կիստոֆորներով»: Դրանք խոշոր արծաթեայ դրամներ էին $11^{1}/_{2}$—$12^{3}/_{4}$ դրամ քաշով, թողարկուած մ. թ. ա. 2—1ին դարերում հռոմէական հպատակութեանը ենթակայ քաղաքներում, մասնաւորապէս Պերգամոնում, Եփեսոսում, Ապամէայում, Ապոլլոնիում եւ այլուր: Շրջանառութեան մէջ մէկ կիստոֆորը փոխանակւում էր երեք ատտիկեան դրախմայով կամ երեք հռոմէական դենարով: Նրանց տեսքը միանգամայն տարբերւում էր ինչպէս հելլենիստական, այնպէս էլ հռոմէական դրամներից: Միշտ, որպէս համընդհանուր խորհրդանշան, կիստոֆորների վրայ պատկերւում էր ծաղիկներից ու պտուղներից հիւսուած պսակը իսկ կենտրոնում կիսաբաց կափարիչով տուփ:

Վերջինիս միջից դալարուելով դուրս էր սողոսկում մի օձ: Այդ դրամների հակառակ կողմերին դրոշմուած էին դէպի վեր ձգուած երկու օձերի պատկերները եւ նրանց միջեւ զարդանշաններ: Ծաղկեպսակը խորհուրդ էր Դիոնիսի պաշտամունքին:

Խորհրդաւոր կողովի (cista) իմաստից էլ արծաթեայ փոքրասիական այդ թեթեւ քաշի տետրադրախմաները ստացել էին cistophorus — կիստոֆոր անուանումը: Նրանց թողարկմամբ հռոմէական Ասիայի ինքնավար քաղաքները միաւորուած էին մէկ ընդհանուր լիգայի մէջ, որը գլխաւորում էր Պերգամոնը: Հայաստանում գտնուած կիստոֆորները բոլորն էլ թողարկուել են Պերգամոնում եւ Եփեսոսում: Դրանցով եւ փոքրասիական թողարկման հռոմէական դենարներով դիտւում է այն կապը, որ եղել է Հայաստանի եւ Փոքր Ասիայի միջեւ միջազգային առեւտրում:

## ԳԼՈՒԽ Գ.

# ԴՐԱՄԱԿԱՆ ՇՐՋԱՆԱՌՈՒԹԻՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ Ա.—Բ. ԴԱՐԵՐՈՒՄ

*Քաղաքական այն փոփոխութիւնները, որոնք կատարուել էին հելլենիստական դարաշրջանի վերջերին, այնպիսի խոշոր երեւոյթներ, որպիսիք հանդիսացան Արեւելքում՝ Սելեւկեանների ու Արտաշէսեանների կործանումը, Արեւմուտքում՝ հռոմէական հանրապետութեան վերացումը եւ նրա վերասերումը կայսրութեան, դրամական շրջանառութեան մէջ արտայայտուեցին շատ մեծ ուշացումով: Դրամական գանձերը վկայում են որ մ. թ. 1ին դարում, երբ վաղուց արդէն չկային հելլենիստական պետութիւններ, նրանց դրամները սակայն շրջանառութեան մէջ էին:*

*Այսպէս օրինակ. Քութայիսի մօտ, Ներկայիս Ցխակայա շրջանի Նաղոդելաւա գիւղում գտնուած գանձում մենք տեսնում ենք Հռոմի հանրապետական դենարներ մ. թ. ա. 1ին դարից 23 հատ*

Կապադովկիայի Արքելայոս (34—17) թագավորի դրախման 1 հատ

Օգոստոս Օկտավիանոսի մ. թ. ա. 2— մ. թ. 11 թուի դենարներից 2 հատ

Պարզորոշ է, որ գանձը իր յիշեալ կազմի գերակշռող մասով վերաբերում է նախակայսերական շրջանին եւ եթէ նրա մէջ անցել են Օգոստոս Օկտավիանոսի (2—11 թուերի) կայսերական դրամներից եզակի նմուշներ, ապա դրանք չեն կարող փոխել դրամագլխի բնորոշութիւնն իր ժամանակաշրջանի համար[1]: Այլ կերպ ասած մ. թ. 1ին դարի սկզբին շրջանառութեան մէջ եղել են անցեալից մնացած մ. թ. ա. 1ին դարի դրամները:

Բացի դրանից, Հին Հայաստանի մայրաքաղաք Տիգրանակերտից հարաւ, վաճառաշահ Մծբինի աւերակների շրջակայքում, այժմեան Կամիշլի կոչուող վայրում, 1966—1967 թուերին գտնուել են դրամական գանձեր, որոնց մէջ մ. թ. ա. 3—1ին դարերի հելլենիստական դրամների հետ

---

[1] Е. А. Пахомов, Монетные клады Азербайджана и Закавказья. I, Баку, 1926, № 29; А. Н. Зограф, Распостренение находок античных манет на Кавказе. Труды отдела нумизматики, Гос. Эрмитажа, I, Ленинград, 1945, № 118.

եղել են արդէն մ. թ. 2րդ դարի եւ անգամ 3րդ դարի սկզբի Հռոմէական դրամներ[2]: Հելլենիստական դրամներն այդ գանձերում ներկայացուած են սելեւկեան եւ Արտաշէսեան Տիգրան Մեծի (95—56) եւ Տիգրան Դ·ի (8—5) դրամներով, որոնց առկայութիւնը Հռոմի կայսերական 1—2րդ դարերի դրամների հետ վկայում են, որ դրանք միասին են սպասարկել ապրանքափոխանակութեան պահանջները: Հետեւապէս մեր դարաշրջանի սկզբին, չնայած Արտաշէսեանների պետութիւնը կործանուել էր, բայց նրանց դրամների շրջանառութիւնը չէր վերացել, ճիշտ այնպես ինչպէս չէր վերացել ընդհանրապէս հելլենիստական դրամների շրջանառութիւնը Հայաստանի ներքին ու արտաքին առեւտրի ոլորտում: Հայաստանում արտաշէսեան դրամների շրջանառութիւնը շատ աւելի երկար է տեւել, քան Արտաշէսեան տոհմի թագաւորութիւնը երկրի քաղաքական կեանքում: Եւ այդ իրողութիւնը պատահականութիւն չէ, այլ դրամական շրջանառութեան զարգացման օրինաչափութեան արտայայտութիւնը: Միշտ որպէս կանոն շրջանառութեան մէջ նոր դրամ-

[2] Paul Z. Bedoukian, Five hoards containing coins of the Artaxiads of Armenia. Revue des Etudes Arméniennes, nouvelle série, t. V, Paris 1968, p. 421—433.

ների հետ հին դրամներ էին ընդունում: Նոր թողարկման դրամները նախապէս կարող էին հանդէս գալ աննշան քանակութեամբ եւ անցեալից մնացած դրամային միաւորների հոծ զանգուածի մէջ լինում էին յաճախ աննկատ, բայց իրենց թարմ հատանքով աստիճանաբար դառնում էին նշանակալից եւ այնուհետեւ տիրապետող: Արտաշէսեանների անկման տարիներից դրամական շրջանառութիւնը Հայաստանում թեւակոխել էր իր զարգացման նոր փուլը, որը բնորոշւում է հելլենիստական ու Հռոմի հանրապետական դրամների սպառմամբ եւ միաժամանակ հռոմէական կայսրութեան դրամների տարածմամբ: Հռոմի հանրապետական եւ հելլենիստական (սելեւկեան, պարթեւական, արտաշէսեան եւ այլն) դրամների սպառումը կատարւում էր տեւական, խիստ դանդաղ ընթացքով: Մինչդեռ կայսերական դրամներով շրջանառութեան լիցքաւորումը ընթանում էր արագօրէն: Հռոմի կայսերական դրամները 1·ին դարի 20ական թուականներից մ. թ. ա. թափանցելով առեւտրի հայկական շուկաները արդէն Արշակունեաց թագաւորութեան հաստատման տարիներին եւ մանաւանդ հետագայում մինչեւ 3րդ դարի առաջին քառորդը, լայնօրէն տարածուել ու տիրապետող էին դարձել: Հռոմէական դրամա-հաշուային դրութիւնը կայսրութեան ծաղման տարինե-

րին չէր փոխուել։ Եւրոպական եւ ասիական երկրներում Հռոմի փողերանոցներն ապրանքա–փոխանակութեան համար թողարկում էին ոսկեայ, արծաթեայ ու պղնձեայ դրամային միաւորներ, ըստ որում ի տարբերութիւն հանրապետական ժամանակների, կայսրութիւնը ոսկեայ դրամներ թողարկում էր առաւել կանոնաւոր։ Ոսկու գծով հիմնական միաւորը կոչւում էր Աւրէուս (AUREUS NUMMUS), սահմանուած 8,19 դրամ քաշով։ Հռոմէական մէկ ֆունտ ոսկուց (327,45 դրամ) հատում էին 40 ոսկեայ դրամներ՝ Աւրէուսներ։ Սակայն միջազգային առեւտրում հիմնական միաւորը մնում էր, ինչպէս անցեալում, հռոմէական արծաթ դրամը, որը կոչւում էր դենար (DENARIUS) = «տասանոց», սերուած լատիներէն deni = «տասնեակ» բառից[3]։

Ինչպէս հանրապետութեան, այնպէս էլ վաղկայսրութեան շրջանում հռոմէական դենարն իր կշռային չափով ներկայացնում էր 3,90 դրամ բարձրորակ արծաթ, կազմելով հռոմէական ֆունտի 1/84 մասը։ Հռոմէական մէկ ոսկեայ դրամը (Աւրէուսը) փոխանակւում էր 25 արծաթ դրամով (դենարով)։

---

[3] Հ. Աճառեան, Արմատական բառարան, հատոր Բ, Երեւան, 1926, էջ 504—505։

*Ոսկու եւ արծաթի փոխյարաբերութիւնը կայսրութեան վաղ շրջանում դիտւում է* 1 : 11,9 *չափով: Ներքին շուկայի մանր առուծախի համար թողարկւում էին պղնձի եւ արոյրի խառնուրդով դրամներ, այսպէս կոչուած սեստերցիաներ, որոնց միաւորի քաշը սահմանուած էր մէկ ունկի* (UNCIA)՝ 27,30 *գրամ: Վերջինիս կէս մասը* (13,65 *գրամ*) *կազմող պղնձեայ դրամը յայտնի էր Դուպոնդիուս* (DUPONDIUS) *անունով: Արծաթի եւ պղնձի փոխանակութիւնը որոշ տատանումներով դիտւում էր* 1 : 45 *յարաբերութեամբ*[4]:

Հռոմի կայսերական դրամների անուա-
նումները

| Ոսկի | Արծաթ | Արոյր | Պղինձ կամ անագապղինձ |
|---|---|---|---|
| *Աւրէուս* Aureus | *Դենարիուս* Denarius | *Սեստեր* Sestertius | *Աս* As |
| *Քուինա-րիուս* Quinarius | *Քուինա-րիուս* Quinarius | *Դուպոն-դիուս* Dupondius | *Սեմիս* Semis |
| | | | *Քուադրանս* Quadrans |

[4] А. Н. Зограф, Античные манеты, М-Л, 1951, Материалы и исследования по археологии СССР, № 16, стр. 53—54.

## Հռոմի կայսերական դրամների հաշուային համակարգը [5]

| Միաւորը | Ոսկի Քուինա-րիուս | Արծաթ Դենա-րիուս | Արծաթ Քուի-նարիուս | Արոյր Սեստեր | Արոյր Դու-պոնդիուս | Պղինձ Աս | Պղինձ սեմիս | Պղինձ Քուա-դրանս |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| | Յարաբերակցութիւնը | | | | | | | |
| *Աւրէուս* | 2 | 25 | 50 | 100 | 200 | 400 | 800 | 1600 |
| *Ոսկի Քուինարիուս* | 1 | $12^1/_2$ | 25 | 50 | 100 | 200 | 400 | 800 |
| *Դենարիուս* | — | 1 | 2 | 4 | 8 | 16 | 32 | 64 |
| *Քուինարիուս (արծաթ)* | — | — | 1 | 2 | 4 | 8 | 16 | 32 |
| *Սեստերցիուս* | — | — | — | 1 | 2 | 4 | 8 | 16 |
| *Դուպոնդիուս* | — | — | — | — | 1 | 2 | 4 | 8 |
| *Աս* | — | — | — | — | — | 1 | 2 | 4 |
| *Սեմիս* | — | — | — | — | — | — | 1 | 2 |
| *Քուադրանս* | — | — | — | — | — | — | — | 1 |

---

[5] Harold Mattingly, M. A. Coins of the Roman Empire in the British Museum, vol. I, p. 1. — *Այս աշխատութեան յաջորդական յիշատակութիւնը տրւում է համառօտագրուած՝* Mattingly *անուան ձեւով:*

Հիմք ընդունելով այս սկզբունքները եւ ելնելով դրամագիւտերի արձանագրուած տուեալներից, փորձենք տեսնել թէ ինչպիսի՞ հռոմէական դրամներ էին մտել Հայաստանում շրջանառութեան մէջ 1—2րդ դարերում: Այսինքն բացի այն հելլենիստական եւ Հռոմի հանրապետական դրամներից, որոնք բնորոշ էին երկրի դրամական տնտեսութիւնը Արտաշէսեանների օրօք, ի՞նչ նոր դրամներ էին թափանցել հայկական քաղաքներն Արտաշէսեանների անկումից յետոյ մինչ Արեւելքում կը դադարէր պարթեւական դրամների թողարկումը եւ հանդէս կը գային սասանեան դրամները: Աւելի քան երկու հարիւրամեակ ընդգրկող այդ շրջանը ըստ էութեան Հռոմի կայսերական դրամների տարածման ամենածաւալուն ժամանակաշրջանն է եղել: Այն եղել է միաժամանակ Հայաստանում պարթեւական դրամների նուազման եւ այնուհետեւ 3րդ դարի կէսից նրանց անվերադարձ չքացման շրջանը:

Եթէ հաշուի առնենք կայսրութեան դրամների տարածումն ըստ մետաղների, ապա կարելի է նշել, որ Հայաստանում հռոմէական ոսկեայ դրամները խիստ հազուադիւտ են: Իբրեւ արտակարգ վկայութիւններ յիշատակուած են Տիբերիոս (14—37) եւ Հոնորիոս (395—423) կայսրների ոսկեայ դրամների եզակի յայտնութիւնները մէկը Գառնիում, իսկ միւսը Արաքսի ափին,

*Նախճաւանի մօտ*[6]*։ Տեսականօրէն բացառուած չէ հռոմէական ոսկու թափանցումը Մեծ Հայքի հարաւ–արեւմտեան գաւառները, որոնք կապուած էին Միջագետքի ու Փոքր Ասիայի տարանցիկ առեւտրի հետ։ Սակայն իրականում ստոյգ տեղեկութիւններ այդ մասին չունենք եւ դատել թէ որքանով նրանք նշանակալից են եղել Արաքսի վերին հոսանքի, ինչպէս նաեւ Եփրատի ու Տիգրիսի հայկական շրջաններում, ներկայումս չենք կարող։ Անդրկովկասում հռոմէական ոսկեայ դրամները գտնուել են առաւելապէս Վրաստանի ծովամերձ շրջաններում*[7] *եւ Մցխեթի աւերակներում*[8]*։ Հռոմէական ոսկին Վրաստանում նշւում է շուրջ* 400 *տարուայ տեւողութեամբ, իր գրեթէ անընդմիջող հոսանքով, Աւգոստոս Օկտաւիանոսից մինչեւ Թէոդոսիոս առաջինի* (379—395*ի*) *կայսրութեան ժամանակները։ Աղուանքի տարածու–*

---

[6] *Հայաստանի պատմութեան պետական թանգարան, ուր է դրամ, գտնուած* 1973 *թուին Աբովեանի շրջանի Գառնի գիւղում։ Հետագայ յիշատակութիւնները տրւում է համառօտագրուած՝ ՀՊԹ տառերով = Հայաստանի Պատմութեան պետական թանգարան։* — Е. А. Пахомов, Монетные клады Азербайджана и других республик и краев Кавказа, Баку, 1938, вып. II, № 354. — *Այս աշխատութեան յաջորդական յիշատակութիւնը տրւում է* ПМК. *տառերով։*

[7] ПМК, II, № 344; IV, № 1049, 1051.

[8] ПМК I, № 32; IV, № 1040—1042, 1050; V, № 1413, 1414, 1426, 1431; VII, № 1738, 1756.

թեան վրայ նոյնպէս, ինչպէս Հայաստանում, հազուագիւտ են հռոմէական ոսկեայ դրամները: Հաղորդուել է միայն, որ Գանձակի՝ այժմեան Կիրովաբադի շրջանում, Ենդիքէնդ գիւղում, ուր 1896 թուին պատահականօրէն բացուած ուշհռոմէական պնակի, երկաթէ զրահի ու այլ առարկաների հետ եղել է նաեւ ոսկեայ դրամ[9]: Ուրիշ գիւտեր յայտնի չեն: Այդու հանդերձ, մնում է որոշակի այն իրողութիւնը, որ Կուրի միջին հոսանքից մինչեւ Կասպից ծով, ողջ Անդրկովկասի արեւելեան մասում, հռոմէական ոսկեայ դրամները հազուադէպ են: Բոլորովին այլ պատկեր է ուրուագծւում մեր առաջ արծաթեայ դրամների յայտնաբերման տուեալներով: Դրանք ցոյց են տալիս, որ կայսերական արծաթեայ դրամները Հայաստանում լայնօրէն տարածուած են եղել եւ նրանց թափանցումն առեւտրի հայկական ոլորտը դիտւում է նախ եւ առաջ հռոմէական դրամային դրութի հիմնական միաւորներով՝ դենարներով: Հռոմի կայսերական արծաթ դրամների շրջանառութիւնը Հայաստանում սկսուել էր դեռեւս վերջին Արտաշէսեանների օրօք, Աւգուստոս Օկտաւիանոսի մ. թ. ա. 1-ին դարի 20ական թուերի դենարներով: Այդպիսիների առկայութեամբ նշւում է այն նոր լիցքաւորումը, որ կատարուել էր Հայաստանի դրամական տնտեսու-

[9] ПМК, I, № 47.

թեան մէջ Հելլենիստական դարաշրջանի մայրամուտին: Դրանք իրենց շրջանառութեան ոլորտի մէջ էին առել ոչ միայն Հայաստանը, այլ եւ հարեւան երկրները, թէ Փոքր Ասիայի ու Միջագետքի եւ թէ Կովկասի կողմից: Հանդիսանալով կայսրութեան անդրանիկ թողարկման դրամները Աւգոստոս Օկտաւիանոսի դենարները անմիջական վկայութիւններ են ոչ միայն իրենց այն քանակութեամբ, որ գտնուել են Հայկական ՍՍՀ տարածութեան վրայ, իբրեւ տարկայական ապացոյցներ երկրի դրամական շրջանառութեան վերաբերեալ, այլ եւ այն իրողութեամբ, որ նրանցից որոշ օրինակներ թողարկուել են յատկապէս կայսերական զօրքերի դէպի Հայաստան կատարած արշաւանքների ու նուաճումների առթիւ: Ի մի բերելով ինչպէս Հայաստանում գտնուածների, այնպէս էլ Հայաստանի նուաճման համար թողարկուած Աւգոստոս Օկտաւիանոսի դենարներից պահպանուած նմուշները, կարելի է նրանց խմբաւորել իրար յաջորդող ժամանակագրական տուեալներով: Դրանց վաղագոյն օրինակները թողարկուել են Արեւելքում եւ վերաբերում են մ. թ. ա. 29—27 թուերին[10]: Իրենց պատկերատիպերով ար–

---

[10] «Արեւելք» ընդհանուր հասկացողութեան տակ հռոմէական դրամների դասակարգման գործում հասկացւում է Մերձաւոր Արեւելքի երկրները, առաւելապէս Ասորիք, Միջագետքը, Հայաստանը եւ շրջապատի երկրները:

ծաւթեայ այդ դրամները դեռեւս չէին հեռացել հանրապետական դենարների ձեւաւորման բնորոշութիւնից եւ Հայաստանում շատ տարածուած չեն եղել, ըստ որում յայտնաբերման հետքերը տանում են մեզ դէպի Վանայ լճի եւ Արշակաւանի շրջակայքը։ Անդրկովկասում նոյնպէս մ. թ. ա. 29—27 թուերի հռոմէական դենարները հազուադէպ են։ Յաջորդ տասնամեակում շրջանառութեան մէջ մտնում են Աւգոստոս Օկտաւիանոսի անունից Հայաստանի նուաճման առթիւ թողարկուած կայսերական դրամները։ Այդ տարիներին կայսրութեան զօրաբանակները գրաւել էին Արտաշատը, տեղաբաշխուած էին Հայաստանի տնտեսական ու քաղաքական կենտրոններում։ Աւելին, թողարկուած լինելով մ. թ. ա. 20—18 թուերին Արեւելքում, բացառուած չէ, որ որոշ քանակութեամբ այդպիսի չքադրամներ դրուագուել են Հայաստանում, ուր մինչ այդ Արտաշէսեանների օրօք գործող փողերանոցներն անցել էին հռոմէական իշխանութիւնների ձեռքը։ Նկատենք, որ կայսերական այդ չքադրամները նոյնպէս իրենց պատկերատիպերով շարունակում էին պահպանել ձեւաւորման հանրապետական աւանդութիւնը եւ եթէ նրանց վրայ չլինէին կայսրների դիմաքանդակների դրոշմները, ապա հազիւ թէ տարբերուէին հանրապետական դենարներից։ Հայաստանը պատկերւում էր իբրեւ գետնին խոնար-

հռող ցուլ կամ ծնրադիր զինուոր։ Երբեմն ցոյց էր տրւում հայոց թագը, զերուած զինանշաններով, ըստ որում միշտ ARMENIA CAPTA կամ ARMENIA RECEPTA մակագրութիւններով։ Նոյն դրամների վրայ Հռոմը պատկերւում էր մերթ Յաղթանակի, մերթ Աստուածեան կամ Արիութեան դիցուհիների կերպարներով, որ այնքան յայտնի էին հանրապետական դրամներով։ Այդ հռոմէական դրամների պատկերագրութեանը մենք կ՚անդրադառնանք առանձին։ Սակայն դրանք եւս չրջանառութեան մէջ վաղանցուկ են եղել եւ էական դեր ու նշանակութիւն չեն ունեցել։ Յամենայն դէպս Հայկական ՍՍՀ տարածութեան վրայ եւ նրան հարեւան անդրկովկասեան երկրամասերի հնագիտական պեղումների, ինչպէս նաեւ պատահական յայտնաբերուած նիւթերի չարքում նմանօրինակ հռոմէական չքադրամներ չեն երեւացել, եթէ դատելու լինենք պաշտօնապէս արձանագրուած տուեալներից։ Հայաստանի համար կայսերական դրամների առաւելութիւնը գիտւում է նախ եւ առաջ Աւգոստոս Օկտաւիանոսի այն դենարներով, որոնք թողարկուել են իրեն Օկտաւիանոսի եւ նրա երկու որդեգիրների Գայիոսի ու Լուկիոսի պատկերներով, դրուագուած մ. թ. ա. 2 թուից սկսած [11]։ Առանձին օրինակներով դրանք ի

11 Mattingly, I, p. 89—90, № 519—534, pl. 13—14.

յայտ են եկել Երերունի եւ Գառնի ամրոցներում, Զուարթնոցի, Արտաշատի եւ Դուինի աւերակներում, Արթիկում, Կոչում, Իջեւանում, Ապարանում, Սեւանի աւազանում եւ այլուր: Հայկական ՍՍՀ տարածութեան վրայ պարզապէս հազիւ թէ բացառուի մի շրջան, ուր Լուկիոսի եւ Գայիոսի կերպարներով Ոկտաւիանոսեան արծաթ դրամներից գտնուած չլինեն[12]: Նոյն վիճակը դիտուում է Վրաստանի[13] եւ Աղուանքի[14] վերաբերեալ: Աւելին, այդ դենարները լայն տարածում են ունեցել նաեւ կենտրոնական Եւրոպայում, Մերձաւոր Արեւելքում ու Հնդկաստանում: Ուսումնասիրութիւնները ցոյց են տալիս, որ Հռոմի վաղ կայսերական շրջանի հէնց այդ արծաթեայ դրամները թողարկուել են գլխաւորապէս արտաքին առեւտրի պահանջներից ելնելով[15]: Հայաստա-

[12] ՀՊԹ նո. նո. 8997, 12683, 13962, 14161, 14529, 14544, 15616, 17700, 17785, 17962, 22290—22295:

[13] ПМК, I, №№ 29, 33—37; II, 339; 341, 345; III, №№ 768, 773; IV, №№ 1033—1035, 1037, 1038, 1040, 1057; V, №№ 1389, 1395—1397, 1400, 1401; VII, №№ 1733—1735, 1738; VIII, № 1918.

[14] ПМК, II, № 342; IV, № 1039; VI, № 1549; VII, № 1737.

[15] К. В. Голенко, Денежное обращение Колхиды в римское время, Ленинград, 1964, 44; 42—43.

նում գտնուածները իրենց պատկերատիպերով բաղդատում են Գալլիայում թողարկուածների հետ եւ վերագրում են մ. թ. ա. 2—մ. թ. 11 թուերին: Սակայն նրանց գանձային տարածումը Անդրկովկասում ստիպում է ենթադրել, որ այդպիսիները կարող էին թողարկուել նաեւ Մերձաւոր Արեւելքում, ըստ որում ոչ միայն Աւգոստոս Օկտաւիանոսի կայսրութեան տարիներին, այլեւ նրա յաջորդների օրօք: Հայկական քաղաքները, դրանք թափանցել են միջազգային առեւտրի այն ուղիներով, որոնցով շրջանառութեան մէջ էին մտել անցեալում հելլենիստական եւ Հռոմի հանրապետական արծաթեայ դրամները. Ասորիքից ու Միջագետքից, Եփրատի ու Տիգրիսի վրայով ապրանքափոխանակութիւնը բերել է նրանց Արաքսի հովիտը եւ այնուհետեւ Կուրի աւազանով մղել դէպի Աղուանք ու Վրաստան: Աւգոստոս Օկտաւիանոսի պատկերով վաղկայսերական այդ դրամներն իրենց արծաթի պարունակութեան բարձր որակով Միջազգային շուկայում ընդհանուր վստահութիւն էին շահել եւ երկար ժամանակ ճանաչուել են իբրեւ արծաթի ամենակայուն քաշի դրամական միաւոր: Առեւտրական գործարքներում լինելով ամենուրեք ընդունուած, պատահական չէ, որ ինչպէս կենտրոնական

Եւրոպայում, այնպէս էլ Հնդկաստանում եւ Անդրկովկասում հանդէս եկան այդ դրամական միաւորների ընդօրինակութեամբ տեղական կերտուածքի արծաթեայ դրամներ, որոնք երկար ժամանակ սպասարկում էին ներքին շուկայի պահանջները[16]:

Անդրկովկասում կայսերական դրամների ընդօրինակութեամբ տեղական կերտուածքի արծաթ դրամներ թողարկուել են Իբերիայում կամ Կողքիսի հիւսիս-արեւելեան շրջաններում[17]: Ոկտաւիանոսեան արծաթեայ դրամների (յատկապէս Գայիոսի եւ Լուկիոսի պատկերներով) Կովկասեան ընդօրինակութիւններն ակնյայտ են իրենց անմշակ տեսքով, ըստ որում ընդօրինակուած պատկերներն ու գրութիւններն այնքան են սխեմատիկ եւ հեռացուած բուն հռոմէականներից, որ յաճախ դժուար է նրանց համեմատութեան մէջ դնել:

---

16 А. Н. Зограф, Распростронение находок античных монет на Кавказе. Труды отдела нумизматики государственного. Эрмитажа, том I, Ленинград, 1945, стр. 29—85.

Այսուհետեւ այն աշխատութիւնը յիշատակւում է ЗК տառերով:

17 Д. Г. Капанадзе, Грузинская нумизматика. Академия наук СССР, Институт истории Материальной культуры, Москва, 1955, стр. 43.







Հայաստանում տարածուած հռոմէական արծաթեայ դրամ Աւգոստոս Ոկտաւիանոսի եւ նրա երկու որդեգիրների պատկերներով: Մեծացուած 3 անգամ

Հայաստանում ոչ Աւգոստոս Օկտաւիանոսի եւ ոչ էլ նրան յաջորդող կայսերների արծաթեայ դրամների այսպէս կոչուած «կովկասեան» ընդօրինակութիւններից չեն գտնուել: Հայկական քաղաքներում, ուր վաճառականութեանը քաջ յայտնի էին յունա-հռոմէական բարձրարուեստ կերտուածքի դրամներն իրենց արքայական ու դիցաբանական կերպարների գեղեցիկ պատկերներով, հազիւ թէ ընդհանուր վստահութիւն եւ տեւական ընդունելութիւն ունենային Օկտաւիանոսի դենարների աղաւաղուած, գեղարուեստից զուրկ ընդօրինակութիւնները: Ընդհակառակը թերեւս հնարաւոր է, որ Աւգոստոս Օկտաւիանոսի արծաթեայ դրամների թողարկման կենտրոններից մէկը լինէր Հայաստանում, ուր նրանք այնքան տարածուած էին Արտաշէսեանների անկումից յետոյ: Այդ պատճառով էլ Հայաստանում հաւանաբար ընդօրինակութեան հարկ չկար, երբ կարող էին շրջանառութեան մէջ մտնել բնիկ ծագման հռոմէական օրինակները:

Այդ հարցը կարեւոր է յատուկ քննութեան, սակայն իրողութիւնն այն է, որ վաղ կայսերական դրամներից ընդօրինակուած տեղական կերտուածքի կոպիտ ու անմշակ դրամները Հայաստանի դրամական շրջանառութեանը բնորոշ չեն: Ինչ վերաբերում է կայսերական պղնձեայ դրամներին, ապա դրանք հազուադէպ են, մանաւանդ վաղ

կայսերական շրջանին վերաբերուողները։ Եղած հատ ու կենտ նմուշները հնարաւորութիւն չեն ընձեռնում դատելու այդպիսիների Հայաստանում ունեցած դերի մասին։

Ի տարբերութիւն նշանակալից տարածում գտած Աւգոստոս Օկտաւիանոսի արծաթ դրամների, շատ աննշան է եղել Հայաստանում պարթեւական դրամների հոսանքը։ Չնչին չափով այն նշմարւում է Վոնոն Ա. (8—16) Պարթեւ արքայի իշխանութեան տարիներին։ Հայաստանում գտնուել է նրա պղնձեայ դրամը։ Վոնոնի դրամները ընդհանրապէս հազուադէպ են, սակայն նրա պղնձեայ դրամի յայտնութիւնը Գեղարքունիքում[18] պատահականութիւն համարել չենք կարող, եթէ նկատի ունենանք, որ մ. թ. 1ին դարի 12—16 թուերին պարթեւաց Վոնոն թագաւորը, հեռացած լինելով Իրանից, շուրջ չորս տարի իշխեց Հայոց գահի վրայ։ Ուշագրաւ է նաեւ դրամի պղնձից լինելու իրողութիւնը։ Այդպիսիները կապուած են շրջանառութեան ներքին ոլորտի հետ։ Արտաքին առեւտուրը կարող էր հեռու տանել միայն միջազգային նշանակութիւն ունեցող արծաթ դրամները։ Վոնոնի արծաթ դրամներից մի օրինակ յայտնուել է Հայաստանից դուրս, հիւսիսային Կովկասի Նովոռոսիյսկ քաղաքում[19]։ Վո-

---

18 Գտնուել է Նախկին Նոր-Բայազետի, այժմեան Կամոյի շրջանում, տես ՀՊԹ դրամ № 14425։

19 ПМК, V, № 1378։

նոնի դրամները վկայում են, որ Հայաստա–
նում եւ Իրանում վաղ կայսերական շրջա–
նում դեռեւս պահպանուել էին կշռային չա–
փերի Ատտիկեան սկզբունքները: Հայաստա–
նում գտնուած պղնձեայ դրամը խիստ մա–
շուած է եւ իր պահպանուած վիճակով
կշռում է աւելի քան մէկ դրամ: Ընդհան–
րապէս Վոնոնի արծաթ դրամները յայտնի են
ատտիկեան քաշի տետրադրախմանոցներով
եւ դրախմաներով, որոնք պահւում են եւ–
րոպական խոշորագոյն ժողովածուներում:
Դրանք իրենց պատկերատիպերով տարբեր–
ւում են շրջանառութեան մէջ եղած պարթե–
ւական արծաթ դրամներից: Տարբերութիւնն
ակնրախ է դառնում արքայական դիման–
կարի շուրջ նշուած յունատառ գրութեամբ:
Ըստ էութեան Վոնոնի դրամները պատկա–
նում են պարթեւական ծագում ունեցող այն
հաղուագիւտ դրամների շարքին, որոնց վրայ
նշուած է արքայի անձնանունը: Դա նորու–
թիւն էր, որ կատարուել էր պարթեւական
դրամների պատկերագրութեան մէջ: Ինչ–
պէս յայտնի է, մինչ այդ պարթեւ արքաների
անձնանունները դրամների վրայ չէին արձա–
նագրւում: Անձնանունների յիշատակումը
յատուկ էր Արեւմուտքի հելլենիստական պե–
տութիւններին եւ այնուհետեւ բնորոշ դար–
ձաւ Հռոմի կայսրութեան կողմից թողար–
կուած դրամների ձեւաւորմանը, երբ միշտ

որպէս կանոն կայսեր դիմանկարի շուրջ նշում էին նրա տիտղոսները եւ անձնանունը։ Տիպականութեան այդ գծով նկատւում է այն շեղումը, որ կատարուել էր պարթեւական դրամների ձեւաւորման աւանդութեան Օկտաւիանոսի դենարների տարածման ժամանակ։ Վոնոնի դրախմաները եւ տետրադրախմաները հէնց այդ նորութեամբ կարող էին անմիջապէս ճանաչելի դառնալ Հայաստանում շրջանառութեան մէջ եղած պարթեւական դրամների շարքում։ Վոնոնի արծաթ դրամների յիշեալ ինքնատիպութիւնը պատահականութիւն չէր, այլ արտացոլումն էր այն զօրեղ ազդեցութեան, որ թողել էր հռոմէական պատկերագրութիւնը պարթեւական եւ ընդհանրապէս արեւելեան դրամների վրայ։ Հռոմէական դաստիարակութիւն ստացած, Հռոմից Աւգոստոս Օկտաւիանոսի կողմից սկզբում Իրանում եւ այնուհետեւ Հայաստանում (12—16) թագաւոր դարձած պարթեւ Վոնոնը ինքը հռոմէական կողմնորոշման ներկայացուցիչ էր եւ իր արծաթ դրամների պատկերագրութեամբ արտայայտել է իր այդ ձգտումը։

Նկատի ունենալով Վոնոն Ա.ի անունից թողարկուած դրամների նշանակութիւնը Հայաստանի քաղաքական պատմութեան համար, անհրաժեշտ ենք համարում ներկայաց-

*նել դրանցից ամենայայտնի նմուշների տուեալները·*

## Արծաթ

1․ *Տետրադրախմա, թողարկուած Վոնոնի եւ Յաղթանակի պատկերներով, արքայի անուան եւ տիտղոսների յունատառ արձանագրութեամբ։*

*Ա․ կողմ․ Վոնոնի կիսանդրին դէպի ձախ, գլխին արքայական վարսակալ ժապաւէն, դէմքը մօրուքաւոր, մազերը ճոխ փնջերով իջած են ուսին, շուրջը գրուած է՝* ΒΑCΙΛΕΥC ΒΑCΙΛΕΩΝ ΟΝΩΝΗC *եւ այդ ամէնը երիզափակ շրջանակի մէջ։ Բ․ կողմ․ Յաղթանակի թեւաւոր դիցուհին, կանգնած դէպի ձախ եւ իր աջ ձեռքով բռնել է պսակ ու պարզել է այն առաջ, իսկ ուսին կրում է զափնեճիւղ։ Շուրջը գրուած է․* ΒΑCΙΛΕΩC ΒΑCΙΛΕΩΝ ΑΡCΑΚΟΥ ΕVΕΡΓΕΤΟΥ ΔΙΚΑΙΟΥ ΕΠΙΦΑΝΟΥC ΦΙΛΕΛΛΗΝΟC, *ըստ որում Յաղթանակի դիմաց նշուած է տարեթիւը՝* ΓΚΤ, *այսինքն* 323 *սելեւկեան տոմարով հաշուած, որը համապատասխանում է մ․ թ․* 11 *թուին։ Երիզափակ շրջանակ չունի։*

*Կշիռը՝* 12,10 *գրամ, տրամագիծը՝* 30 *մմ, տես* Alexander Ritter von Petrowicz, Arsaciden-Münzen, Wien, 1904, S. 105, *թիւ* 1, Tafel XVI, *թիւ* 1։





Արշակունի Վոնոն թագաւորի արծաթեայ դրամը, թողարկուած 8—16 թուին։ Մեծացուած 3 անգամ

## Արծաթ

2. *Դրախմա, Թողարկուած Վոնոնի եւ Յաղթանակի պատկերներով, արքայի անուան եւ տիտղոսների յունատառ արձանագրութեամբ:*

*Ա. կողմ. Վոնոնի գլուխը, զարդարուած արքայական վարսակալ ժապաւէնով, դէմքը մօրուքաւոր, դէպի ձախ, շուրջը գրուած է.* BACIΛEYC ONωNHC *եւ այդ ամէնը կիսաւոր շրջանագծի մէջ: Բ. կողմ. Յաղթանակի թեւաւոր դիցուհին, կանգնած դէպի աջ, ձեռքին արմաւենու ճիւղ, ներքեւում մենագիր* Ā, *իսկ շուրջը գրուած է.* BACIΛEYC ONωNHC NEIKHCAC APTABANON *եւ առանց երիզափակ շրջանակի:*

*Կշիռը՝* 3,93 *գրամ, տրամագիծը՝* 18 *մմ:* Petrowicz, 106, *թիւ* 5, Tafel XVI.

*Ինչպէս տեսնում ենք Վոնոնը իր տետրադրախմայի վրայ յիշատակուած է* BACIΛEYC BACIΛEΩN (*արքայից արքայ*) *տիտղոսով: Արքայի անուանման այդ ձեւը հայերին յիշեցնում էր Տիգրան Մեծ եւ Արտաւազդ Բ. թագաւորների, Հայաստանի հզօրութեան ու անկախութեան անցեալ ժամանակները: Սակայն մէկ դրախմա ներկայացնող արծաթեայ միաւորների վրայ Վոնոնը յիշատակւում էր պարզապէս արքայ* (BACIΛEYC), *բայց այդպէս էլ կրկնում էր յատուկ արձանագրութեամբ իբրեւ «յաղթող Արտաւանին»* NEIKHCAC APTABANON: *Պարթեւական տիտղոսաձեւերին ան–*

յարիր եւ արտակարգ այդ ձեւը պատահական մտայղացման արդիւնք չէր։ Այն իբրեւ քաղաքական լոզունգ արտայայտում էր Վոնոնի պայքարը նրա հակառակորդ Արտաբան Գ.-ի դէմ Իրանի գահի համար, որի մասին յիշատակում են գրաւոր աղբիւրները[20]։

Այդ նորութեամբ եւս Վոնոնի դրամները տարբերւում են բուն պարթեւական ծագման դրամներից եւ ըստ էութեան տիրակալի անուան յիշատակութեամբ ներկայացնում են հռոմէական տիտղոսաձեւի պարթեւական արտայայտութիւնը։ Յայտնի է, որ Օգոստոս Օկտաւիանոսի յաղթանակների առթիւ թողարկուած դրամների վրայ յաճախ նշւում էին AEGIPTO CAPTA (= Եգիպտոսը նուաճուած[21], ASIA RECEPTA = Ասիան վերստին նուաճուած[22], ARMENIA CAPTA (= Հայաստանը նուաճուած) կամ ARMENIA RECEPTA (= Հայաստանը վերստին նուաճուած) լոզունգները։ Հռոմէական զօրավարներն իրենց ռազմի յաղթանակների փառքը յաւերժացնելու համար յաճախ կոչւում էին հակառակորդի անունով։ Օգոստոս Օկտաւիանոսի եղբօր թոռը գերմանացիների դէմ տարած յաղթանակների

---

[20] Հ. Մանանդեան, Քննական տեսութիւն հայ ժողովրդի պատմութեան, Երեւան, 1944, էջ 305—306։

[21] Mattingly, I, 106։

[22] Mattingly, I, 105։

չնորհիւ ստացել էր Գերմանիկոս (GERMANICVS) պատուանունը։

Վոնոնը ժամանակակից էր Գերմանիկոսին եւ լինելով Ոկտաւիանոսի դրածոն[23] պարթեւաց գահի վրայ, Արտաբան Գ-ի (12—38) դէմ տարած իր յաղթանակի համար հռոմէական ձեւով յիշատակել է դրամի վրայ յունատառ դրութեամբ իւր տիտղոսը NEIKHCAC APTABANON (= յաղթող Արտաբանի)[24]։ Ուշագրաւ է, որ Վոնոնի այդ դրամների վրայ նշուած են առաւելապէս [monogram] եւ [monogram] մենագրերը[25]։ Դրանք ներկայացնում են կրճատ անուններն այն քաղաքների, ուր կատարուել են տուեալ դրամների դրոշմները։ Արեւելագէտ Ալ. Մարկովի կարծիքով [monogram] մենագրով Վոնոնի դրամները, ամենայն հաւանականութեամբ, հատուել են Միջագետքից դէպի Փոքր Ասիա եւ Իրան, ինչպէս նաեւ Կովկաս տանող առեւտրական ճանապարհների վրայ գտնուող Տիգրանակերտ քաղաքում[26]։ Հայաս—

---

[23] Նոյնը, I, 109։

[24] А. Г. Бокщанин, Парфия и Рим, Москва, 1966, часть II.

[25] The coinage of Parthia by Percy Gardner. Introduction and Supplementary catalog of a Recent Hoard by L. Malter. Chicago, copyright, 1967, p. 47.

[26] A. Markoff, Les Monnaies des rois de Parthe, Paris, 1877, Part 2, p. 41; Warwick

տանի քաղաքական պատմութեան տուեալ–
ները չեն ժխտում այդ հաւանականութիւնը։
Իրօք Վոնոնը մ. թ. 12 թուից մինչեւ 16 թիւը
չորս տարի եղել է թագաւոր Հայաստանում
եւ իբրեւ Հռոմի շահերի պաշտպան Տիգրա–
նակերտում կարող էր թողարկել իր դրամ–
ները։ Տիգրանակերտը դրամագործութեան
նշանաւոր կենտրոններից մէկն էր հելլենիս–
տական դարաշրջանում եւ Վոնոնի իշխանու–
թեան տարիներին հազիւ թէ սպառած լինէր
իր նշանակութիւնը այդ տապարէզում։ Մե–
նագիր ձեւը պարզորոշ արտայայտում է
Տիգրանակերտ քաղաքի անուան յունատառ
ΤΓΡ հնչիւնների գրաֆիկ միահիւսուածու–
թիւնը։ Սակայն Վոնոնի դրամները շատ ան–
նշան են եղել շրջանառութեան մէջ։ Նրանց
հազուագիւտութիւնը Հայաստանում եւ հա–
րեւան երկրներում ինքնըստինքեան փաս–
տում է այդ իրողութիւնը։ Գերակշռութիւնը
մնացել էր ուշ հելլենիստական, Հռոմի հան–
րապետական եւ վաղ կայսերական դրամնե–
րին։ Վոնոնի դրամների թողարկումից երկու
տարի անց կայսրութիւնը Հայաստանում
թագաւոր կարգեց Պոնտոսի արքայազն Զե–
նոնին։ Թագադրութեան հանդիսաւոր արա–
րողութիւնը կատարուեց Արտաշատում, Տի–
բերիոս կայսեր որդեգիր զօրավար Գերմա–

---

Wroth, Catalogue of the coins of Parthia, British Museum, London, 1903. Reprint: Bologna, 1964, p. XXIX. pl. XXIV.

նիկոսի ձեռքով: Ջենոնը հայոց թագաւոր պսակուեց Արտաշէս անունով եւ այդ նշանաւոր իրադարձութեան առթիւ կայսրութիւնն արծաթեայ դրամներ թողարկեց: Դրանք Գերմանիկոսի դիմաքանդակի դրոշմով եւ լատինատառ արձանագրութեամբ միանգամայն հռոմէական էին, բայց կշռային տուեալներով ատտիկեան դրոյթի դիդրախմաներ (երկդրամեաններ) էին, թողարկուած Արտաշատում կամ Կապադովկիայի մայրաքաղաքում՝ Կեսարիայում: Վերջինս կայսրութեան կարեւոր յենարաններից էր Արեւելքում, նամանաւանդ Հայաստանի նկատմամբ վարած քաղաքականութեան գործում: Ինչպէս Իրանում պարթեւական դրամները, այնպէս էլ Հայաստանում եւ Կապադովկիայում կայսրութեան կողմից թողարկուած դրամները կշռային չափերով շարունակում էին պահպանել ատտիկեան սկզբունքները, չնայած այդ առանձնայատկութեանը հռոմէական դրոյթի նկատմամբ միջազգային առեւտրում առաջատար նշանակութիւն չունէր: Գերմանիկոսի եւ Արտաշէսի անունով թողարկուած դիդրախմաները ունէին առաւելապէս քաղաքական իմաստ, հաղորդելու համար այն իշխող դիրքի մասին, որ ստեղծուել էր Հայաստանում կայսրութեան շահերի օգտին: Հայերի համար նուիրական էր արքայական Արտաշէս անունը, որ արձանագրուած էր այդ դրամի վրայ:

Գերմանիկոսի եւ Արտաշէսի անունով դրոշմած արծաթեայ շքադրամների վերաբերեալ, գոյութիւն ունեն տարբեր կարծիքներ: Հարոլդ Մատինգլին համարում է այն թողարկուած 37—38 թուերին եւ դասակարգել է կայսր Կալիգուլային (37—41) վերաբերող դրամների շարքում, նուիրուած Գերմանիկոսի յիշատակին[27]: Կարապետ Բասմաջեանը ցոյց է տուել, որ դրամի լոյս ընծայումը կատարուել է 18 թուին հռոմէական կայսրութեան կողմից հայերին թագաւոր տալու առթիւ: Յիրաւի Գերմանիկոսի ուղեւորութիւնը 17—19 թուերին Մերձաւոր Արեւելք եւ Զենոնին 18 թուին Հայաստանում թագադրելը կայսրութեան յաղթանակն էր եւ այդ նպատակով թողարկուող շքադրամները չէին կարող անմիջապէս չմտնել շրջանառութեան մէջ, տեղեկացնելու համար այն վիճակի մասին, որ ստեղծուել էր Արեւելքում եւ մասնաւորապէս Հայաստանում ի նպաստ Հռոմի: Սակայն շրջանառութեան մէջ այդ դրամները լայն տարածում չեն ունեցել: Արարատեան դաշտի հնագիտական նիւթերում, մասնաւորապէս Արտաշատ քաղաքի աւերակների շրջակայքում, ինչպէս նաեւ ողջ անդրկովկասեան գանձերի ու դրամների մէջ Գերմանիկոսի եւ Արտաշէսի պատկերներով հռոմէական դրամներ չեն գտնուել: Առաջիկայում Ար-

---

[27] Mattingly, I, 162.

տաշատի պեղումները կարող են լոյս սփռել այդ հարցին, եթէ նկատի ունենանք, որ Արտաշատում է կատարուել Զենոն-Արտաշէսի թագադրութիւնը եւ այդ քաղաքում նոյնպէս կարող էին թողարկուել նման օրինակ շքադրամները: Պատմականօրէն կարեւոր է այն իրողութիւնը, որ շուրջ 16 տարի այս պոնտացի Արտաշէս կոչուած (18—34) թագաւորի օրօք Հայաստանի դրամական շրջանառութիւնը զարգացել է առանց շեղուելու իր հիմնական ընթացքից, այսինքն հռոմէական դրամահաշուային դրոյթի սկզբունքներից: Կայսրութեան նուաճումները Արեւելքում այդ ժամանակ ամրապնդուել էին եւ Հռոմի տիրապետութեանը միացուել էին ամբողջութեամբ Կապադովկիան, Կոմագէնը եւ Կիլիկիան[28]:

Հայաստանը դարձել էր սահմանակից կայսրութեանը, ապրանքա-փոխանակութիւնը կատարւում էր անմիջականօրէն: Սակայն 34 թուին Զենոն Արտաշէսի մահից յետոյ խաղաղութիւնը Հայաստանի երկու հզօր հարեւանների՝ պարթեւական Իրանի եւ Հռոմի կայսրութեան միջեւ վերացաւ եւ տեղի տուեց երկարատեւ կռիւների: Պարթեւաց Արտաբան 3րդ (12—38) արքան, առանց Հռոմի համաձայնութեան Հայաստանում 35 թուին թագաւոր կարգեց իր

---

[28] А. Г. Бокщанин, Парфия и Рим, часть II, Москва, 1966, стр. 172—173.

*ւազդ որդուն՝ Արշակին։ Վերջինիս վերագրուած է արծաթեայ մի դրամ, որը պահւում է Պետական Էրմիտաժի հին հայկական դրամների շարքում։ Նկատի ունենալով այդ դրամի հաղուադիւտ լինելը, քննական խօսք ասելուց առաջ, անհրաժեշտ ենք համարում ներկայացնել պահպանուած նմուշի պատկերագրութիւնը․*

## Արծաթ

3․ *Դրախմա, թողարկուած իշխող արքայի եւ արշակունեաց նահապետի պատկերներով,* ΑΡΣΑΚΟΥ ΑVΤΟΚΡΑΤΟΡΟΣ *արձանագրութեամբ։*

*Ա․ կողմ․ արքայի կիսանդրին, երիտասարդ, անբեխ-անմօրուք դէմքով, դէպի աջ։ Ինքնակալը գլխին ունի վեղարաձեւ գլխարկ, ճակատին ժապաւէն, որի ծայրերը հանգուցուած են գլխայետեւում եւ ազատ արձակած իջել են թիկունքին։ Արքայական պատկերը վերցուած է կէտաւոր շրջանակի մէջ։ Բ․ կողմ․ Արշակունեաց նահապետը բազմած գահին, դէպի ձախ, հագին ծիրանի, գլխին սաղաւարտ, աջ ձեռքում աղեղ, որը պարզել է առաջ։ Արձանագրութիւնը թիկունքի մօտ՝* ΑΡΣΑΚΟΥ *առջեւում՝* ΑVΤΟΚΡΑΤΟΡ (ΟΣ) *եւ այդ ամէնը առանց երիզափակ շրջանակի։*

*Կշիռը՝* 3,75 *գրամ, տրամագիծը՝* 17 *մմ, Էրմիտաժ նո․* 19401։

*Ընդհանուր առմամբ նման օրինակ դրամները խիստ հազուադէպ են եւ յայտնի*

են հատ ու կենտ նմուշներով պահպանուած արծաթեայ տատրիկեան դրամներով[29]: Նկարագրուած նմուշը բացառիկ է իր դրոշմի տեսակէտից: Պարթեւաց թագաւորները դրամների վրայ պատկերւում էին միշտ ուղղութեամբ դէպի ձախ, իսկ հակառակ կողմում իրենց նահապետի կերպարը ներկայացնում էին միշտ դէպի աջ: Այդ սովորական սխեման այստեղ փոխուած է ուղիղ հակառակ ձեւով: Սակայն արքայական պատկերները եւ արձանագրութիւնները այստեղ բնորոշ են վաղ պարթեւական շրջանին[30] եւ անհամատեղելի են մ. թ. 1ին դարի դրամագիտական վկայութիւնների տուեալներին: Տեսականօրէն հնարաւոր է, որ Արշակը Հայաստանում իր իշխանութեան հաստատումը հաւաստէր դրամի թողարկմամբ: Այդ դէպքում նրա դրամի պատկերագրութիւնը պէտք է բաղդատուի տուեալ ժամանակաշրջանին (մ. թ. 35 թիւ) բնորոշ պարթեւական դրամների եւ նմանաւանդ իր հօր՝ Արտաւան Գ.ի դրամների հետ: Մինչդեռ այն

---

[29] Warwick Wroth, Catalogue of the coins of Parthia, British Museum, London, 1903. Reprint: Bologna, 1964, p. 5.

Հետագայ յիշատակութիւններում սոյն աշխատութիւնը տրւում է Parthia ձեւով:

[30] The coinage of Parthia, by Percy Gardner, Chicago, 1967, Copyright, 1966 by D. M. Metcalf, plate C, nr. 7 a. Introduction and Supplementary catalog of a recent hoard by Joel L. Malter.

*խիստ պատական է եւ օրինաչափական կապակցութիւն չունի ոչ Արտաւան Գ.ի եւ ոչ էլ նրա անմիջական նախորդներից որեւէ մէկի, ուշհելլենիստական շրջանի պարթեւաց դրամական միաւորների հետ: Հարցի անորոշութիւնը կարող է պարզուել միայն նոր դրամագիւտերի շնորհիւ եւ ներկայումս ոչ մի հիմք չկայ ընդունելու այդ բացառիկ նմուշը, իբրեւ թողարկուած մ. թ.* 35 *թուին, ինչպէս այն ներկայացուած է Պետական էրմիտաժի (Լենինգրադ) հին հայկական դրամների շարքում: Իրականում պարթեւ Արտաւան Գ.ի որդի Արշակը, ինչպէս նաեւ նրան հայոց գահի վրայ յաջորդող Վրաց արքայազն Միհրդատը* (35—37 *եւ* 41—51 *թուերին) ու վերջինիս եղբայր Հռադամիզդը* (51—54), *որոնք Հռոմի հովանաւորութեամբ իշխել էին Հայաստանում, դրամներ չեն թողարկել: Դրամագիտական խոշորագոյն ժողովածուներում եւ Անդրկովկասում յայտնաբերուած նիւթերի մէջ այդպիսի վկայութիւններ չկան: Քաղաքական այդ խառնաշփոթ տարիներից յայտնի են պարթեւ Վարդան Ա.* (40—45), *Գոտարզ Բ.* (40—51) *եւ Վաղարշ Ա.* (51—78) *արքաների դրամները: Դրանք պատահականութիւններ չեն, այլ անհրաժեշտաբար զարգացող հայ-պարթեւական յարաբերութիւնների պահպանուած յիշատակներ: Յայտնի է, որ Վարդան Ա. պարթեւը* 40—41 *թուերին փորձեր կատարեց նուաճելու Հայաստանը Հռոմէական կայսրութիւնից:* 54

թուին Վաղարշ Ա․ի զօրքերը գրաւել էին Տիգրանակերտն ու Արտաշատը։ Հետեւաբար հէնց այդ ժամանակներում պարթեւական արծաթեայ ու պղնձեայ դրամների շրջանառութիւնը կատարուել է հայկական առեւտրի ներքին ոլորտում, ուր նրանք կարող էին թափանցել ոչ միայն պարթեւական զօրքերի հետ, այլ եւ պարթեւների հաստատման թէկուզ շատ կարճատեւ միջոցին։ Սակայն Հռոմի կայսերական դրամների առաւելութիւնը շրջանառութեան մէջ աննկատելի էր դարձնում պարթեւական դրամներին։

Արդէն 58—59 թուերին Արտաշատը եւ Տիգրանակերտը նորից անցել էին հռոմէացիների ձեռքը եւ դարձել նրանց ենթակայ։ Իրանի եւ կայսրութեան միջեւ դրանք այն նշանաւոր քաղաքներն էին, որոնք յայտնի էին նաեւ իբրեւ դրամների թողարկման կենտրոններ։ 59 թուին Ներոն կայսեր անունից թողարկուեցին չքադրամներ Հայաստանի նուաճման առթիւ։ Այդպիսիններն իրենց կշռային տուեալներով ատտիկեան դրոյթի երկդրամեաններ ու կէսդրամեաններ էին, որոնք սակայն լայն տարածում չեն ունեցել։ Հայաստանում նուաճումներն ամրապնդելու համար կայսրութիւնը 60 թուին թագաւոր կարգեց Տիգրան Զ․ին, որը ըստ էութեան Հռոմի կամակատարն էր։ Հայոց այս վերջին Տիգրանից դրամներ յայտնի չեն։ Նրա ոչ օծման առթիւ եւ ոչ էլ մէկ տարուայ (60—61) իշխանութեան ընթացքում դրամներ չեն

թողարկուել: Սակայն արդէն 62 թուի գարնանը հայ-պարթեւական միացեալ ուժերը պարտութեան էին մատնել հռոմէական նուաճողներին եւ Հայաստանում հաստատել Արշակունիների թագաւորութիւնը, որին վիճակուած էր շուրջ երեք ու կէս դար գլխաւորելու հայ ազգային պետականութիւնը: Այն սկսուեց ծագումով պարթեւ Տրդատ Ա. ի (66—75) թագաւորութեամբ: Օծման արարողութիւնը կատարուեց Հռոմում, 66 թուին, կայսր Ներոնի ձեռքով: Ամփոփելով վերոյիշեալ տուեալները, կարելի է նշել, որ Արտաշէսեանների անկումից մինչեւ Արշակունիների հաստատումը, շուրջ 60 տարի, Հայաստանում դրամական շրջանառութիւնը դադարել է ինչպէս անցեալից մնացած, այնպէս էլ տուեալ ժամանակներում թողարկուած դրամներով, որոնք միասին սպասարկել են երկրի արտաքին ու ներքին առեւտրի պահանջները: Շրջանառութեան մէջ եղածը բնորոշւում է երեք տարբեր ծագում ունեցող դրամական խմբերով.

I. Ուշ հելլենիստական դրամներ
II. Հռոմի հանրապետական դրամներ
III. Հռոմի կայսերական դրամներ

Առաջին խումբը ներկայացնում է մ. թ. ա. 1ին դարի վերջերից շրջանառութեան մէջ եղած արեւելեան ծագման այն դրամները, որոնք թողարկուել էին ատի-

կեան կչռային դրոյթի սկզբունքներով: Հայաստանում դրանք կազմում էին նախ եւ առաջ արտաշէսեան եւ պարթեւական դրամները, ինչպէս նաեւ աննշան չափով վերջին սելեւկեան դրամները:

Արտաշէսեան դրամները ներկայացնում էին Հռոմի կողմից նշանակուած Տիգրան Գ. (20—8), Տիգրան Դ. (8—5), Արտաւազդ Դ. (4—6) եւ Տիգրան Ե. (մ. թ. 6 թիւ) թագաւորների պղնձեայ դրամները, որոնցով վարւում էին ներքին առեւտրի մանր գործարքները: Առեւտրի միջազգային ոլորտում տակաւին չէին սպառուել նաեւ Տիգրան Մեծի ու Արտաւազդ Բ. արծաթեայ դրամները: Պարթեւական դրամներից շրջանառութեան մէջ կային Որոդէս Բ. (57—38), Հրահատ Դ. (38—2) եւ արդէն նոր թագարկման Վոնոն Ա. (8—16), Գոտարզ Բ. (40—51), Վարդան Ա. (40—45), Վաղարշ Ա. (51—78) թագաւորների արծաթեայ ու մասամբ պղնձեայ դրամները: Երկրորդ խմբում ամփոփում են հռոմէական ծագման այն դրամները, որոնք հանդէս էին եկել հանրապետութեան վերացման տարիներին մասնաւորապէս Մարկոս Անտոնիոսի դէպի Հայաստան կատարած արշաւանքների ժամանակ: Դրանք որոշ չափով կարող էին թողարկուած լինել Հայաստանում, մասնաւորապէս Մ. Անտոնիոսի դիմանկարով եւ հայոց թագի պատկերով, ինչպէս նաեւ

ANTONI ARMENI DEVICTA մակագրութեամբ:

Ընդհանուր առումով յիշատակուած այս երկու խմբի դրամները Արտաշէսեանների անկումից մինչեւ Արշակունիների հաստատումը կազմել են երկրի դրամական տնտեսութեան հիմքը: Սակայն դրանք շրջանառութեան մէջ երկար մնալու հեռանկարից զուրկ են եղել, նոր թողարկում չեն ունեցել եւ գնալով անվերադարձ կորցրել են առեւտրական գործարքներում իրենց ունեցած երբեմնի կարեւոր դերը: Երրորդ խմբի դրամները՝ Հռոմի վաղկայսերական արծաթեայ դրամներն են, որոնց թափանցումը Արտաշէսեանների անկման տարիներին ուժեղ չէր, բայց գնալով դարձաւ բնորոշ, նամանաւանդ Արշակունեաց թագաւորութեան հաստատման տարիներին: Դրանք հիմնականում Աւգոստոս Օկտաւիանոսի արծաթեայ դրամներն էին, որոնցով եւ սկսուել է Հայաստանում կայսերական դրամների տարածումը: Աւգոստոս Օկտաւիանոսի դենարները շատ երկար են մնացել շրջանառութեան մէջ:

Սովետական Միութեան տարածքի վրայ յայտնաբերուած գանձերը ցոյց են տալիս, որ Աւգոստոս Օկտաւիանոսի դենարները միջազգային շրջանառութեան մէջ դերիշխող են եղել մինչեւ 1ին դարի վերջերը: Այսպէս օրինակ· Ղրիմում, 1958 թուին, շինարարական աշխատանքների ընթացքում,

Գրիբբեժնոյէ կոչուող վայրում, գտնուել է 1ին դարի 80ական թուականներին թաղուած գանձ, որից պահպանուել են 57 արծաթեայ հռոմէական դրամներ[31]։ Վերջիններս ներկայացնում են հետեւեալ ժամանակագրական տուեալները.

| | Հատ |
|---|---|
| Հռոմէական հանրապետութիւն, Գ. Կլաւդիոս մ. թ. ա. 38 թթ. | 1 |
| Հռոմէական կայսրութիւն, Աւգոստոս Օկտաւիանոս (մ. թ. ա. 27—մ. թ. 4 թթ.) | 34 |
| Հռոմէական կայսրութիւն, Տիբերիոս (14—37) | 10 |
| Հռոմէական կայսրութիւն, Կալիգուլա (37—41) | 1 |
| Հռոմէական կայսրութիւն, Կլաւդիոս (41—54) | 1 |
| Հռոմէական կայսրութիւն, Ներոն (54—68) | 1 |
| Հռոմէական կայսրութիւն, Վեսպասիանոս (69—79) | 7 |
| Հռոմէական կայսրութիւն, Տիտոս (79—81) | 1 |

Ինչպէս տեսնում ենք գանձի մէջ ժամանակով ամենանոր դրամները Վեսպասիանոսի եւ Տիտոսի դենարներն են, որոնց կողքին

---

[31] В. В. Кротопкин, Клады римских манет на территории СССР. Институт археологии. Свод археологических источников под общей редакцией академика Б. А. Рыбакова, вып. Г 4—4, Москва, 1961, стр. 65. Հետազօտում տես КРМ.

առկայ են Աւգոստոս Ոկտաւիանոսի դրամները (59,12%), թողարկուած 1ին դարի սկզբին: Այլ կերպ ասած այն տարիներին, երբ Հայաստանում իբրեւ թագաւոր հաստատուել էր Արշակունեաց Տրդատ Ա.ն (66—75), միջազգային շրջանառութեան մէջ իշխում էին վաղկայսերական դրամները, մանաւորապէս Աւգոստոս Ոկտաւիանոսի դենարները: Վերջիններս Անդրկովկասում յաճախ հանդէս էին գալիս պարթեւական Գոտարզ Բ. (40—51) արքայի դրախմաների հետ: Այդ մասին վկայում են Հայաստանին մերձաւոր Վրաստանում յայտնաբերուած նիւթերը[32]: Աւելին, Աւգոստոս Ոկտաւիանոսի, արծաթեայ դրամներն առկայ են անգամ 2րդ դարի գանձերի կազմում[33]:

Հարց է առաջանում թէ ինչո՞ւ Աւգոստոս Ոկտաւիանոսի արծաթեայ դրամներն այդքան երկար մնացին շրջանառութեան մէջ, նոյնիսկ կայսրութեան ամենածաւալուն ժամանակներում, երբ հռոմէական դենարները տարածուել էին ոչ միայն Մերձաւոր Արեւելքում, այլ եւ Սկանդինաւիայից մինչեւ Հնդկաստան: Նկատենք, որ նախ այդպիսիները թողարկուում էին բարձրորակ արծաթից, մօտ 4 գրամ քաշով: Մինչդեռ 64

---

[32] ПМК, I, № 33; IV, №№ 1012, 1013, 1024, 1034, 1038, 1040; Голенко, 87—88, No№ 84, 86.

[33] ПМК, II, №№ 345, 346; III, № 773; КРМ, 17.

թուից, Ներոնի անտեսական բարենորոգումով կայսերական արծաթեայ դրամների համար սահմանուեց նոր քաշ, որը կազմում էր հռոմէական ֆունտի 1/96 մասը, այսինքն արծաթի գծով հիմնական միաւորը՝ դենարը նուազել էր քաշով եւ դարձել էր 3,40 գրամ[34]:

Բացի դրանից, Ներոնի բարենորոգումով սահմանուած հռոմէական արծաթ դրամներն այլեւս չունէին արծաթի այն մաքրութիւնը, որը յատուկ էր վաղ կայսերական դրամին եւ մասնաւորապէս Աւգոստոս Ոկտաւիանոսի դրամներին: Նոր դրամներն իրենց մէջ պարունակում էին միայն 55—65% արծաթ[35]: Այդ հանգամանքը մեծապէս բարձրացել էր բարենորոգումէ առաջ արծաթ դրամների եւ յատկապէս Աւգոստոս Ոկտաւիանոսի դենարների հեղինակութիւնը եւ միջազգային գործարքներում 1—2րդ դարերում նախապատուութիւնը նրանց էր տրւում: Հայաստանում Արշակունեաց թագաւորութեան հաստատումից յետոյ Աւգոստոս Ոկտաւիանոսի արծաթ դրամներից բացի շրջանառութեան մէջ կային նաեւ Ներոնի (54—68), Վեսպասիանոսի (69—79), Տիտոսի (79—81) եւ Դոմիտիանոսի (81—96) արծաթ դրամները: Վերջիններիս թափանցումը հայկական քաղաքները

---

[34] Fr. Schrötter, Wörterbuch der Münzkunde, Berlin, 1930, S. 126.

[35] Mattingly, VI—VII.

կատարուել է միջազգային առեւտրի բերումով, Արշակունիների հայոց թագաւորութեան ծագման ու զարգացման վաղ ժամանակներին, մասնաւորապէս Տրդատ Ա. եւ նրա անմիջական յաջորդների իշխանութեան տարիներին: Սակայն Ներոնի տնտեսական վերանորոգումից յետոյ շրջանառութեան մէջ մտած դրամները այլեւս չունեցան այն համընդհանուր տարածումը, որը դիտւում է Օկտաւիանոսի դենարների գծով, իսկ իրենք՝ հայոց Արշակունի թագաւորները դրամներ չէին թողարկում: Այդ իրողութիւնը պայմանաւորուած էր նրանց իրաւական վիճակով: Հայաստանում Արշակունիները մինչեւ 3րդ դարը ժառանգական իրաւունք գահի համար չունեին: Միապետները առաջադրւում էին պարթեւական Իրանից եւ թագադրւում կայսերական Հռոմի կողմից[36]: Հետեւաբար պատահական չէ, որ սեփական դրամ կտրելու իրաւունքն Արշակունի հայ թագաւորները 1—2րդ դարերում նոյնպէս չեն ունեցել: Այդ իրաւունքը, պէտք է ենթադրել, որ վերապահուած էր Արշակունեաց տոհմի մեծ տանը՝ Իրանի Արշակունիներին (պարթեւներին): Յամենայն դէպս ցարդ ոչ Հայաստանում, եւ ոչ էլ նրանից դուրս Արշակունիների հայկական ճիւղին վերաբերող 1—2րդ դարերի դրամներ չեն գըտնուել: Այդպիսին է եղել երկու հզօր եւ իրար

---

[36] Հայ ժողովրդի պատմութիւն, 1ին, Երեւան, 1958, էջ 75:

թշնամի տէրութիւնների՝ Հռոմի եւ Իրանի միջեւ շահերի բախման ասպարէզ դարձած Հայաստան երկրի վիճակը, որի միջով անցնում էին Արեւելքի ու Արեւմուտքի առեւտրական քարաւանները, նրանց ապրանքներն ու դրամները:

Հռոմէական դրամների բացարձակ գերակշռութիւնը Հայաստանի դրամական շրջանառութեան մէջ շարունակւեց նաեւ ողջ 2րդ դարի ընթացքում: Վաղկայսերական արծաթ դրամների հետ շրջանառութեան մէջ էին Վեսպասիանոսի (69—79), Դոմիտիանոսի (81—96) եւ արդէն 2րդ դարի սկզբից նաեւ Տրայիանոսի (98—117), Հադրիանոսի (117—138), Անտոնինոս Պիոսի (138—161), Մարկոս Աւրելիոսի (161—180) ու Լուկիոս Վերոսի արծաթեայ դենարները: Կայսերական դրամների պատկերագրութիւնն այդ ժամանակներում վաղուց արդէն դարձել էր միատեսակ: Միշտ որպէս կանոն նրանց վրայ ներկայացւում էին մի կողմից իշխող կայսեր դիմաքանդակը, իսկ միւս կողմից պաշտամունքային նշանակութիւն ունեցող պատկերներ՝ Վիկտորիա, Վեներա, Ֆորտունա, Մարս, Առատութիւն, Յոյս, Միներուա եւ այլն:

Գանձերի ուսումնասիրութիւնները ցոյց են տալիս, որ Հայաստանում եւ հարեւան երկրներում Հռոմի կայսերական դրամները շրջանառութեան մէջ հանդէս են եկել միատարր ձեւով, այսինքն առանց այլ ծագում

ունեցող դրամների հետ խառնուած լինելու: Գանձերի կազմում հռոմէական դրամներից բացի ուրիշ դրամներ չեն դիտւում: Այդ երեւոյթը կազմում է Հայաստանի դրամական տնտեսութեան բնորոշ գիծը կայսերական դրամների տարածման ինչպէս սկզբնական, այնպէս էլ ամենածաւալուն շրջանում՝ 2րդ դարում: Բացի դրանից, պարթեւական այն դրամները, որոնք Հայաստանում Արտաշէսեանների օրօք լայն տարածում ունէին արդէն Արշակունիների տիրապետութեան 2րդ դարում չքացել էին շրջանառութիւնից: Բաւական է, նշել, որ Հայաստանում գտնուած 2րդ դարին վերաբերող դրամների շարքում գրեթէ չկան պարթեւական դրամներ: Եւ այդ իրողութիւնը պատահականութիւն չէ, այլ օրինաչափ արտացոլումը պարթեւական դրամային տնտեսութեան սնանկացման, որ դիտւում է նաեւ Հայաստանին հարեւան երկրների դրամադիւտերով: Ոչ Վրաստանում եւ ոչ էլ Աղուանքում 2րդ դարի պարթեւական դրամներ չեն գտնուել:

Հետագայում, պարթեւների կործանումով Իրանում վերացաւ նրանց դրամների թողարկումը, որ մինչեւ 3րդ դարի սկիզբը կատարւում էր ատտիկեան կշռային դրոյթի սկզբունքներով: Սակայն պարթեւական դրամների սպառմամբ ատտիկեան կշռային համակարգը բոլորովին չվերացաւ: Մերձաւոր Արեւելքում Հռոմին ենթակայ որոշ

շրջաններում թողարկում էին հռոմէական պատկերագրութեան դրամներ, բայց հին ատտիկեան կշռային չափերով: Այդ դրամների վրայ արձանագրութիւններն անգամ ըստ տեղական աւանդոյթի յունարէն էին: Գրականութեան մէջ յաճախ դրանք անուանւում են պարզապէս յունա-հռոմէական դրամներ, չնայած քաղաքական առումով միանգամայն հռոմէական էին եւ այն էլ մեծ մասամբ կայսերական:

Միջազգային առեւտրի բերումով այդ յունատառ արձանագրութիւններով եւ ատտիկեան կշռային օրինաչափով հռոմէական դրամները 2րդ դարում թափանցում են Հայաստան, Ասորիքի եւ Կապադովկիայի վաճառաշահ կենտրոններից, մասնաւորապէս Անտիոքից եւ Կեսարիայից, ուր նրանք դրուագւում էին:

Թէ ինչ չափով այդ դրամները տարածուած են եղել Մեծ Հայքի կենտրոնական, եւ հարաւ-արեւմտեան շրջաններում ներկայումս մնում է անորոշ հնագիտական տուեալների բացակայութեան պատճառով: Սակայն Շիրակում, Լոռի-Փամբակում, Սիւնիքում, Այրարատում եւ ընդհանրապէս Հայաստանի Կովկասեան մասերում նրանց հոսանքը նուազ է եղել: Հայաստանի համար 2րդ դարում բնորոշ են եղել Հռոմի կայսրութեան համընդհանուր պատկերագրութեան եւ բուն հռոմէական դրոյթի դրամները, թողարկուած թէ Մետրոպոլիտում եւ

*թէ Արեւելքում: Ատտիկեան դրույթի հռոմէական տիրապետութեան դրամները, ըստ որում առաւելապէս Կապադովկիայի մայրաքաղաք Կեսարիայում թողարկուածները, Անդրկովկասի մէջ համեմատաբար լայն տարածում են ունեցել յատկապէս Արեւմտեան Վրաստանում:*

*Կարեւոր ցուցմունք է տալիս այդ մասին Արխագիայում գտնուած, նշանաւոր Գերզեուլեան գանձը, թաղուած 2րդ դարի վերջերին: Նրա պարունակութեան մէջ մենք տեսնում ենք հետեւեալը.*

| | Հատ |
|---|---|
| *Ոսկի, ստատեր, ընդօրինակութիւն Լիսիմաքոսից* | 1 |
| *Արծաթ, դենար, Աւգոստոս Օկտաւիանոս* (2—11) | 1 |
| *Արծաթ, կէսդրամ, Ներոն* (54—68) | 1 |
| *Արծաթ, երկդրամ, Վեսպասիանոս* (69—79) | 21 |
| *Արծաթ, դրամ, Վեսպասիանոս* (69—79) | 8 |
| *Արծաթ, կէսդրամ, Վեսպասիանոս* (69—79) | 1 |
| *Արծաթ, երկդրամ, Դոմիտիանոս* (81—96) | 8 |
| *Արծաթ, դրամ, Դոմիտիանոս* (81—96) | 1 |
| *Արծաթ, երկդրամ, Ներուա* (96—98) | 22 |
| *Արծաթ, երկդրամ, Տրայիանոս* (98—117) | 80 |
| *Արծաթ, դրամ, Տրայիանոս* (98—117) | 84 |
| *Արծաթ, կէսդրամ, Տրայիանոս* (98—117) | 1 |
| *Արծաթ, երկդրամ, Հադրիանոս* (117—138) | 2 |
| *Արծաթ, դրամ, Հադրիանոս* (117—138) | 13 |
| *Արծաթ, կէսդրամ, Հադրիանոս* (117—138) | 75 |
| *Արծաթ, դրամ, Անտոնինոս Պիոս* (138—161) | 63 |
| *Արծաթ, երկդրամ, Լուկիոս Վերոս* (161—169) | 28 |
| *Արծաթ, երկդրամ, Մ. Աւրելիոս* (161—180) | 59 |
| *Ընդամէնը՝* | 469 |

Կուտակուած միւսորները 1—2րդ դարերից պահպանուած ատտիկեան քաշի արծաթեայ դրամեաններ (ΔΡΑΧΜΗ), երկդրամեաններ (ΔΙΔΡΑΧΜΟΝ) եւ կէսդրամեաններ (ΗΜΙΔΡΑΧΜΟΝ) են։ Ընդհանուր թուով յիշեալ 469 դրամներից 467ը թողարկուել են Կապադովկիայի Կեսարիա քաղաքում, որ ի կապը Վրաստանի արեւմտեան շուկաների հետ եղել է անմիջական, հաւանաբար Տրապիզոնից Սեւ ծովի վրայով անցնող առեւտրի շնորհիւ [37]։ Գանձի դրամները ներկայացնում են կայսրութեան դրամային շրջանառութեան ամենածաւալուն ժամանակը, երբ ապրանքափոխանակութեան մէջ դերիշխում էին Տրայիանոսի, Հադրիանոսի, Անտոնինոս Պիոսի, Լ. Վերոսի եւ Մ. Աւրելիոսի պատկերներով դրամները [38]։ Սակայն Գերդեուլեան գանձը կապադովկիական ծագում ունեցող դրամներով բնորոշ է հիմնականում Սեւ ծովին մերձաւոր շրջանների տնտեսութեանը [39]։

---

[37] Голенко, 65.

[38] Վերջերս Գերդեուլեան գանձից Վրաստանի թանգարանը ձեռք է բերել եւս 8 արծաթեայ դրամներ, որոնք ժամանակագրական փոփոխութիւն չեն մտցնում եղած տուեալների համար։

[39] ПМК, II, № 346; III, № 771; IV, № 1047, 1051; V, № 1409—1411, 1416, 1417; VII, № 1739; VIII, № 1919, 1923.

*Անդրկովկասի արեւելեան մասերում այդ հոսանքը թուլանում է եւ նամանաւանդ Աղուանքի համար այն գրեթէ տակաւին փաստուած չէ: Հայաստանում արձանագրուած միակ եւ բարեբախտաբար ամբողջութեամբ պահպանուած վկայութիւնը Գառնիում գտնուած կայսերական դենարների գանձն է: Նրա մէջ ամփոփուել են հետեւեալ դրամային միաւորները·*

| | Հատ |
|---|---|
| *Արծաթ, դենար, Վեսպասիանոս* (69—79) | 8 |
| *Արծաթ, դենար, Տիտոս* (79—81) | 1 |
| *Արծաթ, դենար, Տրայիանոս* (98—117) | 3 |
| *Արծաթ, դենար, Հադրիանոս* (117—138) | 13 |
| *Արծաթ, դենար, Անտոնինոս Պիոս* (138—161) | 16 |
| *Արծաթ, դենար, Մ. Աւրելիոս* (161—181) | 6 |
| *Արծաթ, դենար, Կոմմոդոս* (182—192) | 2 |
| *Ընդամէնը՝* | 49 |

*Գանձն իր պարունակութեան դրամներով թէեւ քանակապէս մեծ չէ, բայց լիովին արտացոլում է դրամային շրջանառութեան այն կարգը, որ եղել է Հայաստանում 2րդ դարի վերջերին: Յիրաւի, այսպիսին է եղել ոչ միայն Հայաստանում, այլ եւ միջազգային շրջանառութեան մէջ տարածուած հռոմէական դրամների բնորոշութիւնը*

*2րդ դարի կէսից, մնալով տիրապետող մինչեւ 3րդ դարի առաջին քառորդը։ Ըստ էութեան Անտոնինոս Պիոսի, Մ. Աւրելիոսի եւ Կոմմոդոսի կայսրութեան տարիներին հռոմէական դրամների տարածումը հասել էր աշխարհագրական ընդգրկման առաւելագոյնին*[40]*։ Հայաստանը ամբողջութեամբ այդ ոլորտի մէջ էր ընդգրկուած ունենալով իր բացառիկ դերը իբրեւ եզրաշխարհ Արեւելքի եւ Արեւմուտքի միջեւ։*

*Հռոմէական դրամների ընդհանուր հոսանքի հետ, խիստ հազուադէպ, Հայաստան էին թափանցել հաւանաբար այս ժամանակներում նաեւ Հռոմին ենթակայ Բոսփորի թագաւորութեան դրամները, որոնցից հատ ու կենտ նմուշներ գտնուել են Արտաշատի աւերակներում*[41]*։ Սակայն հէնց այս 2րդ դարի վերջերին հայոց մայրաքաղաքի ներսում զարգացող ներքին առեւտրի պահանջով առաջ էր եկել նաեւ պղնձեայ դրամների տեղական թողարկում, ըստ որում ոչ թէ Հռոմի կայսեր կամ Արշակունի միապետի, այլ քաղաքամայր Արտաշատի անունով* ΑΡΤΑΞΙϹΑΤωΝ ΜΗΤΡΟΠΟΛΕωϹ *յունա-*

---

[40] КРМ, 17.

[41] *ՀՊԹ*, *թիւ* 8611, 11022, 13320։

տառ արձանագրութեամբ: Յայտնի է, որ Արտաշատը նշանաւոր էր դարձել Փոքր Ասիայից եւ Միջագետքից դէպի Կովկաս, Միջին ու Հեռաւոր Արեւելք տանող քարաւանային առեւտրում: Ժամանակագրական առումով Արտաշատի քաղաքային դրամները ծագել են 183 թուին, ինչպէս ապացուցել է դրամագիտութեան ֆրանսիական դպրոցի երախտաւորներից Էռնեստ Բաբելոնը[42] եւ վերջինիս հետեւելով հայագէտ Կարապետ Բասմաջեանը[43]: Ընդհանուր գնահատութեամբ թողարկումը կատարուել է Կոմմոդոսի (182—192) կայսրութեան, այսինքն Հայաստանում նրան ժամանակակից Արշակունի Վաղարշ Բ.ի թագաւորութեան տարիներին: Մինչ այդ ոչ Արտաշէսեանների ժամանակներում եւ ոչ էլ առաջին Արշակունիների օրօք, Հայաստանի որեւէ քաղաքի անունից դրամներ չեն թողարկուել: Այդ տեսակէտից Արտաշատի դրամը բացառիկ է, պայմանաւորուած ոչ միայն ներքին չա—

---

[42] E. Babelon, Artaxisata. Revue Numismatique, s. IV, vol. XV, Paris, 1911, p. 363.

[43] Կ. Յ. Բասմաջեան, Հայկական ընդհանուր դրամագիտութիւն եւ Հայաստանի վերաբերեալ դրամներ, Վենետիկ, 1936, էջ 63—64:

կայի զարգացման պահանջով, այլ եւ քաղաքական այն իրավիճակով, որ նուաճել էր հայոց մայրաքաղաքը: Արեւելքում կայսերական Հռոմի գերիշխանութեան մէջ, միջազգային առեւտրի խոշոր նշանակութեան առանձին քաղաքներ ունէին ինքնավարութիւն եւ թողարկում էին իրենց դրամները: Այդպիսին էին Անտիոքը, Ապամէան, Լաւդիկէն, Նիկոպոլիսը, Դամասկոսը եւ ուրիշները[44]: Թողնելով քաղաքային կեանքի զարգացմանը վերաբերող այս հարցը առանձին քննութեան, նշենք, որ 2րդ դարի վերջերին Արտաշատում կերտուած դրամներն իրենց պատկերագրութեամբ դեռեւս պահպանում էին հելլենիստական դարաշրջանին բնորոշ տուեալները: Նախ եւ առաջ դրանք օժտուած էին զուտ դիցաբանական նշանակութեան պատկերներով, նուիրուած քաղաքի բախտի, ինչպէս նաեւ նրան յաղթութիւն պարգեւող դիցուհիների պաշտամունքին:

---

[44] Barclay V. Head, Historia Numorum. A manual of Greek numismatics. New and enlarged edition, Oxford, 1911. Reprint, London, 1963, p. 775—805.





Մայրաքաղաք Արտաշատի դրամը, թողարկուած երկրորդ դարի վերջին։ Մեծացուած 3 անգամ

Այդ իմաստի պատկերները հելլենիստական քաղաքների համար լայնօրէն յայտնի էին անցեալում, նամանաւանդ Մեծն Տիգրանի իշխանութեան տարիներին: Բացի դրանից, Արտաշատի դրամների վրայ նշուած արձանագրութիւնները յունարէն էին, չնայած հռոմէական գերիշխանութեան ներքոյ էր երկիրը եւ առեւտրի մէջ տարածուած էին Հռոմի կայսրութեան լատինատառ դրամները: Արտաշատի դրամը կարեւոր նշանակութիւն ունեցող եւ բարեբախտաբար շատ լաւ պահպանուած վկայութիւն է: Այն ներկայացնում է իր ժամանակը առանց միջնորդութեան եւ վերաբերում է 2րդ դարի վերջին տարիների քաղաքական կեանքի պատմութեանը:

Դրամի պատկերագրութեան մանրամասնութիւնները, կերտուածքին բնորոշ տուեալները ներկայացւում է նրա մեծադիր պատկերով:

Սակայն մենք չգիտենք թէ մինչեւ ե՞րբ է տեւել քաղաքային այդ դրամների թողարկումը Արտաշատում եւ կշռային ի՞նչ ստորաբաժանումներով, պատկերագրութեան ինչպիսի՞ տարբերակներով են դրանք հանդէս եկել: Հայկական ՍՍՀ տարածութեան

*վրայ եւ հարեւան երկրների դրամագիտական նիւթերի մէջ դրանք հազուագիւտ են: Լինելով պղնձից Արտաշատի դրամները արտաքին առեւտրական գործարքներում ընդունելի չէին կարող լինել եւ քաղաքային շրջանառութեան ներքին ոլորտից շատ հեռու անցել չէին կարող: Այդպիսիները դրուագւում էին քաղաքի ներսում ընթացող մանրածախ փոխանակութեան համար, հետեւաբար պէտք է որ գտնուեն առաւելապէս տեղական նիւթերի մէջ: Բացառուած չէ, որ առաջիկայում Արտաշատի աւերակների հնագիտական պեղումները կարող են նոր վկայութիւններ ի յայտ բերել քաղաքային կեանքի այս շրջանի համար, ինչպէս նաեւ պատմական շատ այլ հարցերի վերաբերեալ:*

*Այդուհանդերձ, Հայաստանի դրամական շրջանառութեան բնորոշութիւնը կազմում էին Հռոմի կայսրութեան արծաթեայ դրամները, որոնք միջազգային լայն տարածում ունէին ինչպէս Արշակունիների հաստատման, այնպէս էլ նրանց հզօրութեան այն տարիներին երբ Արտաշատում թողարկուեցին վերոյիշեալ պղնձեայ դրամները: 2րդ դարի վերջերին արդէն Մ. Աւրելիոսի,*

Լ. Վերոսի եւ Կոմմոդոսի դենարների հետ հայկական շուկաներն էին թափանցում նաեւ հռոմէական կայսրուհիներ Ֆաուստինա կրտսերի, Կրիսպինայի (180—183) եւ Յուլիա Դոմնայի (193—211) պատկերներով արծաթեայ դրամները, որոնք իրենց ժամանակակից ու նախորդ տասնամեակներից մնացած հռոմէական դրամների հետ միասին սպասարկում էին երկրի ապրանքափոխանակութեան պահանջները: Մինչեւ 3րդ դարի սկիզբը հիմնականում այս տուեալներով է դիտւում դրամական շրջանառութեան զարգացումը Հայաստանում: 214 թուից Հռոմի կայսր Կարակալայի (198—217) դրամական վերանորոգումով որոշակի փոփոխութիւններ կատարուեցին դրամա-կշռային դրութում: Արծաթի գծով սկսեցին թողարկուել նոր դրամային միաւորներ, այսպէս կոչուած «Անտոնինիաններ», որոնցից իւրաքանչիւրի կշիռը նշւում է 4,70—5,30 գրամ: Սակայն դրանք աստիճանաբար կորցնելով իրենց արծաթի պարունակութիւնը, արժէքազրկուած միջազգային առեւտրում, Հայաստանում կարեւոր դեր չեն ունեցել:

3րդ դարի առաջին կէսին Հայաստանում

խիստ թուլանում է հռոմէական դրամների հոսանքը, բայց այդ ժամանակներից սկսած շրջանառութեան մէջ էին նոր կշռային չափերով եւ միանգամայն նոր պատկերագրութեամբ օժտուած դրամներ: Դրանք Իրանի Սասանեան թագաւորութեան դրամներն էին, որոնց վիճակուած էր շուրջ հինգ հարիւր տարի խշխել միջազգային ապրանքափոխանակութեան գործարքներում: Սասանեան դրամական դրութի եւ Հայաստանում տարածուած սասանեան դրամների պատկերագրութեան, նրանց ունեցած դերի ու նշանակութեան, ինչպէս նաեւ այլ հարցերի մասին կ'անդրադառնանք առանձին:

Ի մի բերելով Հայաստանում 1—2րդ դարերում տարածուած դրամների տուեալները, կարելի է Հայոց Արշակունի դահակալների տարեգրութեանը զուգահեռ ցոյց տալ կայսերական դրամների ժամանակագրութիւնը: Այլ կերպ ասած հիմք ընդունելով երկրի դրամական շրջանառութեան օրինաչափութիւնները կարելի է իմանալ թէ Արշակունիների հաստատումից մինչեւ 3րդ դարի սկիզբը Միջազգային առեւտրի հայկական ոլորտը ինչպիսի հռոմէական դրամներ են տարածուել:

| Հայաստանի Արշակունեաց գահակալները | Հայաստանում տարածուած դրամները (յիշատակւում են պատկերագրութեամբ) |
|---|---|
| *Տրդատ Ա.*<br>(66—75) | *Աւգոստոս Օկտաւիանոսի,*<br>*Ներոնի* (54—68)<br>*Վեսպասիանոսի* (69—79) |
| *Սանատրուկ*<br>(75—110) | *Տրայիանոսի* (98—117)<br>*եւ նախորդ կայսերների օրօք թողարկուած դրամները* |
| *Աշխադար*<br>(110—113) | *Նոյնը* |
| *Պարթամասիր*<br>(113—114) | *Նոյնը* |
| *Վաղարշ Ա.*<br>(117—140) | *Օկտաւիանոսի, Ներոնի, Վեսպասիանոսի, Տրայիանոսի, Հադրիանոսի* (117—138) |
| *Սոյեմոս*<br>(140—161) | *Անտոնինոս Պիոսի* (138—161) *եւ նրա նախորդների դրամները* |
| *Բակուր*<br>(161—163) | *Մ. Աւրելիոսի* (161—180)<br>*Լ. Վերոսի* (161—169) *եւ նախորդների կայսերական դրամները* |
| *Սոյեմոս երկրորդ անգամ*<br>(164—185) (°) | *Մ. Աւրելիոս* (161—180)<br>*Լ. Վերոս* (161—169) *եւ նրանց նախորդների կայսերական դրամները* |
| *Վաղարշ Բ.*<br>(186—193) (°) | *Կոմմոդոսի* (177—182) *եւ նրա նախորդների կայսերական դրամները* |

| Հայաստանի Արշակունեաց գահակալները | Հայաստանում տարածուած դրամները (յիշատակւում են պատկերագրութեամբ) |
| --- | --- |
| *Խոսրով Ա.* (193—216) | *Սեպտիմոս Սեւերոսի* (193—211), *Կարակալլայի* (198—217) *եւ նրանց նախորդների թողարկած կայսերական դրամները* |
| *Տրդատ Բ.* (216—253) | *Հռոմէական կայսրութեան դրամների նուազումը եւ սասանեան դրամների թափանցումը։* |

*Այսքանով սպառում ենք մեր դիտողութիւնները Հայաստանի դրամական շրջանառութեան մասին 1—2րդ դարերի վերաբերեալ։*

## ԳԼՈՒԽ Դ.

# ՍԱՍԱՆԵԱՆ ԵՒ ՎԱՂԲԻՒԶԱՆԴԱԿԱՆ ԴՐԱՄՆԵՐԻ ՇՐՋԱՆԱՌՈՒԹԻՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

*Պարթեւների անկումը եւ Սասանեանների հաստատումը Իրանում որոշ ուշացումով արտացոլուեց դրամային շրջանառութեան մէջ: Չնայած Սասանեանները իրենց տոհմի առաջին իսկ գահակալի՝ Արտաշիր Ա.ի (224—241) թագաւորութեան տարիներից, ի տարբերութիւն Պարթեւների, սկսեցին թողարկել բոլորովին նոր պատկերագրութեան դրամներ, որով եւ նոր դարագլուխ բացուեց Արեւելքի դրամագործութեան մէջ, սակայն այդ վաղսասանեան դրամները դեռեւս շատ չնչին էին ամենուրեք իշխող հռոմէական դենարների հանդէպ: Հետագայում, գնալով ծաւալուեց սասանեան դրամների թողարկումը, որոնց վիճակուած էր Ե.—Զ. դարերում անբաժան իշխել ոչ միայն բուն Իրանում, այլեւ Հայաստանի ու հարեւան երկրների ապրանքափոխանակութեան մէջ: Յիրաւի, եթէ վերջին Պարթեւների օրօք Իրանի դրամա-կշռային դրութիւնը տակաւին կորցրել էր իր երբեմնի ունեցած տիրակալ*

դերը միջազգային առեւտրում, այս Սասանեանների ժամանակ այն նորից բարձրացաւ: Իրանի ու Հռոմի դարաւոր մրցակցութիւնը որոշակի դիտւում է Հայաստանի դրամային շրջանառութեան ոլորտում նրանց ունեցած դրամների յարաբերակցութեամբ: Տնտեսական կեանքի հայկական կենդրոններում, Իրանի հետ կապուած առեւտրի շնորհիւ, սկսել էին թափանցել սասանեան պատկերագրութեան արծաթեայ դրամներ: Ընդհանուր առմամբ Սասանեան տիրապետութեան դրամա-կշռային դրութեան բնորոշութեան մասին կարելի է դատել նրանց ոսկեայ, արծաթեայ ու պղնձեայ դրամներով: Սասանեան ոսկեայ դրամները խիստ հազուադէպ են: Հայկական աղբիւրներում սասանեան ոսկէ դրամը յայտնի է «դահեկան» անունով, որով եւ դիտւում է աւանդական կապը նախահելլենական շրջանից յայտնի ոսկեայ դրամային միաւորի անուանման հետ[1]:

Սասանեան դահեկանը թողարկուել է սկզբում հռոմէական Աւրէուսի կշռոյին չափով՝ 8,19 դրամ քաշով, որը հետագայում զգալիօրէն նուազեց: Սակայն կարեւոր է այն իրողութիւնը, որ սասանեան ոսկէ դրամը Իրանի եւ Հայաստանի մէջ գործնական նշանակութիւն չի ունեցել եւ մնացել է առաւելապէս իբրեւ հաշուային միաւոր:

---

[1] Я. А. Манандян, О торговле и городах Армении, Ереван, 1954, стр. 171.

Հայաստանում, Վրաստանում եւ Աղուանքի պատմական տարածքի վրայ սասանեան ոսկեայ դրամներ չեն գտնուել :

Հազուագիւտ են նաեւ պղնձեայ սասանեան դրամները : Վերջիններիս յայտնութիւնների մասին փաստեր չկան : Ցամենայն դէպս ոչ Դուինի աւերակների շուրջ երեսնամեայ հնագիտական պեղումներից եւ ոչ էլ Հայաստանի մէջ, թէկուզ պատահականօրէն, պղնձեայ սասանեան դրամներ ի յայտ չեն եկել : Ըստ էութեան, սասանեան պղնձեայ դրամները բուն Իրանի տնտեսութեան համար եւս բնորոշ չեն եղել : Նրանք թողարկուել են խիստ սահմանափակ չափով : Սասանեան պղնձեայ դրամը կոչուել է «դանդ», որի խոշոր միաւորը թողարկուել է մօտ 16 գրամ քաշով եւ ընդունուել է իբրեւ պղնձեայ չորեքդրամ : Թողարկուել են նաեւ այդ դանդ կոչուող պղնձեայ դրամի 1/2 եւ 1/6 մասերը ներկայացնող միաւորներ, որոնք բոլորն էլ Հայաստանի մէջ տարածում չեն ունեցել : Թանգարաններում պահուող նմուշները վկայում են, որ սասանեան դանդերի ձուլուածքի մէջ պղնձից բացի եղել է նաեւ անագի ու արճիճի խառնուրդ :

Հայկական քաղաքներում, ինչպէս եւ ամբողջ Արեւելքում ամենատարածուած սասանեան դրամը եղել է արծաթեայ դրախմը, որը եւ հանդիսացել է Սասանեանների դրամա-կշռային դրութեան

հիմնական միաւորը: Վաղ շրջանում սասանեան դրախման թողարկուել է 3,55—3,88 գրամ քաշով, հիմք ընդունելով Պարսքում եղած արծաթ դրամի կշիռը: Հետագայում, Գ. դարի 30ական թուականներից սասանեան դրախման թողարկուել է մօտ 4 գրամ արծաթ իւրաքանչիւր օրինակի համար, որով եւ հաւասարուել է միջազգային շուկայում դարերէ ի վեր ընդունուած ատտիկեան դրախմայի հետ: Տարբերութիւնը կազմել է մօտ մէկ «դանակ» կամ Պարսքի նախասասանեան դրախմայի 1/6 մասը (0,60 գրամ)[2]: Այդ չնչին փոփոխութիւնը նպաստել է անցեալից մնացած արծաթ դրամների հետ հաշուով սասանեան դրախմաների համատեղ ընդունելութիւնը: Ի հակադրութիւն պղնձի խառնուրդով եւ կերպաձեւ պատկերագրութեամբ թողարկուած ուշպարթեւական դրամների, Սասանեանները շատ բարձր էին պահում արծաթ դրամի որակը: Իւրաքանչիւր միաւորի ձուլուածքի մէջ մաքուր արծաթի պարունակութիւնը տրւում էր առաւելագոյն չափով: Այդ հանգամանքը մեծապէս բարձրացրել էր սասանեան դրախմայի յարգը միջազգային առեւտրում[3]: Բացի դրանից

[2] Lexikon der alten Welt, Artemis, Zürich-Stuttgart, 1965, s. 774.

[3] Е. А. Пахомов, Монетные клады Азербайджана и других республик, краев и областей Кавказа, вып. I—IX, Баку, 1926—1966, вып. I, стр. 34, Այսուհետեւ ПМК.

Սասանեանների հաստատման այս շրջանում, արժէքազրկուել էին Կայսերական Հռոմի արծաթեայ դրամները, որոնց մէջ արծաթի զտութիւնը կիսով չափ նուազել էր[4]: Միջազգային շուկայում նպաստաւոր պայմաններ էին ստեղծուել սասանեան դրախմաների տարածման համար: Դրախմայից բացի, Սասանեանները շատ քիչ չափով թողարկում էին կէս դրախմանոցներ, ինչպէս նաեւ դրախմայի մէկ վեցերորդ մասը կազմող արծաթ դրամներ, որոնք, սակայն առեւտրական գործարքներում լայն ընդունելութիւն չեն ունեցել:

Հայաստանում գտնուած ամենավաղ սասանեան դրամը վերաբերում է Գ. դարի առաջին կէսին: Այն գտնուել է Գառնիում, հեթանոսական ամրոցի 1963 թուականի պեղումների ժամանակ: Բարեբախտաբար դրամը լաւ է պահպանուել եւ հնարաւորութիւն է ընձեռում դատելու պատկերների ու գրութիւնների մասին: Արծաթեայ այդ դրամի մի կողմի վրայ պատկերուած է Սասանեան Արտաշիր Ա. արքան (224—241) մինչեւ կուրծքը, կիսանդրու չափով, դէմքով դէպի աջ, երկար մօրուքով, գլխին արքայական թագը, որը վերեւում աւարտուած է խոշոր գնդաձեւ նշանով: Արքայական կերպարի շուրջը պահլաւերէն գրուած է.

---

4 А. Н. Зограф, Античные монеты, Москва-Ленинград, 1951, стр. 34. Материалы и исследования по Археологии СССР № 16.

«Ահուրամազդայի՛ն պաշտող, տիրակալ Արտաշիր, Իրանի արքայից արքայ, աստուածին»: Դրամի միւս կողմի վրայ պատկերուած է բոցավառուող կրակ, որի շուրջ նոյնպէս պահլաւերէն գրուած է. «Արտաշիրի կրակը»: Զրադաշտական կրօնի պահանջով արքայից արքայի դահակալութիւնը կատարւում էր Իրանի գլխաւոր աստուծոյ՝ Ահուրամազդայի տաճարում, որտեղ երկրի տէրը ստանում էր իր իշխելու իրաւունքը: Ահուրամազդան համարւում էր երկնքի եւ երկրի ստեղծողը, եւ նրա կամքով միայն Իրանի արքան կարող էր հռչակուել աշխարհի միակ տիրակալը: Դրամի վրայ պատկերուած տարուչանը գաղափարական առումով խորհրդանշանն էր: Հայաստանում գտնուել են նաեւ Սասանեան Շապուհ Ա.ի (241—272) եւ Շապուհ Բ. (310—379) արքաների արծաթ դրամները, օժտուած նոյն սկզբունքի պատկերներով ու գրութիւններով[5]: Արտաշիրի մերձաւոր յաջորդների ժամանակ դրամների վրայ պատկերւում էին ոչ միայն արքաները կիսանդրու չափով, այլեւ ողջ հասակով տարուչանի մօտ կանգնած, մի կողմից Իրանի աշխարհիկ տիրակալը, իսկ միւս կողմից՝ Ահուրամազդան: Դիցա–

---

[5] Հայաստանի պատմութեան պետական թանգարան, դրամներ թիւ 1066, 1110, 1116, 1141—1143, 1223, (ծանուցումների հետագայ նշումներում Հայաստանի Պատմութեան պետական Թանգարանը յիշատակւում է համառօտագրուած ՀՊԹ):

կան կերպարների պատկերումը սուրբ համարուող կրակի մօտ յստակօրէն դիտւում է մինչեւ Դ. դարի սկիզբը: Ահուրամազդայից բացի ատրուշանի մօտ պատկերներով ներկայացւում էին նաեւ Միթրան՝ Իրանի արեւի աստուածը եւ կամ թէ կենաց մայր Անահիտը[6]: Պատկերագրութեան յիշեալ ձեւաւորումը որպէս կանոն պահպանուեց մինչեւ վերջին Սասանեան գահակալը: Վահրամ Բ.ի (273—293) ժամանակ շրջանառութեան մէջ էին մտել արծաթ դրամներ արքայական ընտանիքի պատկերով. թագաւորը թագուհու հետ եւ նրանց դիմաց գահաժառանգը, երեքն էլ պճնուած արքայական զարդարանքներով: Որմիզդ Բ. (303—310) արքայի դրամների պատկերագրութեամբ ատրուշանի վրայ պատկերուած բոցերի մէջ ուրուագծւում էր դիցական խմաստի մարդկային մի կերպարանք կիսանդրու չափով[7]:

Վաղսասանեան դրամներն օժտուած էին նաեւ տարբեր խորհրդանշաններով: Յատուկ նշանով հաղորդւում էր արքայի տոհմային ծագումը (կիսալուսին աստղով): Յիշատակւում էր նաեւ գահաժառանգի մասին՝ աստղագուշակութեան «ոսկեցլիկի»

---

[6] В. Г. Луконин, Культура сасанидского, Ирана, Москва, 1969, стр. 153—155.

[7] Robert Göbl, Die Münzen der Sasaniden, S'Gravenhagen 1962, pl. II, Թիւ 36. Այսուհետեւ RGS.

նշանով: Սակայն պատկերագրութեան մէջ ամենակարեւորը թագաւորի գլխին դրուած թագն էր, որը միշտ տարբեր էր լինում իր կառուցուածքի եւ պաճուճանքների մանրամասնութիւններով: Փոխում էր թագաւորը, պէտք է որ փոխուէր նաեւ նրա գլխի թագը: Յիրաւի, Սասանեան արքաներից եւ ոչ մէկը չէր կրում իր նախորդի թագը: Արեաց միապետը հանդէս էր գալիս իր նոր թագով, արքայական մի որոշակի զարդաձեւ, որով կարելի է տարբերել դրամների վրայ դրոշմած դիմաքանդակները, նամանաւանդ վերջին շրջանում, երբ սասանեան պատկերագրութիւնը խիստ պայմանական էր դարձել: Խորհրդանշաններով հարուստ սասանեան դրամները կարեւոր աղբիւրագիտական վկայութիւններ են տալիս պատմութեան եւ մեծապէս կարող են նպաստել մթութեան մէջ մնացած շատ հարցերի պարզաբանմանը[8]: Սակայն խորհրդանշանի խնդիրը դուրս է Հայաստանի դրամային շրջանառութեան զարգացումը ուրուագծելու մեր նպատակից, ուստի այդ մասին մի այլ առիթով: Կարեւոր է նշել այն իրողութիւնը, որ Գ. դարի վերջերից արդէն նկատելիօրէն փոխուել էր Հայաստանի եւ հարեւան

---

[8] К. В. Тревер, Художественное значение сасанидских монет. Труды Отдела Востока Госуд. Эрмитажа, том I, Ленинград, 1940; В. Г. Луконин, Культура сасанидского Ирана, Москва, 1969.

*երկրների դրամային շրջանառութեան կազմը: Գնալով չքանում էին իրենց դարն ապրած պարթեւական ու հռոմէական դրամները եւ առաւել շատ էին դառնում ասպարէզ մտած սասանեան դրախմաները: Զարգացման այս ձգտումը պարզորոշ դիտւում է Աղուանքի մէջ, Կարալա ամրոցից ոչ շատ հեռու, Գ դարի վերջին թաղուած դրամային գանձի պարունակութեամբ: Մէկ գանձի մէջ միատեղ հաւաքուած են պարթեւական, հռոմէական եւ սասանեան արծաթ դրամներ, մի իրողութիւն, որը փաստում է սասանեան դրամների շրջաբերութիւնը Աղուանքում կայսերական ու հին իրանական դրամների հետ միաժամանակ: Թէ՛ պարթեւական, եւ թէ՛ հռոմէական դրամները իրենց ծագմամբ վերաբերում են Ա—Բ դարերին (Գոտարզ, Ոլոգեզ Գ, Տրայանոս, Ադրիանոս), մինչդեռ սասանեան դրամները բոլորն էլ լոյս են տեսել Գ դարի վերջերին, Վարահրան Բ.ի* (274—291) *գահակալութեան տարիներին: Չնայած հին ու նոր դրամների միջեւ ժամանակի աւելի քան* 150 *տարուայ ընդհատում է նկատւում, բայց չի խանգարել նրանց առեւտրի պահանջները միասին սպասարկելու: Գանձի կազմը ցոյց է տալիս մէկ ուրիշ կարեւոր հանգամանք եւս, որ արդէն Գ դարի վերջին շրջաբերութեան մէջ սասանեան դրամները քանակապէս գերակշռութիւն էին ձեռք բերել: Պարթեւական եւ հռոմէական դրամները գան–*

ձում ներկայացուած են հատ ու կենտ նմուշներով, մինչդեռ սասանեանները՝ մօտ երկու հարիւրի չափով: Այդ յարաբերութիւնը պատահական չէ, այլ օրինաչափ արտացոլումն է այն իրավիճակի, որ եղել է Հայկական լեռնաշխարհի հիւսիս-արեւելեան մասում՝ Աղուանքի մէջ, Գ դարի վերջին[9]: Սակայն պատահականութիւն չէ նաեւ պարթեւական ու հռոմէական արծաթ դրամների առկայութիւնը սասանեան դրամների հոծ զանգուածում, թէկուզ եւ շատ քիչ չափով: Այդ նշանակում է, որ Գ դարի վերջին շրջանառութիւնից նրանք չէին վերացել եւ ապրանքա-փոխանակութեան գործարքներում սասանեան դրամների հետ հաւասարապէս ընդունելի են եղել: Բայց նկատենք, որ շրջանառութեան մէջ հին դրամներից ընդունուել են միայն այնպիսիները, որոնք իրենց զտութեամբ ու կշռային չափերով չեն տարբերուել սասանեան դրախմաներից: Որոշակի այդ ցուցմունքը պարզորոշ արտայայտուած է Աղուանքի դրամային գանձով, թաղուած Գ—Դ դարերի սահմանագլխին[10]:

---

[9] В. В. Кропоткин, Новые находки римских монет в СССР (дополнение к «Своду археологических источников», вып. Г-4-4), Институт Археологии АН СССР, Нумизматика и Эпиграфика, том VI, Москва, 1966, стр. 74; К. В. Голенко, Заметки об обращении римской монеты в Закавказье, ВДИ, 1971, № 4, № 65.

[10] В. В. Кропоткин, Новые находки римских монет, նշ. աշխ. էջ 74։

Տարաբախտաբար Դ դարի վերաբերեալ Հայաստանում եւ հարեւան երկրներում թաղուած գանձային վկայութիւններ չունենք: Այդուհանդերձ, կասկածից վեր է, որ դրամային շրջանառութիւնը շարունակել է զարգանալ սասանեան դրախմաների բացարձակ առաւելութեամբ: Արտաքին առեւտրի հետ կապուած, Դ դարի վերջերին շրջանառութիւնը տեղ-տեղ լիցքաւորուել է ուշհռոմէական դրամներով, որոնց հատանքը, թէկուզ եւ թոյլ, բայց եղել է: Այդ մասին է վկայում Երեւանում գտնուած արծաթեայ դրամների մի գանձ, որի մէջ պահպանուել են Թէոդոս Ա. (379—395), Ոնորիոս (393—425) եւ Վալենտինիանոս Գ. (425—455) կայսրների պատկերներով ուշհռոմէական արծաթ դրամները[11]: Նկատենք որ տուեալ ժամանակներում կայսրութիւնը ձգտելով վերականգնել իր արծաթ դրամի նշանակութիւնը, թողարկում էր 4,55 գրամ քաշով բարձրորակ արծաթից դրամներ: Միաւորը կոչւում էր միլիարէնս[12] եւ արտայայտում էր ուշհռոմէական վերջին փորձը փրկելու գահավիժօրէն անկող կայսերական արծաթ դրամի յարգը միջազգային շուկայում[13]: Միլիարէնսի մի կողմի վրայ դրոշմուած էր

---

11 ПМК, № 51.

12 Fr. Schrötter, Wörterbuch der Münzkunde, Berlin, 1930, p. 390.

13 Lexikon der alten Welt, Artemis, Zürich-Stuttgart, 1955, p. 1959.

*կայսեր պատկերը, ռազմի տարազով, գլխին սաղաւարտ, ձեռքին նիզակ, իսկ միւս կողմի վրայ գլնուած մարդկային մի կերպարանք, կանգնած նաւի վրայ, շուրջը լատինատառ արձանագրուած. «Փառք Հռոմէացիներին»*[14]:

*Պատկերներն ու գրութիւններն ուշհռոմէական դրամների վրայ յաճախ փոխւում էին, կախուած քաղաքական այն իրավիճակից, որի մէջ գտնւում էր կայսրութիւնը: Սակայն ուշագրաւ է, որ ի տարբերութիւն Սասանեանների, Հռոմի կայսրութիւնը իր մայրամուտին հաստատուն դարձրեց ոսկեայ դրամների թողարկումը, որը շարունակուեց բիւզանդական շրջանում: Առեւտրի հայկական շուկաներում նշանակալից տարածում են ունեցել Բիւզանդիայի մայրաքաղաք Կոստանդնուպոլսում թողարկուած ոսկեայ դրամները: Յայտնի է, որ դեռեւս* 387 *թուականից Հայաստանի մեծագոյն մասը անցել էր Իրանի գերիշխանութեան ներքոյ եւ կառավարւում էր Սասանեան փոխարքայի՝ Մարզպանի կողմից: Արեւմտեան Հայաստանը ենթակայ էր այսպէս կոչուած Արեւելեան Հռոմէականին, որը հետագայում յայտնի դարձաւ իբրեւ Բիւզանդական կայսրութիւն: Այս շրջանում ուշհռոմէական եւ վաղբիւզանդական ոսկեդրամը կոչւում էր*

---

[14] David R. Sear, Roman coins and their values, London, 1964, p. 256.

սոլիդ (solidus) եւ կշռում էր 4,55 գրամ։ Սոլիդը կազմում էր Հռոմէական ֆունտի 1/72 մասը կամ այլ կերպ ասած չորս սկրիպուլ (scripulum)[15] եւ կամ թէ հռոմէական ունցիայի 1/6 մասը (27,288 : 6=4,55)։ Առեւտրի միջոցով Արեւելեան Հռոմի կայսրութիւնից հայկական քաղաքներն էին թափանցում նաեւ սոլիդի 1/2 ու 1/3 կշռային մասերը ներկայացնող սեմիս (semis 2,274 գրամ) եւ տրիենս (triens 1,516 գրամ) կոչուած ոսկեայ դրամային միաւորները[16]. Փոխանակութիւնը, ոսկու եւ արծաթի միջեւ կատարւում էր 1 : 14 յարաբերութեամբ[17]։ Առանձին օրինակներով Դ—Ե դարերի ոսկեայ դրամների յայտնութիւնները Հայաստանում թոյլ են տալիս ենթադրելու, որ վաղբիւզանդական սոլիդները թափանցել են հայկական շուկաները արտաքին բերումով։ Այսպէս օրինակ, Դուինի քաղաքի աւերակներում գտնուել են ոսկեայ դրամներ Թէոդոս Բ. (408—450) եւ Լեւոն Ա. (457—474) կայսրների պատկերներով, դրուագուած Կոստանդնուպոլիս քաղաքում[18]։

---

[15] Հռոմէական կշռային չափով մէկ սկրիպուլն ընդունուած էր 1,137 գրամ, Schrötter, Wörterbuch der Münzkunde, էջ 642։

[16] Fr. Schrötter, Wörterbuch der Münzkunde, p. 642. A. H. Зограф, Античные монеты նշուած աշխ. էջ 54։

[17] Fr. Schrötter, Wörterbuch der Münzkunde, p. 390.

[18] ՀՊԹ, թիւ 14450, 17173/1։

Նմանօրինակ ոսկեայ դրամներ ի յայտ են եկել Աշտարակի եւ Կոտայքի շրջաններում[19]: Ոնորիոս կայսեր պատկերով (393—423) ոսկեայ դրամներ գտնուել են Յովհաննավանքում եւ Ղարսի շրջանում[20]: Նոյն Յովհաննավանքում գտնուել է նաեւ Յուլիոս Նեպոսի (475 թ.) ոսկեդրամը[21]: Դիլիջանի շրջանում նոյնպէս գտնուել է Թէոդոս Բ. կայսեր ոսկեայ դրամը[22]: Սրանք անշուշտ պատահականութիւններ չեն:

Կոստանդնուպոլսի մէջ կտրուած վաղբիւզանդական ոսկեայ դրամներ առանձին օրինակներով գտնուել են Հայաստանին մերձաւոր Վրաստանում, յատկապէս նրա արեւելեան շրջաններում: Դրանցից յիշատակելի են հայաբնակ Բոլնիս Խաչէնում[23], ինչպէս նաեւ Թելաւում, Գորիում, Մցխեթում գտնուած ոսկեայ դրամները, թողարկուած Թէոդոս Ա. (379—395), Թէոդոս Բ. (408—450) եւ Լեւոն Ա. (457—474) կայսրների իշխանութեան տարիներին[24]: Այս ժամանակներին վերաբերող ոսկեայ կամ արծաթեայ դրամական գանձեր չեն գտ–

---

[19] ՀՊԹ, թիւ 17168, 14520:

[20] ՀՊԹ, թիւ 16039, 16149:

[21] ՀՊԹ, թիւ 17168:

[22] ՀՊԹ, թիւ 14459:

[23] В. В. Кропоткин, Клады римских монет на территории СССР, Свод археологических источников, Г 4—4, Москва, 1961, № 1570.

[24] Նոյնը, № 1625, 1629, 1630, 1663, 1666, 1592, 1578.

նուել: Այդուհանդերձ, իրանական արժաթին դուդընթաց վաղբիւզանդական ոսկու տարածումը Հայաստանում, թէկուզ եւ չնչին չափով, միանգամայն հաւանական է: Հայաստանի աշխարհագրական դիրքը կարեւոր նշանակութիւն ունէր Արեւելքի եւ Արեւմուտքի միջեւ կատարուող ապրանքափոխանակութեան համար: Յայտնի է, որ 408—409 թուերին Իրանի եւ Բիւզանդիոյի միջեւ յատուկ պայմանագիր էր կնքուած, որի համաձայն միջազգային առեւտուրը կատարւում էր երեք որոշակի կենտրոններում՝ Մծբին, Կալլինիկում եւ Արտաշատ քաղաքներում:

Արտաշատում, ինչպէս միշտ, հանդրուանում էին տարբեր երկրներից ժամանած ապրանքային կարաւանները: Հնագիտական պեղումները հաստատեցին, որ Արաքսի ափին Դ դարի առաջին կէսից Արտաշատի մօտ աճել էր Դուին քաղաքը, որը Ե—Է դարերում դառնալով արհեստների ու առեւտրի խոշոր կենդրոն ժառանգել էր Արտաշատի դերը տարանցիկ ապրանքա-փոխանակութեան գործում: Այդ ժամանակներին է վերաբերում բիւզանդական պատմիչ Պրոկոպիոս Կեսարացու այն յիշատակութիւնը, որ Դուինի շուրջ «մարդաշատ գիւղերը բնակուած են առեւտրականներով, որոնք հեռու Հնդկաստանից, հարեւան Վրաստանից եւ պարսիկների եւ նոյնիսկ հռոմէացիների հպատակութեան ներքոյ գտնուող գրեթէ

բոլոր տեղերից այստեղ են բերում ապրանքներ, որոնցով նրանք առեւտուր են անում»[25]: Հետեւաբար ուշհռոմէական եւ վաղբիւզանդական ոսկեայ դրամների թափանցումը Հայաստան Դ—Ե դարերում կարող էր կատարուել ինչպէս կայսրութիւնից Հայաստան, այնպէս էլ Հայաստանից կայսրութիւն գնացող կարաւանային առեւտրի շնորհիւ: Զնայած տարբեր բնոյթի կրօնական պատկերների, որոնք դրոշմուած էին բիւզանդական ոսկեայ եւ սասանեան արծաթեայ դրամների վրայ. մէկը՝ քրիստոնէութեան խաչի նշանով, միւսը՝ զրադաշտութեան ատրուշանի, սակայն այդ պատկերները ապրանքադրամական գործարքների կատարումը չէին խանգարում: Ապրանքա–փոխանակութեան գործնական պահին գաղափարական պատրանքները ետ էին քաշւում: Պատկերները գրկւում էին իրենց իմաստից, կրօնական հակամարտութիւնը վերանում էր եւ փոխանակութեան համար մնում էին լոկ ոսկեայ կամ արծաթեայ դրամային միաւորների մետաղեայ մարմինները: Վաճառականի հա-

---

[25] Прокопий Кесарийский, История войн римлян с персами, Перевод с греческого Спиридона Дестуниса, СПБ, 1880, книга П, стр. 181—182. Տես նաեւ Օտար աղբիւրները Հայաստանի եւ հայերի մասին, 5. Բիւզանդական աղբիւրներ Ա. Պրոկոպիոս Կեսարացի, Թարգմանութիւն բնագրից, առաջաբան եւ ծանօթագրութիւններ, Հրաչ Բարթիկեանի, Երեւան, 1967, էջ 142:

մար կարեւորն իր ունեցած ոսկու կամ արծաթի զտութիւնը ու կշռային չափն էր: Արտաքին ձեւը միշտ էլ կարող էր փոխուել: Սակայն վաղբիզանդական դրամները Հայաստանում լայն տարածում չեն ունեցել եւ Դ—Զ դարերին վերաբերող գանձերի բացակայութիւնը իւրովի արտացոլում է այդ վիճակը: Շրջանառութեան մէջ առաւելութիւնը մնում էր սասանեան արծաթ դրամին եւ այդ առաւելութիւնը բացարձակ դարձաւ յատկապէս Ե—Է դարերում:

Շապուհ Բ. (383—388), Վռամ (Վարահրան) Ե. (420—438), Պերոզ (457—483), Կաւատ (483—531), Ջամասպ (497—499) Սասանեան թագաւորների պատկերներով արծաթ դրամների յայտնութիւնները Հայաստանում հազուադէպ չեն: Ե դարի կէսից սասանեան դրամների պատկերագրութեան մէջ կատարւում է մի էական լրացում. պահլաւերէն կրճատ գրութեամբ նշւում է այն քաղաքի կամ երկրի անունը, որտեղ դրոշմուել է տուեալ դրամը: Քաղաքային կեանքի զարգացման պահանջով դրամները թողարկւում էին Սասանեանների տիրակալութեան տարբեր կենտրոններում: Դրամագիտների հաշուառքը հնարաւորութիւն է ընձեռում բացայայտելու, թէ առեւտուրն Իրանի որ մարզերից էր դրամները բերում հայկական շուկաները: Այդ տեսակէտից ուշագրաւ են Է. դարի գանձերը: Առաւել հարուստ վկայութիւններով յայտնի են երկու խոշոր գան-

ձեր, որոնցից մեկը գտնվել է Շիրակում (Լենինական)[26], իսկ մյուսը՝ Արարատում (Դվին)[27]։ Այդ երկու գանձերի մեջ էլ առկա են երկու տարբեր, բայց Հայաստանի համար բնորոշ դրամներ։ Լենինականի գանձը բաղկացած է 92 սասանյան դրախմաներից և 16 բյուզանդական հեքսագրամներից, որոնք ներկայացնում են.

| | Դրամ |
|---|---|
| Սասանյան, Կավատ Ա. (488—497, 499—531) | 2 |
| Սասանյան, Խոսրով Ա. (531—579) | 4 |
| Սասանյան, Որմիզդ Դ. (579—590) | 59 |
| Սասանյան, Խոսրով Բ. (590—628) | 26 |
| Սասանյան, Արտաշիր Գ. (628—630) | 1 |
| Բյուզանդական, Հերակլես և Հերակլես-Կոստանդին (610—641) | 3 |
| Բյուզանդական, Հերակլես, Հերակլես-Կոստանդին և Հերակլեոն (629—641) | 2 |
| Բյուզանդական, Կոստանդ Բ. (641—654) | 10 |
| Բյուզանդական, Կոստանդ և Կոստանդին (654—659) | 1 |
| Ընդամենը՝ | 108 |

[26] М. И. Камера, К. В. Голенко, Ленинаканский клад сасанидских и византийских монет (1956 г.). Византийный временник, том XIX, стр. 172—193.

[27] Х. А. Мушегян, Денежное обращение Двина по нумизматическим данным, Ереван, 1962, стр. 122—138.

Բիւզանդական դրամները բոլորն էլ դուրս են եկել կայսրութեան մայրաքաղաքից[28]: Սասանեան դրամները յիշատակում են Իրանի հետեւեալ քաղաքները.

| | Դրամ |
|---|---|
| Ռէյ | 22 |
| Մերվ | 10 |
| Նիհավենդ | 8 |
| Աբրշահր | 7 |
| Ձերենջ | 7 |
| Բիշապուր | 6 |
| Իստախրի | 4 |
| Նախճեւան | 4 |
| Նահրտիրհ | 2 |
| Ռամհորմուզդ | 2 |
| Ծոչ | 3 |
| Տիգրոն | 1 |
| Արտաշիր-Խուրահ | 2 |
| Դարաբջիրդ | 1 |
| Ռիվ-Արտաշիր | 1 |
| Անորոշ | 12 |
| Ընդամէնը՝ | 92 |

Եթէ խմբաւորենք յիշեալ տեղանուն-ները ըստ երկրամասերի, ապա մեր առաջ կը ներկայանան Սասանեան Իրանի հետեւեալ մարզերը.

---

[28] М. И. Камера, К. В. Голенко, նշուած աշխ. էջ 193:

| | Դրամ |
|---|---|
| Ջերալ–Բէյ, Նիհավենդ | 30 |
| Խորասան–Մերվ, Աբրշահր | 17 |
| Ֆարս–Իստախրի, Արտաշիր–Խուրահ, Դարաբջիրդ, Բիշապուր | 14 |
| Խուզիստան–Րամհորմուզդ, Ծօշ Նահրտիրհ | 7 |
| Սեջիստան–Զերենջ | 7 |
| Իրաք–Տիզբոն | 1 |
| Հայաստան (Նախճեւան) | 4 |
| Անորոշ | 12 |
| Ընդամէնը՝ | 92 |

Դուինի գանձից պահպանուած դրամները ներկայացնում են հետեւեալ ժամանակագրական տուեալները.

| | Դրամ |
|---|---|
| Սասանեան, Կաւատ Ա. (488—497) | 1 |
| Սասանեան, Խոսրով Ա. (531—579) | 12 |
| Սասանեան, Որմիզդ Դ. (579—590) | 7 |
| Սասանեան, Խոսրով Բ. (590—628) | 149 |
| Բիւզանդական, Հերակլէս եւ Հերակլէս–Կոստանդին (610—641) | 98 |
| Ընդամէնը՝ | 267 |

Նախապէս նկատենք, որ բոլոր սասանեան արծաթ դրամները դրախմաններ են (3,85—4,05), իսկ բիւզանդականները՝ կրկնակի միլիարիսներ կամ հեքսագրամանոց–

ներ, արժաթի 6,50—6,90 դրամ կշռով իւրաքանչիւր միաւորի համար:

Բիւզանդական դրամներն այս գանձում նոյնպէս, վերաբերում են կայսրութեան մայրաքաղաքին, այսինքն՝ դրուագուել են Կոստանդնուպոլսում: Մինչդեռ սասանեան դրամները դուրս են եկել Իրանի տարբեր քաղաքներից, որոնց անունները յիշատակուած լինելով իրենց իսկ դրամների վրայ, խմբաւորում են հետեւեալ քանակական տուեալներով.

| | Դրամ |
|---|---|
| Մերվ | 81 |
| Բալխ | 8 |
| Արտաշիր–Խուրահ | 8 |
| Նիհավենդ | 7 |
| Ջերենջ | 6 |
| Դարաբջիրդ | 7 |
| Ռէյ | 5 |
| Բիշապուր | 5 |
| Իստախրի | 5 |
| Նախճեւան | 5 |
| Ծօշ | 2 |
| Ռամհորմուզդ | 2 |
| Համադան | 1 |
| Անորոշ | 6 |

Գտնուած դրամները, վկայելով տեղում ունեցած իրենց շրջանառութեան մա-

սին, միաժամանակ նշում են միջազգային առեւտրի այն ոլորտը, որի մէջ ընդգրկուած է եղել Հայաստանը Սասանեանների տիրա–պետութեան դարաշրջանում: Հետեւաբար ըստ երկրամասերի գանձի դրամները խմբա–ւորւում են հետեւեալ քանակութիւններով·

| | Դրամ |
|---|---|
| Խորասան (Մերվ, Բալխ) | 89 |
| Ֆարս (Արտաշիր–Խուրահ, Դարաբ–ջիրդ, Բիշապուր, Իստախրի) | 25 |
| Ջեբալ (Նիհավենդ, Ռէյ, Համադան) | 13 |
| Սեջիստան (Զերենջ) | 6 |
| Հայաստան (Նախճեւան) | 5 |
| Խուզիստան (Շօշ, Ռամհորմուզդ) | 4 |
| Անորոշ | 6 |

Ինչպէս տեսնում ենք, երկու գանձերի պարունակութեամբ էլ նշւում է առեւտրա–կան կապերի հիմնական ուղղութիւնները՝ արեւմուտքից Բիւզանդական կայսրութեան հետ, իսկ արեւելքից՝ Իրանի արեւելեան (Խորասան), կենտրոնական եւ հարաւ–արեւմտեան (Ջեբալ, Ֆարս, Խուզիստան, Սեջիստան, Իրաք) մարզերի հետ:

Հայաստանում է դարում թաղուած յի–շեալ գանձերի ցուցմունքները հաստատ–ւում են Մարտունու[29], Ագիգբեկովի[30],

---

[29] ՀՊԹ, թիւ 1116—1120:
[30] Նոյնը, թիւ 1110—1113:

Թալինի[31], Կամոյի[32], Աշտարակի[33], Երևանի[34], Կիրովականի[35], Անիի[36] և այլ շրջաններում յայտնաբերուած սասանեան դրամներով[37]։

Նոյն վկայութիւնները դիտում են Աղուանքում գտնուած գանձերի տուեալներով։ Այսպէս օրինակ, Շամախուց ոչ շատ հեռու, Խիզին շրջանի Ալտին-Աղաչ գիւղում յայտնաբերուած սասանեան արծաթ դրամների գանձը իր մէջ պարունակել է շուրջ 140 դրախմաներ։ Դրանցից ժամանակով ամենավերջինը թողարկուել է Խոսրով Բ.ի թագաւորութեան 17րդ տարում, այսինքն՝ 606 թուին։ Ընդհանուր առմամբ գանձում եղել են Կաւատ Ա. (488—497, 499—531), Խոսրով Ա. (531—579), Որմիզդ Դ. (579—590) և Խոսրով Բ. (590—628) թագաւորների դրախմաները[38]։

Վերջիններիս խմբաւորումն ըստ նրանց ծագման վայրերի արտացոլում է հետևեալ քաղաքների մասնակցութիւնը միջազգային առևտրում։

---

[31] Նոյնը, թիւ 1066—1067։

[32] Նոյնը, 14917—14922։

[33] Նոյնը, թիւ 14913—14915։

[34] Նոյնը, թիւ 1148—1149, 14524—14654։

[35] Նոյնը, թիւ 15521։

[36] Նոյնը, թիւ 978, 979։

[37] Նոյնը, թիւ 1028, 1090, 1106, 1107, 14972, 14646։

[38] ПМК, № 1064.

| | Դրամ |
|---|---|
| Մերվ | 15 |
| Շօշ | 13 |
| Բիշապուր | 13 |
| Նիհավենդ | 7 |
| Նահրտիրհ | 5 |
| Դարաբջիրդ | 5 |
| Ռամհորմուզդ | 4 |
| Ձերենջ | 4 |
| Իստախրի | 2 |
| Ռեյ | 2 |
| Բալխ | 1 |
| Աբրշահր | 1 |
| Անորոշ | 19 |

Եթէ նկատի ունենանք, որ յիշեալ դրամները նախապէս շրջանառութեան մէջ են եղել նահանգային շուկայի ոլորտում, ապա նահանգները կամ մարզերը ներկայանում են մեր առաջ հետեւեալ յարաբերութեամբ·

| | Դրամ |
|---|---|
| Հայաստան (Նախճեւան) | 28 |
| Խուզիստան (Շօշ, Նահրտիրհ, Ռամհորմուզդ) | 22 |
| Ֆարս (Բիշապուր, Դարաբջիրդ, Իստախրի) | 20 |
| Խորասան (Մերվ, Բալխ, Աբրշահր) | 17 |
| Ջեբալ (Ռեյ, Նիհավենդ) | 9 |
| Սեջիստան (Ձերենջ) | 4 |
| Անորոշ | 19 |

Ինչպէս տեսնում ենք, Աղուանքում
նոյնպէս է. դարի սկզբին սասանեան դրամ-
ներն իրենց ծագմամբ նշում են կապը Իրանի
հարաւ-արեւմտեան (Ֆարս, Խուզիստան,
Ջերալ) եւ հարաւ-արեւելեան (Սեջիստան,
Խորասան) երկրամասերի վաճառաշահ կեն-
դրոնների հետ: Միաժամանակ որոշակի է
դառնում Նախճեւանի դերը սասանեան
դրամների թողարկման գործում: Հայ-
կական թողարկման սասանեան դրամները
առեւտրի շնորհիւ հասել են Կասպից ծովի
արեւելեան ափերը, դէպի Շիրվան, որի
հողում գտնուած դրամները, իբրեւ
իրեղէն ապացոյցներ, վկայում են այդ
մասին: Սակայն անհրաժեշտ է նկատի
առնել ոչ միայն բուն Հայաստանի, այլեւ
նրան մերձաւոր Կովկասեան շրջաններում,
մասնաւորապէս պատմական Աղուանքի մէջ
ի յայտ եկած սասանեան ծագման բոլոր
նշանակալից գանձերը, որոնք մեծապէս կը
լուսաւորեն ընդհանուր պատկերը: Այդ
առումով կարեւոր են Մինգեչաուրի պե-
ղումներից, ինչպէս նաեւ Գէօկչայում գտ-
նուած գանձերի տուեալները: Կուրի միջին
հոսանքի աւազանում, Աղուանքի մայրա-
քաղաք Պարտաւից ոչ հեռու, Մինգե-
չաուրի հնագիտական պեղումներից ի յայտ
է եկել արծաթ դրամների մի գանձ, բաղ-
կացած հետեւեալ Սասանեան թագաւոր-
ների դրամներից:

| | Դրամ |
|---|---|
| Խոսրով Ա. (531—579) | 9 |
| Որմիզդ Դ. (579—590) | 62 |
| Խոսրով Բ. (590—628) | 23 |
| Ընդամենը՝ | 94 |

Գանձի ամենահին դրամը վերաբերում է 547 թուին, իսկ ամենանորը՝ Խոսրով Բ.ի թագաւորութեան 37րդ տարուան, այսինքն մ. թ. 626 թուին[39]։ Քննութիւնը ցոյց է տալիս, որ ապրանքափոխանակութիւնը բերել է սասանեան դրախմաները հետեւեալ երկրամասից.

| | Դրամ |
|---|---|
| Հայաստան (Դուին, Նախճաւան) | 24 |
| Ջեբալ (Նիհաւենդ, Ռէյ) | 11 |
| Ֆարս (Իստախրի, Բիշապուր, Դարաբջիրդ) | 10 |
| Խորասան (Աբրշահր, Մերվ) | 8 |
| Սեջիստան (Զերենջ) | 4 |
| Խուզիստան (Նահրտիրհ, Ռամ-հորմիզդ) | 4 |
| Գիլան (°) | 1 |
| Անորոշ | 16 |
| Ջնջուած | 16 |
| Ընդամենը՝ | 94 |

[39] ПМК, № 1570.

*Համանուն ցուցմունքներ է տալիս Գէօկ-չայում գտնուած գանձը, որի կազմից պահ-պանուել են արծաթեայ դրամներ, թուագ-րուած հետեւեալ ժամանակագրութեամբ.*

| | Դրամ |
|---|---|
| *Խոսրով Ա.* (531—579) | 3 |
| *Որմիզդ Դ.* (579—590) | 35 |
| *Խոսրով Բ.* (590—628) | 2 |
| *Ընդամէնը՝* | 40 |

*Դրանք դուրս են եկել հետեւեալ քաղաք-ներից.*

| | Դրամ |
|---|---|
| *Դուին* | 20 |
| *Նախճաւան* | 5 |
| *Ծօշ* | 2 |
| *Իստահխրի* | 2 |
| *Ռէյ* | 2 |
| *Մերվ* | 1 |
| *Զերենջ* | 1 |
| *Գիլան* | 2 |

*Անորոշ են մնում* 5 *դրախմաներ. ըստ որում Գէօկչայի գանձից պահպանուած ժա-մանակով ամենանոր դրամը վերաբերում է* 626 *թվին*[40]:

*Ինչպէս տեսնում ենք դերակշռում են*

[40] ПМК, № 370.

Դուին եւ Նախճաւան քաղաքներում թողարկուած դրախմաները, մինչդեռ հատ ու կենտ նմուշներով ներկայանում են Ռէյ, Շօշ, Իստախրի, Ջերենջ, Մերվ եւ այլ քաղաքներից դուրս եկած դրամները, որոնք աւելի յաճախ են պատահում Անդրկովկասում: Աղուանքում սասանեան դրամների տարածման մասին կարեւոր տուեալներ են ներկայացնում նաեւ Բաքւում եւ Աստարայում գտնուած գանձերը, որոնք արտացոլում են Ե—Է. դարերում դէպի Կասպից ծովը ձգուող միջազգային առեւտրի ուղղութիւնները:

Այսպէս օրինակ, Աստարայում 1938 թուին գտնուած գանձից պահպանուել են 70 սասանեան դրախմաներ[41]:

Ժամանակագրական առումով դրանք ստորաբաժանւում են հետեւեալ քանակութիւններով.

| | Դրամ |
|---|---|
| Պերոզ Ա. (457—483) | 1 |
| Կաւատ Ա. (483—497, 499—531) | 11 |
| Խոսրով Ա. (531—579) | 58 |
| Ընդամէնը՝ | 70 |

Թողարկման ժամանակով գանձի ամենանոր դրամը վերաբերում է 572 թուին: Սակայն ըստ քաղաքների դրամները ներկայանում են հետեւեալ յարաբերութեամբ.

41 ПМК, № 1062.

| | Դրամ |
|---|---|
| Շոշ | 13 |
| Աբրշահր | 10 |
| Մերվ | 8 |
| Ռէյ | 5 |
| Իստախրի | 4 |
| Արտաշիր-Խուրահ | 3 |
| Նիհավենդ | 3 |
| Ռամհորմուզդ | 3 |
| Համադան | 1 |
| Բիշապուր | 1 |
| Նախճեւան | 1 |
| Ջերենջ | 1 |
| Անորոշ | 17 |

*Այլ կերպ ասած, առեւտուրը յիշեալ դրամները դուրս է բերել Իրանի հետեւեալ մարզերից·*

| | Դրամ |
|---|---|
| Խորասան (Մերվ, Աբրշահր) | 18 |
| Խուզիստան (Շոշ, Ռամհորմուզդ) | 16 |
| Ֆարս (Իստախրի, Արտաշիր-Խուրահ, Բիշապուր) | 8 |
| Ջեբալ (Ռէյ, Նիհավենդ, Համադան) | 9 |
| Հայաստան (Նախճեւան) | 1 |
| Սեջիստան (Ջերենջ) | 1 |
| Անորոշ | 17 |

*Աղուանքի սասանեան գանձերից մէկ ուրիշը, որի նորագոյն դրամը վերաբերում է 638 թուին, ներկայացնում է հետեւեալը*[42]·

[42] ПМК, № 375.

| | Դրամ |
|---|---|
| *Կավատ Ա.* (488—497 *և* 499—531) | 1 |
| *Խոսրով Ա.* (531—579) | 6 |
| *Որմիզդ Դ.* (579—590) | 36 |
| *Խոսրով Բ.* (590—628) | 41 |
| *Արտաշիր Գ.* (628—632) | 1 |
| *Արաբա-սասանեան* | 1 |
| *Ընդամենը՝* | 86 |

*Դրամների ծագման տեղագրական տուեալներն ըստ քաղաքների ցոյց են տալիս.*

| | Դրամ |
|---|---|
| *Դուին* | 21 |
| *Շօշ* | 8 |
| *Բիշապուր* | 6 |
| *Ռէյ* | 6 |
| *Ջերենջ* | 6 |
| *Համադան* | 5 |
| *Մերվ* | 4 |
| *Նախճեւան* | 4 |
| *Իստախրի* | 4 |
| *Արտաշիր-Խուրահ* | 3 |
| *Ռամհորմուզդ* | 3 |
| *Նիհավենդ* | 3 |
| *Բալխ* | 1 |
| *Դարաբջիրդ* | 1 |
| *Անորոշ* | 11 |

Այս նոյն դրամների խմբաւորումը երկրամասերի առումով արտացոլում է հետեւեալ քանակային յարաբերութիւնը·

| | Դրամ |
|---|---|
| Հայաստան (Դուին, Նախճեւան) | 25 |
| Ֆարս (Բիշապուր, Իստախրի, Արտաշիր–Խուրահ, Դարաբջիրդ) | 14 |
| Ջեբալ (Ռէյ, Նիհավենդ, Համադան) | 14 |
| Խուզիստան (Ծօչ, Ռամհորմուզդ) | 11 |
| Սեջիստան (Զերենջ) | 6 |
| Խորասան (Մերվ, Բալխ) | 5 |
| Անորոշ | 11 |

Ինչպէս տեսնում ենք, այստեղ եւս գերակշռում են Իրանի հարաւից եւ արեւելքից (Ֆարս, Խուզիստան, Ջեբալ, Սեջիստան, Խորասան) եկած դրախմաները, թէեւ նշանակալից են նաեւ տեղական կերտուածքի, մասնաւորապէս Դուին ու Նախճեւան տեղանուններով դրախմաները: Սասանեան դրամներ ի յայտ եկան նաեւ Աղուանքի երկրի մէկ ուրիշ գանձի կազմում: Այդ գանձից պահպանուած դրամների շուրջ 60% վերաբերում է Հայաստանի, Աղուանքի եւ Վրաստանի տնտեսական կենդրոններին[43]: Գանձից պահպանուել են սասանեան վերջին թագաւորների պատկերներով դրամները հետեւեալ քանակութեամբ·

---

[43] ПМК, № 374.

| | Դրամ |
|---|---|
| *Խոսրով Ա.* (531—579) | 2 |
| *Որմիզդ Դ.* (579—590) | 69 |
| *Խոսրով Բ.* (590—629) | 10 |
| *Արտաշիր Գ.* (628—632) | 2 |
| *Ընդամէնը՝* | 83 |

*Դրանց շարքում նորագոյն դրախման թողարկուել է 629 թուին։ Եթէ խմբաւորենք յիշեալ դրամները նրանց ծագման վայրերով, այսինքն՝ ըստ քաղաքների, ապա մեր առաջ կը ներկայանան ստորեւ բերուած տուեալները.*

| | Դրամ |
|---|---|
| *Դուին* | 54 |
| *Ռէյ* | 5 |
| *Ձերենջ* | 5 |
| *Նախճեւան* | 3 |
| *Գիլան* | 3 |
| *Բիշապուր* | 3 |
| *Մերվ* | 2 |
| *Նիհավենդ* | 1 |
| *Անորոշ* | 7 |

*Այդ ամենից բացի հարկ է նշել, որ Ֆարսից, Խուզիստանից, Ջեբալից, Խորասանից դուրս եկած դրամների տարածումը Անդրկովկասում դիտուում է նաեւ Վրաս–*

տանում յայտնաբերուած Ե.—Է. դարերից սասանեան դրախմաներով[44]: Սակայն տաւել կարեւոր է նշել, որ Զ. դարի վերջերից Հայաստանի դրամային շրջանառութիւնը լիցքաւորւում է տեղական թողարկման սասանեան դրախմաներով, որոնք Իրանի տարբեր մարզերից բերուած դրախմաների հետ միասին սպասարկել են երկրի ներքին ու արտաքին առեւտրի պահանջները: Հայաստանի մէջ թողարկուած սասանեան դրախմաների վրայ նշւում էր երկրի անունը պահլաւերէն կրճատ դրութեամբ ܐܪܡ (ARM) տառերով: Տարաբախտաբար դրանցից շատ քիչ են պահպանուել: Մեզ յայտնի են հետեւեալ նմուշները.

Դրախմա, Կաւատ Բ. թագաւորութեան
  41 տարեթուով (= 530 թիւ)[45]
Դրախմա, Խոսրով Ա. թագաւորութեան
  41 տարեթուով (= 571—72 թիւ)[46]
Դրախմա, Խոսրով Ա. թագաւորութեան
  46 տարեթուով (= 576—77 թիւ)[47]

---

[44] ПМК, №№ 367, 368, 815, 816, 818, 1059, 1060, 1061, 1065, 1448, 1449.

[45] Collection des monnaies sassanides de feu lieutenant-général T. de Bartholomaie, représentée d'après les pièces les plus remarquables. Publiée par B. Dorn, Membre de l'Académie, Seconde édition, St. Pétersbourg, 1875, pl. XXI, no. 59. Այսուհետեւ Barth.

[46] ՀՊԹ,

[47] Barth, pl. XXV, no. 58.

Դրախմա, Խոսրով Բ. Թագաւորութեան
2 տարեթուով (= 592—93 թիւ)[48]
Դրախմա, Խոսրով Բ. Թագաւորութեան
16 տարեթուով (= 605—06 թիւ)[49]
Դրախմա, Խոսրով Բ. Թագաւորութեան
21 տարեթուով (= 611—12 թիւ)[50]

Կասկածից վեր է, որ կարող են լինել շատ այլ նմուշներ, որոնք չեն արտացոլել հրատարակութիւններում:

Միջազգային առեւտրի համար Հայաստանի աշխարհագրական դիրքը եւ նրանում քաղաքային կեանքի զարգացումը Ե.—Է. դարերում միանգամայն հնարաւոր է դարձնում տեղական կերտուածքի սասանեան դրամների թողարկումը: Պահլաւերէն համառօտագրութեան Հայաստանին վերագրելու միտքը առաջ է քաշել Պրոֆեսոր Յ. Պարուկը եւ այդ կարծիքը թէ՛ պատմական եւ թէ՛ լեզուական առումով մինչեւ օրս առարկութեան տեղիք չի տուել[51]: Դեռեւս

---

[48] Jacques de Morgan, Monnaies orientales, tome I, Numismatique de la Perse antique. Planches. Paris, 1933, pl. LXXIII, no. 4. Այսուհետեւ Morgan.

[49] Մկրտիչ Տէր-Յովհաննիսեան, «Սասանեան դրամների ալբոմ, ձեռագրի իրաւունքով», պահպանում է Հայաստանի Պատմութեան Թանգարանում: Այսուհետեւ ՄՏՀ:

[50] Morgan, pl. LXXIII, no. 7.

[51] Furdoonie D. J. Paruck, Sassanian coins, Bombay, 1924.

հռոմէական տիրապետութեան ժամանակ, կայսերական դրամների վրայ «Հայաստան» անունը երբեմն յիշատակւում էր լատինատառ ARM ձեւով: Աւանդաբար նոյնը կարող էին անել Սասանեանները Հայաստանում թողարկուող իրենց դրամների վրայ պահլաւերէն կրճատ գրութեամբ (ARM) արտայայտելու համար երկրի անուանումը: Վրաստանում եւս Զ. դարի վերջերից սասանեան պատկերագրութեան դրամներ էին թողարկւում, որոնք նոյնպէս խիստ հազուագիւտ են: Զ. դարի վերջերից Վրաստանում թողարկուած սասանեան դրամաները տարբերւում են.

Ա. Դրամներ, որոնց վրայ պատկերուած սասանեան արքայի թագի կատարին վրացերէն (մթրաւրուլի գրելաձեւով) նշուած են տեղական էրիստաւների անունները՝ Գուրգէն, Վախթանգ եւ այլն[52]:

Բ. դրամներ, որոնց վրայ պատկերուած ատրուշանի բոցավառուող կրակի փոխարէն նշուած է քրիստոնէական խաչ նշանը[53]:

---

[52] Капанадзе Д., Грузинская нумизматика, Москва, 1955, табл. II, №№ 31—34, Այսուհետեւ Капанадзе; Barth. табл. XXVII, № 21.

[53] То же, табл. III, №№ 35, 36; Barth. табл. XXVII, № 23.

Գ. դրամներ, որոնց չուրջ չորս որոշակի տեղով վրացերէն նշուած են տեղական էրիստաւի անուան տառերը մթրաւուլի գրելաձեւով, վերցուած կխալրուսնի մէջ[54]:

Դ. դրամներ, որոնց կենդրոնում արքայական պատկերին կից վրացերէն արձանագրուած է տեղական էրիստաւի անունը կրճատումներով[55]:

Ե. դրամներ, որոնց վրայ պատկերուած Սասանեան արքայի ուսին դիտւում է քրիստոնէական խաչ նշանը[56]:

Այս վերջին խմբի դրամները (առանց վրացերէն գրերի) կարող էին թողարկուել, ինչպէս նկատել է դրամագէտ Ե. Ա. Պախոմովը, նաեւ Հայաստանում[57]:

Սակայն Զ. դարի վերջերին Անդրկովկասում նշանակալից տարածում են գտնում Դուինում թողարկուած սասանեան դրամները: Վերջիններիս լիցքը շրջանառութեան մէջ դիտւում է Սասանեան Որմիզդ Դ. արքայի գահակալութեան երրորդ տարուց սկսած (մ. թ. 581/82 թուականից): Դրա–

---

[54] Капанадзе, III, № 37.

[55] Капанадзе, III, № 38; Barth. табл. XXVII, № 24.

[56] Капанадзе, табл. II, № 30, Barth. табл. XXVII, № 22.

[57] Е. А. Пахомов, Монеты Азербайджана, I, Баку, 1959, стр. 11—12.

մագիտութեան մէջ իշխում է Պրոֆ. Ե. Ա. Պախոմովի այն կարծիքը, որ Դուինից բացի այդ նոյն տեղանունով սասանեան դրամներ կարող էին թողարկուել Պարտաւում, ինչպէս նաեւ Անդրկովկասեան վաճառաշահ այլ քաղաքներում[58]: Դուինից բացի սասանեան դրախմաներ էին թողարկւում Նախճեւանում, որի անունը պահլաւերէն կրճատ ձեւով արձանագրուած պահպանուել է Խոսրով Ա. Անուշիրուանի (531—579) երրորդ տարուանից (= 533 թ.) մինչեւ Յազկերտ Գ.ի (632—651) գահակալութեան եօթներորդ տարին (= 638 թ.) թողարկուած արծաթ դրամների վրայ:

Նկատենք, որ եթէ Դուինում դրամների թողարկումը կատարուել է բացառապէս Որմիզդ Դ.ի (579—590) թագաւորութեան տարիներին, ապա Նախճեւանում այն յարատեւել է շուրջ մէկ ամբողջ դար, Խոսրով Ա. Անուշիրուանի գահակալութեան տարիներից մինչեւ Սասանեանների անկումը: Նախճեւանում թողարկուող դրամները իրենց պատկերագրութեան մանրամասնութիւններով հանդէս են եկել առաւել կատարեալ կերտուածքով, մանաւորապէս արքայական զարդանշանների, պահլաւերէն արձանագրութիւնների, երիզափակ շրջագծերի

---

[58] Е. А. Пахомов, О сасанидских монетных знаках, Доклады АН Азербайджанской ССР, том I, № I, Баку, 1945, стр. 45—46.

արտայայտութեամբ բարձր որակով, մի իրողութիւն, որը վկայում է քաղաքի փողերանոցում փորագրիչ-վարպետների, ձուլողների, դրուագողների ու այլոց կազմակերպուած աշխատանքի ու հմտութեան մասին:

Ի տարբերութիւն Նախճեւանի, Դուինում դրուագուած դրամները ներկայացնում են կոպիտ ընդօրինակութիւններ, յաճախ պատկերների ու գրութիւնների աղաւաղուած տեսքով, հատաձոյլ կլորակների անմշակ, գեղարուեստից զուրկ օրինակներով: Սակայն հայկական շուկաներում կովկասեան Թողարկման սասանեան դրամները շրջանառութեան մէջ խառնւում էին Ֆարսից, Խորասանից, Խուզիստանից ու Իրանի տարբեր ծայրերից բերուած արծաթեայ դրամների հետ, որոնցով եւ կատարւում էր ապրանքների փոխանակութիւնը: Զ. դարի վերջերից այդ հոսանքին համընթաց Հայաստան են թափանցում նաեւ բիւզանդական ոսկեայ ու արծաթեայ դրամներ, որոնց տարածումը նշանակալից դարձաւ Սասանեանների մայրամուտին: Դրամագիտները վկայում են, որ առեւտուրը Հայաստան էր բերում Յուստինիանոս (527—565) Տիբերիոս (578—582), Փոկաս (602—610) կայսրերի պատկերներով ոսկու լիարժէք պարունակութեամբ սոլիդներ[59]: Դրան-

[59] ՀԴԹ, Թիւ 13·950, 14·354, 14·410, 14·968:

ցից բացի եւ անհամեմատ աւելի շատ հայկական քաղաքներում տարածւում էին Հերակլէսի ու նրա գահաժառանգների ծանր քաշի արծաթեայ դրամները, այսպէս կոչուած կրկնակի միլիարիսները, որոնք այնքան յաճախ են պատահում Հայաստանում եւ նրան հարեւան կովկասեան շրջաններում, ըստ որում ինչպէս առանձին օրինակներով, այնպէս էլ ամբողջական գանձերի ձեւով:

Մեզ յայտնի են նախասովետական Երեւանեան նահանգում, Էջմիածնի ու Իգդիրի շրջաններում գտնուած բիւզանդական գանձերը, բաղկացած Հերակլէսի (610—641) եւ նրա երկու որդիների՝ Հերակլէս-Կոստանդինի ու Հերակլէոնի պատկերներով արծաթեայ դրամներից[60]: Այդպիսի դրամների բիւզանդական գանձեր, բաղկացած ծանր քաշի արծաթ դրամներից գտնուել են Արտաշատի շրջանի Կոչ գիւղում[61], Տամշաղինում[62], Ստեփանաւանում[63], ըստ որում վերջիններիս մէջ Հերակլէսի դրամներից բացի առկայ են նաեւ Կոստանս Բ. (643—668) կայսեր պատկերով արծաթ դրամներ: Դրանք տարածուել են ոչ միայն Հայաստանում այլեւ նրան մերձաւոր Վրաստանում[64]:

---

[60] ПМК, №№ 68, 69.
[61] ПМК, № 794.
[62] ПМК, № 1577.
[63] ՀԳԹ, № 17.501.
[64] ПМК, №№ 53, 67

Բիւզանդիայի նուաճողական ձգտումները Հայաստանի եւ վերջինիս հարեւան կովկասեան երկրների նկատմամբ ուժեղացել էին Սասանեանների անկման ժամանակներում, յատկապէս Խոսրով Բ. Փարուէզի (590—628) գահակալութեան վերջին տարիներին[65], 627 թ. կայսր Հերակլէսը իր զօրքերով ընկճեց սասանեան բանակը Նինուէի տակ եւ գրաւեց Խոսրով Բ. Փարուէզի վեհարանը Դաստակերտում[66]: Մինչ այդ կայսրութիւնը բարեփոխութիւններ էր մտցրել իր դրամային դրութեան մէջ եւ 615 թ. սկսած թողարկում էր արծաթ դրամներ իւրաքանչիւր միաւորի մէջ ներկայացնելով երկու անգամ կշռով աւելի շատ արծաթ, քան անցեալներում եղած միլիարիսներն էին: Այդ նոր թողարկման ծանր քաշի արծաթ դրամները (հեքսագրամները) կոչւում էին կրկնակի միլիարիսներ եւ լայն տարածում էին գտել Բիւզանդիային ենթակայ երկրներում[67], տնտեսական այդ միջոցառման նպատակն էր, ի հակադրութիւն Սասանեանների, բարձրացնել բիւզանդական ար-

---

[65] М. М. Дьяконов, Очерк истории древнего Ирана, Москва, 1961, стр. 316.

[66] История Византии, том I, Москва, 1967, стр. 366.

[67] Ph. Grierson, Solidi of Phocas and Heraclius; the chronological from work Numismatic chronicle, Royal Numismatic Society, London, 1959, p. 138.

ծամ դրամի հեղինակութիւնը միջազգային շուկայում եւ դրանով իսկ կայսրութեան մենաշնորհը դարձնել արծաթ դրամների թողարկման գործը, ինչպէս վաղուց ի վեր հաստատուած էր ոսկու գծով: Է. դարի գանձերի շարքում քիչ չեն այնպիսիները, որոնց պարունակութիւնը յստակօրէն արտացոլում է սասանեան ու բիւզանդական արծաթ դրամների համատեղ շրջանառութիւնը Հայաստանում եւ հարեւան երկրներում: Իբրեւ անմիջական վկաներ այդ են փաստում Դուինում, Լենինականում եւ Թբիլիսիում Է. դարի առաջին կէսին թաղուած սասանեան ու բիւզանդական դրամների համատեղ միասնութեամբ կազմուած գանձերը[68]: Ուշագրաւ է, որ դրանցում առկայ բիւզանդական դրամները մեծ մասամբ Հերակլէսի կայսրութեան (610—641) տարիներին թողարկուած ծանր քաշի (կըրկնակի) միլիարիսներ են: Իրանի ու Բիւզանդիայի շահերի բախման ասպարէզ դարձած Հայաստանը Է. դարի առաջին քառորդի վերջում յաճախ անցնում էր Իրանից Բիւզանդիային եւ կամ Բիւզանդիայից Իրանին,

---

[68] ПМК, т. I, № 59; Х. А. Мушегян, Денежное обращение, նշ. աշխ. стр. 122—138; М. И. Камера, К. В. Голенко, նշ. աշխ. 172—193; В. В. Кропоткин, Клады византийских монет на территории СССР, №№ 365, 375. Свод археологических источников, выпуск, Г 4—4, Археология СССР, Москва, 1962.

մինչեւ որ 626 թ. կայսրութեանը յաջողուեց ի վերջոյ հաստատել իր տիրապետութիւնը Անդրկովկասում[69]:

Բիւզանդական արծաթ դրամների շրջանառութիւնը Հայաստանում ամենուրեք տարածուած սասանեան դրախմաների հետ առանձին դժուարութիւն չէր յարուցում առեւտրական գործարքներում, եթէ նկատի ունենանք, որ բիւզանդական արծաթ դրամներն իրենց իւրաքանչիւր միաւորի քաշով երկու անգամ ծանր էին սասանեան դրախմաներից: Հետեւաբար փոխանակութիւնը հաշուով կարող էր կատարուել 1 : 2 յարաբերութեամբ: Այլ կերպ ասած մէկ հատ բիւզանդական արծաթեայ կրկնակի միլիարիսը կարող էր ընդունուել երկու սասանեան դրախմայի փոխարէն: Հարկ է նկատել, որ կայսր Հերակլէսի եւ նրա գահաժառանգ որդիների պատկերներով արծաթ դրամները բոլորն էլ գեղարուեստից զուրկ, դրամագործութեան յունա-հռոմէական աւանդութիւններէն խորթ, ձուլման ու դրոշմման հապճեպ աշխատանքի արգասիք են: Դրամների կլորակներն անգամ ձուլման կաղապարներից դուրս հանելուց յետոյ մշակման չեն ենթարկուել: Չնայած արտաքնապէս անհրապոյր ու կոշտ իրենց տեսքին, բիւզանդական այդ դրախմաները հանդիսացան քրիստոնէական Արեւելքի ամենա-

---

[69] История Византии, том I, стр. 365.

տարածուած դրամներն արաբական արշաւանքների նախօրեակին: Հերակլէսի ու նրա անմիջական յաջորդների հէնց այդ դրամներին վիճակուեց Սասանեան ինքնակալութեան կործանումից յետոյ շրջանառութեան մէջ իշխել, սպասարկելով ապրանքափոխանակութեան պահանջները սասանեան դրախմաների հետ միասին: Ուշագրաւ է, որ Է. դարի առաջին կէսին Իրանի դէմ յաղթանակներով ու պարտութիւններով ապրող քրիստոնէական Բիւզանդիան խաչադրոշմ իր արծաթեայ դրամների վրայ արձանագրում էր. «Տէր օգնէ հռոմէացիներին»: Սա մաղթանքի ձեւով արտայայտած քաղաքական կոչ էր, որ կայսրութիւնը տարածում էր իր դրամներով: Սակայն ներքին ու արտաքին հակասութիւններով զարգացող կայսրութիւնը թէեւ տեսաւ իր դարաւոր ախոյանի՝ Սասանեան թագաւորութեան կործանումը եւ մի որոշ ժամանակ դարձաւ առաջաւոր Ասիայի միահեծան տէրը, բայց շուտով նրա դէմ բարձրացաւ Իսլամի գաղափարախօսութեամբ տոգորուած Արաբական Խալիֆաթը: Դրամային շրջանառութիւնը թեւակոխեց իր զարգացման նոր փուլը: Թէ ինչպիսի փոփոխութիւններով է ուրուագծւում Հայաստանի դրամային շրջանառութիւնը Խալիֆաթի տիրապետութեան ժամանակներում, քննութեան ենթակայ առանձին խնդիր է:

## ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

Հայաստանում Զ.—Է. դարերում թողարկուած սասանեան արծաթ դրամների[70] Նախնեւան

*Դրախմա*, *Խոսրով Ա.* (531—579) *պահակալութեան* 3 (533) *տարեթուով*

*Դրախմա*, *Խոսրով Ա.* (531—579) *պահակալութեան* 6 (536) *տարեթուով*

*Դրախմա*, *Խոսրով Ա.* (531—579) *պահակալութեան* 11 (541) *տարեթուով*

*Դրախմա*, *Խոսրով Ա.* (531—579) *պահակալութեան* 14 (544) *տարեթուով*

*Դրախմա*, *Խոսրով Ա.* (531—579) *պահակալութեան* 21 (551)—48 (578) *տարեթուերով*

*Դրախմա*, *Որմիզդ Դ.* (579—590) *պահակալութեան* 2 (580)—5 (583) *տարեթուերով*

*Դրախմա*, *Որմիզդ Դ.* (579—590) *պահակալութեան* 7 (585)—11 (590) *տարեթուերով*

*Դրախմա*, *Վարահրան Զ.* (590—591) *պահակալութեան* 1 (590) *տարեթուով*

---

70 *Ներկայացւում է Կովկասեան գանձերից եւ դրամագիտական ժողովածուներից քաղուած տուեալներով:*

*Դրախմա*, *Խոսրով Բ*. (591—628)
*դահակալութեան* 1 (591)—38 (627) *տարեթուերով*
*Դրախմա*, *Կաւատ Բ*. *Շիրոյէս*
*դահակալութեան* 2 (628) *տարեթուով*
*Դրախմա*, *Արտաշիր Գ*. (628—630)
*դահակալութեան* 1 (628)—2 (629) *տարեթուերով*
*Դրախմա*, *Բուրանդուխտ* (630—631)
*դահակալութեան* 1 (630) *տարեթուով*
*Դրախմա*, *Որմիզդ Ե*. (631—632)
*դահակալութեան* 1 (631)—2 (632) *տարեթուերով*
*Դրախմա*, *Խոսրով Գ*. (632—633)
*դահակալութեան* 2 (633) *տարեթուով*
*Դրախմա*, *Յազկերտ Գ*. (632—651)
*դահակալութեան* 3 (634)—4 (635) *տարեթուերով*
*Դրախմա*, *Յազկերտ Գ*. (632—651)
*դահակալութեան* 7 (638) *տարեթուով*

## Դուին

*Դրախմա*, *Որմիզդ Դ*. (579—590)
*դահակալութեան* 2 (580) *տարեթուով*
*Դրախմա*, *Որմիզդ Դ*. (579—590)
*դահակալութեան* 4 (582) *տարեթուով*
*Դրախմա*, *Որմիզդ Դ*. (579—590)
*դահակալութեան* 6 (584) *տարեթուով*
*Դրախմա*, *Որմիզդ Դ*. (579—590)
*դահակալութեան* 7 (585)—11 (590) *տարեթուերով*

## ԳԼՈՒԽ Է.

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿԱՊԵՐԸ Ը.—Ժ. ԴԱՐԵՐՈՒՄ

## (ԴՐԱՄԱԳԻՏԱԿԱՆ ՎԿԱՅՈՒԹԻՒՆՆԵՐ)

*Անդրկովկասում գտնուած դրամական գանձերը, ինչպէս նաեւ հնագիտական պեղումներից ի յայտ եկած Ը.—Ժ. դարերի արաբատառ մետաղեայ դրամները հանդիսանում են պատմական բնոյթի այն իրերեղէն ապացոյցները, որոնք հնարաւորութիւն են ընձեռում դատելու Հայաստանի դրամական շրջանառութեան զարգացման, նրանում կատարուած փոփոխութիւնների եւ երկրի միջազգային կապերի հիմնական ուղղութիւնների մասին: Զարգացման տուեալները դիտուում են ինչպէս ներքին, այնպէս էլ արտաքին առեւտրի հետ կապուած: Շրջանառութեան ներքին ոլորտի համար կարեւոր տուեալներ են տալիս պղնձեայ դրամները, որոնք գործառական նշանակութիւն են ունեցել առաւելապէս տեղական շուկայի մանր ապրանքադրամական յարաբերութիւններում: Հայաստանում յայտնաբերուած Ը. դարին վերաբերող դրամների շարքում նախ եւ առաջ յիշատակելի են արաբական տիրակալութեան վաղ ժամանակներին վերաբերող դրամական միաւորների երկու խմբեր: Դրանցից առաջինը տեղում, յատկապէս Դուինի քաղաքում թողարկուած օմայեան պղնձեայ դրամներ են, որոնք առան-*

ձին օրինակներով ի յայտ են եկել Դուինի աւերակներում, ինչպէս հնագիտական պեղումների շնորհիւ, այնպէս էլ պատահականօրէն, տեղական բնակչութեան հողային աշխատանքների միջոցին: Գտնուած դրամների այդ խումբը միջազգային շրջանառութիւն չի ունեցել: Հայկական ՍՍՀ տարածքից դուրս այդ դրամները չեն գտնուել, եթէ հիմք ընդունենք յայտնաբերումների պաշտօնապէս հրատարակուած ցուցակները: Դրանք թողարկուել են երկրի ներքին առուծախի համար, հետեւաբար եւ այդպիսի դրամների բացակայութիւնը Հայաստանից դուրս, հարեւան երկրների հնագիտական նիւթերի մէջ զարմանալի չէ: Այդ դրամների չափերի ու կշիռների, նրանց ու դրոշմուած արձանագրութիւնների եւ այլ մանրամասնութիւնների մասին հաղորդուել է Դուինում գտնուած հնագիտական նիւթերի քննութեան կապակցութեամբ[1]:

Ը. դարի առաջին կէսին վերաբերող, Հայաստանում յայտնաբերուած դրամների երկրորդ խումբը՝ Արաբական Խալիֆաթի կենտրոնական նահանգներում, մասնաւորապէս Ասորիքում եւ Իրաքում թողարկուած օմայեան դրամներ են: Ըստ արժէնիշների,

---

[1] Х. А. Мушегхан, Денежное обращение Двина по нумизматическим данным, Ереван, 1962, стр. 60, թի. 12—19. Հետագայ ծանօթագրութիւններում այն աշխատութիւնը յիշւում է Мушегян ձեւով:

դրանք ներկայացնում են ֆելսեր եւ դիրհեմներ: Ֆելսերը (պղնձեայ դրամները) թողարկուել են Հիմս (Եմեսա), Դամասկոս եւ Կիննասրին քաղաքներում, բայց գտնուել են Դուինում, ինչպէս նաեւ ՀՍՍՀ այլ վայրերում[2]: Ի տարբերութիւն տեղական դրամների, յիշեալ օտարերկրեայ ֆելսերը քանակապէս շատ չեն եւ հազիւ նշմարելի չափով փաստում են դրամական շրջանառութեան ոլորտում հայկական շուկաների կապը սիրիական քաղաքների հետ: Բացառուած չէ, որ Ասորիքից եւ Ջազիրիայից Հայաստան եկած կարաւանների միջոցով այդ օրինակ ֆելսերը թափանցել են Դուինի ներքին առեւտրի ոլորտը: Սակայն արտաքին կապերի համար առաւել որոշակի վկայութիւն է 1957 թ. Ապարանի Շէնաւան գիւղում գտնուած արծաթ դրամների գանձը, որի նորագոյն դիրհեմը կրում է իր վրայ Հիջրայի 119 թուականը, այսինքն թողարկուել է մ. թ. 737 թւին[3]: Ողջ գանձը բաղկացած է բացառապէս օմայեան արծաթ դրամներից, որոնք ըստ թուականների եւ դրուագման վայրերի ստորաբաժանւում են հետեւեալ տուեալներով.

---

[2] Հայաստանի պատմութեան պետական թանգարան, դրամագիտութեան բաժնի գոյքամատեան, թիւ 10678, 11210, 11995, 12395: Հետագայում այն աղբիւրը յիշատակւում է համառօտագրուած՝ ՀՊԹ ձեւով:

[3] ՀՊԹ, թիւ 17430:

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| հիջրայի | 87 (705/06) | տարեթուով | թողարկուած | Վասիտ | քաղաքում | 1 գրամ |
| հիջրայի | 91 (709/10) | տարեթուով | թողարկուած | Վասիտ | քաղաքում | 1 գրամ |
| հիջրայի | 94 (709/10) | տարեթուով | թողարկուած | Վասիտ | քաղաքում | 2 գրամ |
| հիջրայի | 94 (709/10) | տարեթուով | Սուկ-Մին-ալ-Ահվազ | Վասիտ | քաղաքում | 1 գրամ |
| հիջրայի | 95 (713/14) | տարեթուով | թողարկուած | Վասիտ | քաղաքում | 1 գրամ |
| հիջրայի | 99 (717/18) | տարեթուով | թողարկուած | Վասիտ | քաղաքում | 1 գրամ |
| հիջրայի | 103 (721/22) | տարեթուով | թողարկուած | Քերման | քաղաքում | 1 գրամ |
| հիջրայի | 104 (722/23) | տարեթուով | թողարկուած | Վասիտ | քաղաքում | 2 գրամ |
| հիջրայի | 104 (723/24) | տարեթուով | թողարկուած | Վասիտ | քաղաքում | 1 գրամ |
| հիջրայի | 113 (731/32) | տարեթուով | թողարկուած | Վասիտ | քաղաքում | 1 գրամ |
| հիջրայի | 119 (737) | տարեթուով | թողարկուած | Վասիտ | քաղաքում | 1 գրամ |

Այս տուեալները ցոյց են տալիս, որ Հա-
յաստանում Ը․րդ դարի առաջին կէսին նշա-
նակալից տարածում են ունեցել Վասիտում
դրուագուած օմայեան արծաթ դրամները։
Պարսից ծոցի մօտ գտնուող Իրաքի վաճառա-
շահ Վասիտ քաղաքը, յիրաւի, խալիֆաթում
արծաթ դրամների թողարկման ամենա-
բանուկ կենդրոններից մէկն էր Օմայեան-
ների տիրապետութեան մէջ եւ Տէնուանի
գանձը, լինելով Ը․րդ դարի պատկանող
գանձերից վաղագոյնը Անդրկովկասում, յի-
շատակութիւն է այդ ժամանակներում ընթա-
ցող հայ-արաբական յարաբերութիւնների
պատմութիւնից։ Ինչ վերաբերում է Սուկ-
Մին-ալ-Ահվազ եւ Քերման քաղաքներում
թողարկուած դրամներին, որոնք Տէնուանի
գանձում առկայ են մէկական օրինակներով,
ապա դրանք Հայաստանում հազուագիւտ են։

Բացի յիշեալներից առանձին օրինակնե-
րով Վասիտում թողարկուած օմայեան ար-
ծաթ դրամներից գտնուել են նաեւ Դուինի
աւերակներում։ Հետեւաբար Տէնուանի
գանձը հաստատում է նաեւ այդպիսիների ոչ
պատահական լինելը Դուինում Ը․րդ դարի
առաջին կէսին[4]։

Այն իրողութիւնը, որ Վասիտում թո-
ղարկուած օմայեան դրամները նշանակալից
տարածում են ունեցել Խալիֆաթի տիրա-
պետութեան Կովկասեան շրջաններում, հա-

---

[4] Мушегян 60, թւ․ 8–9.

*տարածւում է նաև Հայաստանին հարևան երկրներում գտնուած, Ը․րդ դարին պատկանող դրամական գանձերի տուեալներով։ Սակայն դրամական շրջանառութեան ոլորտում Հայաստանի միջազգային կապերի գլխաւոր ուղղութիւնները առաւել տեսանելի ուրուագծւում են Ը․րդ դարի երկրորդ կէսից սկսած։ Հայաստանում ի յայտ եկած արաբական դրամներն ու դրամական գանձերը արտացոլում են այդ վիճակը, ըստ որում անմիջական կապերը դիտւում են նախ և առաջ մերձաւոր Ասորիքի հետ։ Այդ մասին են վկայում Պարտաւում դրոշմուած, բայց Հայոց Դուինի քաղաքի աւերակներում գտնուած Ը․րդ դարի արաբական պղնձեայ դրամները։ Վերջիններս շրջանառութեան մէջ են մտել հիջրայի* 142 (*մ. թ.* 759—760), 143 (760—761), 159 (775—776), 163 (779—780), 164 (780—781) *թուականներից*[5]*։*

*Հայաստան–Ասորիք անմիջական կապերի մասին վկայում են նաև ալ–Յազիդիա և ալ–Բաբ (Դերբենդ) քաղաքում դրոշմուած Ը․րդ դարի երկրորդ կէսի արաբական պղնձէ դրամները, որոնք յայտնաբերուել են Դուինի կենտրոնական թաղամասի պեղումներից*[6]*։ Այդ կապերից յիշատակ են մնացել*

---

[5] *ՀՊԹ*, *թիւ* 11146, 11147, 11207, 14683, 11197, 13841, 3087, Мушегян, *թիւ* 26—34, 535։

[6] *ՀՊԹ*, *թիւ* 12738, 11523։

Դուինում կտրուած Աղուանքի արաբատառ անունը կրող (Առան) հիջրայի 153 (770), 177 (793—794), 178 (794—795), 193 (808—809), 204 (819—820) եւ 214 (829—830) տարեթուերով արաբական պղնձէ դրամները[7]: Հայաստան–Աղուանք կապերի անմիջականութիւնը դրամական շրջանառութեան ներքին ոլորտում, ներկայացնում են նաեւ Դուինի քաղաքի փլատակներից ի յայտ եկած երկու դրամական գանձերը, որոնք բաղկացած են բացառապէս արաբական պղնձէ դրամներից, մի վկայութիւն, որ բնորոշ է տեղական շուկայի մանրածախ առեւտրին: Այդ գանձերից մէկի մէջ հաւաքուած են հետեւեալ տարեթուերի եւ անունների պղնձեայ դրամները·

| | Դրամ |
|---|---|
| 184 (800) թիւ, Ասադ իբն Եազիդ | 11 |
| 186 (802) թիւ, Մուհամմէդ իբն Եազիդ | 1 |
| 187 (802—803) թիւ, Խուզայմա իբն Խազիմ | 1 |
| 208 (823—824) թիւ, Խալիֆ ալ-Մամուն | 14 |
| 208 (823—824) թիւ, Մուհամմէդ իբն Սալիմ | 1 |
| Անորոշ | 1 |
| Ընդամէնը՝ | 29 |

Թ․րդ դարի առաջին քառորդին վերա–

[7] ՀՊԹ, թիւ 3090, 3096, 3100, 3155, 10841, 11149, 11199, 11206, 12326, 12347, 11254, 12363, 12677, 17299:

*րերող այս պղնձեայ դրամները թողարկուել են Հայաստանում եւ Աղուանքում*[8]*։ Եթէ նկատի ունենանք, որ պղնձեայ դրամները չէին մտնում արտաքին առեւտրի ոլորտը, ապա պարզ է դառնում, որ այս գանձը եւս փաստում է Հայաստան–Աղուանք կապերի անմիջականութիւնը։ Այդ անմիջականութիւնը օրինաչափ էր, որովհետեւ Արաբական Խալիֆաթի վարչական բաժանմամբ Հայաստանը եւ Աղուանքը մտնում էին մէկ նահանգի մէջ, ըստ որում նրանցում դրուագուած պղնձեայ դրամները նշանակուած էին ներքին շուկայի կարիքների համար եւ սովորաբար նահանգի սահմաններից դուրս չէին անցնում։*

*Պղնձէ դրամների երկրորդ գանձը, որ գտնուել է* 1958 *թ., իր մէջ պարունակում է Հայաստանում եւ Աղուանքում դրուագուած հետեւեալ ֆելսերը, ըստ տարեթուերի ու իշխանական անունների*[9]*։*

| | Դրամ |
|---|---|
| 177 (793—794) *թւ., Խալիդ իբն Եազիդ* | 1 |
| *ջնջուած տարեթուով, Ասադ իբն Եազիդ* | 3 |
| 187 (802—803) *թւ., Խազիմ իբն Խուզէյմա* | 3 |
| 208 (823—824) *թւ., Խալիֆ ալ-Մամուն* | 5 |
| *ջնջուած տարեթուով եւ իշխանական անուններով* | 10 |
| *Ընդամէնը՝* | 22 |

8 *ՀՊԹ, թւ* 17498։

9 *ՀՊԹ, թւ* 17600։

Դրամական շրջանառության ներքին ոլորտին բնորոշ այս տվյալները ևս վկայում են Դվին–Պարտավ սերտ կապերի մասին, միաժամանակ ընդգծելով տեղական շուկաներում պղնձեայ դրամների գործառական նշանակությունը, որ ծավալվել էր Ը․րդ դարի վերջին և Թ․րդ դարի սկզբին: Պատմության հենց այդ ժամանակներում էր, որ բարձրացել էր Պարտավ քաղաքի դերը «Արմինիա» նահանգի կառավարման գործում, ուր փոխադրվել էր արաբ ոստիկանների դիվանատունը[10]:

Ուսումնասիրությունները պարզել են Պարտավի կարևորությունը Անդրկովկասով անցնող կարավանային տարանցափոխանակության գործում[11]: Յայտնի են նաև պատմական վկայություններ Հայոց Դվին քաղաքի նշանակության մասին: Բացայայտուած են, որ Ը․—Թ․րդ դարերում Կուր–Արաքս Միջագետքի տնտեսական կյանքի խոշոր կենտրոնները չափէս դարձել էին Դվին և Պարտավ քաղաքները, որոնցում թողարկված արաբական պղնձեայ դրամները նշանակալից տարածում ունէին առևտրի հայկական շուկաներում: Սակայն պղնձեայ դրամները բնորոշ

[10] Մովսէս Կաղանկատուացի, Պատմութիւն Աղուանից Աշխարհի, Թարգմանութիւնը, առաջաբանը և ծանօթագրութիւնները Վարագ Առաքելեանի, Երևան, 1969, էջ 254:

[11] В. В. Бартольд, Историко-географический обзор Ирана, СПБ, 1903, стр. 151.

են ներքին առեւտրի մանրածախ գործարքներին : Միջազգային ապրանքափոխանակութեան համար կարեւոր էին արծաթէ դրամները : Այդ առումով անհրաժեշտ է պարզել, թէ Արեւելեան Խալիֆաթի ստեղծման վաղ ժամանակներից, այսինքն Է·րդ դարի 2րդ կէսից, մինչեւ Արեւելքում այսպէս կոչուած «արծաթի ճգնաժամի» սկսուելը, այսինքն մինչեւ Ժ·րդ դարի վերջը : Հայաստանում ինչպիսի արծաթ դրամներ են շրջանառութեան մէջ եղել եւ այդ դրամները իրենց ծագման աշխարհագրական ու ժամանակագրական տուեալներով ինչպիսի տեղեկութիւններ են տալիս երկրի միջազգային կապերի հիմնական ուղղութիւնների մասին :

Գիտութեանը յայտնի է, որ աբբասեան դիրհեմների յայտնաբերումները զանգուածային բնոյթ են կրում : Դրանք ցոյց են տալիս, որ ի տարբերութիւն վաղ արաբական ժամանակների, արդէն Է·րդ դարի երրորդ քառորդից սկսած ընդլայնուել էր Արեւելեան խալիֆայութեան դրամական շրջանառութեան ոլորտը : Ընդլայնուել էր այն նրա տիրակալութեան հայկական տարածքի վրայ՝ Միջին Ասիայից մինչեւ Միջերկրականի երկրների միջեւ կատարուող ապրանքային փոխանակութիւնը : Սակայն ինչ բնորոշութիւն ունէր դրամական տնտեսութիւնը Հայաստանում եւ արտաքին առեւտրի ինչ կապեր են դիտուում խալիֆաթի ներսում կատարուող դրամական շրջանա-

ութեան տուեալներով: Այս հարցերին պատասխանելու համար նախ եւ առաջ հարկ է նկատի ունենալ, որ իր աշխարհագրական դիրքով «Արմինիա» նահանգը կարեւոր ռազմավարական եւ տնտեսական նշանակութիւն ունէր Արեւելեան խալիֆաթի համար: Նրա միջով անցնում էին դէպի սլաւոնական շուկաները տանող կարաւանային ճանապարհները: Անդրկովկասի տարանքային արտադրութեան, յատկապէս Կուր-Արաքս Միջագետքի ամենանշանաւոր կենդրոնները, ինչպէս նաեւ բուն Հայաստանի հարաւային շրջաններն ընդգրկուած էին խալիֆաթի «Արմինիա» նահանգի մէջ[12]:

---

[12] Խալիֆաթի «Արմինիա» նահանգը միջնադարի արար պատմիչների մօտ յիշատակւում է որպէս կազմուած մի քանի շրջաններից: Այսպէս, օրինակ, ըստ ալ-Բելաձորու Արմինիան բաժանուած է եղել չորս մասերի, որոնցից Սիւնիքը եւ Աղուանքը միասին կազմել են այսպէս կոչուած «Առաջին Արմինիան», Վրաստանի արեւելեան մասը ներկայացրել է որպէս 2րդ «Արմինիա», Վասպուրականը, Դուինը, Շիրակ-Տայքը եւ Բագրեւանդը միասին գտնուել է որպէս 3րդ «Արմինիա», իսկ Արշամաշատը, Կարինը, Խլաթը, Արճէշն ու Աղահունիքը՝ 4րդ «Արմինիա»: Մէկ ուրիշ տեղեկութեամբ ալ-Բելաձորին «Արմինիա» նահանգի ստորաբաժանումները յիշատակւում է նաեւ տարբեր շրջանների միաւորումներով, ըստ որի 1ին «Արմինիան իր մէջ ընդգրկել է Սիւնիքը, Աղուանքը եւ Թիֆլիսը: «Երկրորդ Արմինիան»՝ Շիրակը, Տայքը, Բագրեւանդը, Դուինը եւ Վասպուրականը: «Երրորդ Արմինիան»՝ Կարինը, Խլաթը, Արճէշը եւ Աղահունիքը (Բաջունայս): «Չորրորդ Արմինիան»՝ Արշամա-

Գնահատելով այդ նահանգի՝ որպես մեկ վարչական միավորի պատմական նշանակությունը խալիֆաթի տիրապետության մեջ, անհրաժեշտ է քննության առնել արեւելյան դրամների բոլոր այն դանձերը, որոնք հայտնաբերուել են «Արմինիա»ի հայկական, վրացական եւ ալբանական շրջաններում: Դրամագիտական նյութերի քննութեան այդ սկզբունքով միայն հնարաւոր կը դառնայ բացայայտել Հայաստանի դրամական շրջանառութեան զարգացման եւ նրա առեւտրական կապերի առեւտրական կապերի առանձնահատկութիւնները:

«Արմինիա» նահանգում գտնուած եւ Արաբների տիրակալութեան ժամանակներին վերաբերող արծաթ դրամական գանձերից վաղագոյնը պատկանում է Ը. դարի երրորդ քառորդին: Այն յայտնաբերուել է Աղուանքում, նախկին Գանձակ քաղաքի, այժմեան Կիրովաբադի մօտ: Գանձի պարունակութիւնից պահպանուած 187 օմայեան եւ աբբասեան ամբողջական ու կտրուած արծաթ դրամներից նորագոյնը թողարկուել է հիջրայի 155 (772—773) թ.: Ըստ դրուագ-

---

շատը (Ճիմշատ): Տես ал-Белазори, Из книги «Завосвание стран», Баку, 1927, стр. 5; С. Шлепчян, Административная политика Арабского халифата в Армении в VII—IX вв., Ереван, 1955, стр. 9—10 (автореферат диссертации); Шахназарян, Двин. Историко-географический очерк, стр. 78.

ման վայրերի գանձի դրամները ներկայացնում են հետևյալ տեղանունները[13].

| | Դրամ |
|---|---|
| Վասիտ | 83 |
| Դիմեշկ | 22 |
| Արմինիա | 14 |
| Առան | 5 |
| Մերվ | 5 |
| Դարաբջիրդ | 5 |
| Արդաշիր-Խուրրա | 3 |
| Իստախրի | 3 |
| ալ-Անդալուս | 3 |
| ալ-Բասրա | 3 |
| Կերման | 3 |
| Սուկ-ալ-Ահվազ | 1 |
| ատ-Տայմերա | 1 |
| Ջնջված քաղաքային անուններով | 20 |
| Տունդի Սաբուր | 2 |
| ար-Ռեյ | 2 |
| Սաբուր | 2 |
| ալ-Աբբասիա | 1 |
| ալ-Բաբ | 1 |
| ալ-Ջեզիրա | 1 |
| Սահի | 1 |
| ալ-Մուբարեկա | 1 |

[13] Е. А. Пахомов, Монетные клады . . ., вып. I—IX, Баку, 1926—1966, թի 383. Հետագայում այս աշխատությունը՝ հիշատակվում է համառոտագրված ձևով՝ ПМК.

| | Դրամ |
|---|---|
| ալ–Մուհամմեդիա | 1 |
| Մեյսան | 1 |
| Նեհրաիրա | 1 |
| Հերաթ | 1 |
| Համադան | 1 |

Ցիշեալ քաղաքներում թողարկուած դրամների բաշխումը խալիֆաթի (վարչական բաժանմամբ) Արեւելքում սահմանուած նահանգների վրայ ներկայացնում է նրանց հետեւեալ յարաբերակցութիւնը տոկոսներով արտայայտած .

| | | |
|---|---|---|
| Իրաք | 87 դրամ | = 46,52% |
| Սիրիա | 22 դրամ | = 11,76% |
| Արմինիա | 14 դրամ | = 7,49% |
| Ֆարս | 11 դրամ | = 5,94% |
| Խորասան | 7 դրամ | = 3,75% |
| Առան | 6 դրամ | = 3,21% |
| Խուզիստան | 6 դրամ | = 7,21% |
| Ջեբալ | 5 դրամ | = 2,70% |
| Իսպանիա | 3 դրամ | = 1,60% |
| Կերման | 3 դրամ | = 1,60% |
| Աֆրիկա | 2 դրամ | = 1,07% |
| Ջեզիրա | 1 դրամ | = 0,54% |

Մնացած 20 դիրհեմները, որոնք անորոշ են, կազմում են 10,61 տոկոս :

Արծաթ դրամների յաջորդ գանձը գտնուել է Ադրբեջանական ՍՍՀ Կարեագինոյ

*քաղաքում*[14]*: Այդ գանձից պահպանուել են 91 դիրհեմներ, որոնց մէջ նորագոյնը թողարկուել է հիջրայի 166 (782—783) թ.: Իրենց ծագման աշխարհագրական տուեալներով, այսինքն ըստ դրոշման վայրերի, Կարեդինոյի դիրհեմները ստորաբաժանւում են.*

| | Դրամ |
|---|---|
| *Մեդինա աս–Սալամ* | 43 |
| *ալ–Բասրա* | 12 |
| *Արմինիա* | 12 |
| *ալ–Քուֆա* | 9 |
| *ալ–Մուհամմեդիա* | 4 |
| *Վասիտ* | 4 |
| *ալ–Իստախրի* | 2 |
| *Ջէյ* | 1 |
| *ար–Ռէյ* | 1 |
| *ալ–Մուբարեկա* | 1 |
| *Իֆրիկիա* | 1 |
| *Տաբարիստան* | 1 |

*Տոկոսային յարաբերակցութեամբ դրանք ներկայացնում են հետեւեալ նահանգները.*

| | | | |
|---|---|---|---|
| *Իրաք* | 68 *դրամ* | = | 74,72% |
| *Արմինիա* | 12 *դրամ* | = | 13,18% |
| *Ջեբալ* | 6 *դրամ* | = | 6,60% |
| *Ֆարս* | 2 *դրամ* | = | 2,20% |
| *Աֆրիկա* | 2 *դրամ* | = | 2,20% |
| *Տաբարիստան* | 2 *դրամ* | = | 1,10% |

---

[14] ПМК, II, 386.

Հետևեալ գանձը Հայկական ՍՍՀ Մարտունու շրջանի վերին Գետաշէն գիւղում գտնուած արծաթ դրամների գանձն է, որի նորագոյն դիրհեմը պատկանում է հիջրայի 170 (786—787) թ.[15]: Դատելով գանձի այն մասից, որը պահպանուել է և յանձնուած է մեր քննութեանը, կարող ենք նշել նրա դրամների ծագման հետևեալ տեղանունները.

| | |
|---|---|
| Մեդինատ ալ-Սալամ | 5 դրամ |
| Արմինիա | 2 դրամ |
| Վասիտ | 2 դրամ |
| ալ-Մուհամմեդիա | 2 դրամ |
| ալ-Քուֆա | 1 դրամ |
| ալ-Հարունիա | 1 դրամ |

Այդ տեղանունները ներկայացնում են խալիֆաթի հետևեալ նահանգները.

| | |
|---|---|
| Իրաք | 8 դրամ = 61,50% |
| Արմինիա | 3 դրամ = 23,10% |
| Ջեբալ | 2 դրամ = 15,40% |

Գրեթէ նոյն տուեալներն է ներկայացնում նաև Ադրբեջանական ՍՍՀ Թաուզի շրջանի Թաուզ գիւղում 1933 թ. գտնուած դրամական գանձը, որի նորագոյն դիրհեմը պատկանում է հիջրայի 170 (786—787) թ.[16]: Թաուզի դրամական գանձի կազմում Իրաքի

---

[15] ՀՊԹ, թւ. 14516, 14517, 14522, 14577, 15197, Мушегян, стр. 39.

[16] ПМК, II, 388.

դրամները (Մեդինատ աս–Սալամ՝ 5 դրամ, ալ–Բասրա՝ 2 դրամ) ներկայացնում են նրա պարունակության 70 տոկոսը: Մնացած դիրհեմները թողարկվել են ալ–Հարունիա, Մեդինատ Ջերենջ և ալ–Մուհամմեդիա քաղաքներում:

Ը. դարի վերջին տասնամյակներին է վերաբերում նաև Վրացական ՍՍՀ Սաչխարի շրջանի Սասանա գյուղում գտնված արծաթ դրամներից բաղկացած գանձը[17]: Վերջինիս պարունակության նորագույն դիրհեմը կրում է իր վրա հիջրայի 170 (786—787) տարեթիվը:

Սասանայի դրամական գանձը հիշատակում է դրամների ծագման հետևյալ տեղանունները.

| | Դրամ |
|---|---|
| Մեդինատ աս–Սալամ | 41 |
| Բասրա | 8 |
| Քուֆա | 6 |
| Արմինիա | 5 |
| Մուհամմեդիա | 3 |
| Առան | 2 |
| Վասիտ | 1 |
| Ռեյ | 1 |
| Արտաշիր–խուրրա | |

---

[17] И. Л. Джалагатания, Монетные клады Грузии, том I, Тбилиси, 1975, стр. 24, 35.

Այսպիսով Անդրկովկասում գտնուած Ը. դարի վերջին վերաբերող բոլոր դրամական գանձերը ցոյց են տալիս, որ Հայաստանի, Աղուանքի եւ Արեւելեան Վրաստանի, այսինքն խալիֆաթի «Արմինիա» նահանգի շուկաներում տարածուած են եղել առաւելապէս Իրաքի եւ Իրանի քաղաքներից դուրս եկած արծաթ դրամները:

Այժմ տեսնենք, թէ ինչ տուեալներ են ներկայացնում իններորդ դարի դրամական գանձերը: Նախ եւ առաջ յիշատակելի են Ադրբեջանական ՍՍՀ Ագդամ քաղաքում, 1934 եւ 1935 թթ. գտնուած երկու արծաթ դրամական գանձերը, որոնց մէջ ժամանակով նորագոյն դրամները թուագրուել են 188 (803—804) եւ 189 (804—805) թթ.:

Ագդամի առաջին գանձից պահպանուել են 59 արաբական դիրհեմներ[18], որոնք ըստ ծագման վերաբերում են հետեւեալ վայրերին.

| | Դրամ |
|---|---|
| ալ–Աբբասիա | 17 |
| Իֆրիկիա | 7 |
| Մեդինա–աս–Սալամ | 7 |
| ալ–Մուհամմեդիա | 7 |
| Տաբարիստան | 5 |
| Տուդղա | 2 |

[18] ПМК, II, 391.

| | Դրամ |
|---|---|
| *ալ–Բասրա* | 2 |
| *Վասիտ* | 2 |
| *Առան* | 2 |
| *Արմինիա* | 1 |
| *Ջէյ* | 1 |
| *Ջերենջ* | 1 |
| *Քերման* | 1 |
| *ալ–Քուֆա* | 1 |
| *Միսր* | 1 |

*Ըստ նահանգների այս տեղանունները ներկայացնում են.*

| | | |
|---|---|---|
| *Աֆրիկա* | 27 *դրամ* | = 45,76% |
| *Իրաք* | 12 *դրամ* | = 20,34% |
| *Ջեբալ* | 8 *դրամ* | = 13,56% |
| *Տաբարիստան* | 5 *դրամ* | = 8,47% |
| *Առան* | 2 *դրամ* | = 3,30% |
| *Արմինիա* | 1 *դրամ* | = 1,70% |
| *Քերման* | 1 *դրամ* | = 1,70% |
| *Սեջիստան* | 1 *դրամ* | = 3,38% |
| *Անտրուշ* | 2 *դրամ* | = 3,38% |

*Յիշատակուած արաբական դրամներից բացի գանձում եղել են նաեւ Խոսրով Բ. Փարուէզի* (590—628) *պահակալութեան տարիներին թողարկուած սասանեան երկու դրախմաներ, պահլաւերէն ՆԱԽ եւ ՆԱԹ նշաններով:*

Ագդամի երկրորդ գանձը ներկայացնում է (արծաթ դրամների վրա նշված) հետևյալ տեղանունները[19].

| | Դրամ |
|---|---|
| Մեդինա աս–Սալամ | 14 |
| ալ–Մուհամմեդիա | 11 |
| Առան | 9 |
| ալ–Բասրա | 7 |
| Արմինիա | 5 |
| ալ–Հարունիա | 5 |
| Վասիտ | 5 |
| Մեդինա Ջէյ | 5 |
| ալ–Քուֆա | 3 |
| Իֆրիկիա | 2 |
| Տաբարիստան | 2 |
| ալ–Աբբասիա | 1 |
| Վելիլա | 1 |
| Մեդինատ Բալխ | 1 |
| առ–Ռէյ | 1 |
| Սեջիստան | 1 |

Տարաբախտաբար, վեց դրամների վրա տեղանունների վերաբերող արձանագրությունները չեն պահպանվել։ Դրամների խմբավորումն ըստ նահանգների ցույց է տալիս նրանց տոկոսային հարաբերությունը.

[19] ПМК, III, թ. 823.

| | | |
|---|---|---|
| Իրաք | 29 դրամ | = 36,71% |
| Ջեբալ | 17 դրամ | = 21,52% |
| Արմինիա | 10 դրամ | = 12,66% |
| Առան | 9 դրամ | = 11,30% |
| Անորոշ | 6 դրամ | = 7,61% |
| Աֆրիկա | 4 դրամ | = 5,00% |
| Տաբարիստան | 2 դրամ | = 2,53% |
| Խորասան | 1 դրամ | = 1,20% |
| Սեջիստան | 1 դրամ | = 1,20% |

Համապատասխան տվյալներ է տալիս նաև Վրացական ՍՍՀ Թելավի շրջանի Պշավելի գյուղում 1937 թ. գտնված արծաթ դրամների գանձը, որը բաղկացած է սասանյան, արաբա-սասանյան, աղլաբյան և առավելապես աբբասյան դիրհեմներից[20]: Գանձի կազմի նորագույն դրամը վերաբերում է 607—608 թթ.: Իրենց ծագման տեղանուններով պշավելյան գանձի դրամները խմբավորվում են.

| | Դրամ |
|---|---|
| Մեդինատ աս-Սալամ | 36 |
| Մուհամմեդիա | 26 |
| Արմինիա | 8 |
| Ջեյ | 8 |
| Բասրա | 7 |
| Առան | 7 |

[20] И. Л. Джалагания, Монетные клады Грузии, том I, стр. 35—36; հետագայում հիշատակվում է՝ Джалагания.

| | Դրամ |
|---|---|
| Աբբասիա | 7 |
| Մաադեն Բաջունայս | 6 |
| Վասիտ | 4 |
| Իֆրիկիա | 4 |
| Զերենջ | 4 |
| Բալխ | 2 |
| Քերման | 2 |
| Քուֆա | 1 |
| ալ–Անդալուս | 1 |
| Մուբարեկ | 1 |
| Ռամհորմուզդ | 1 |

Դրամների նահանգային ստորաբաժանումը նշում է նրանց ունեցած հետևեալ տոկոսային յարաբերութիւնը.

| | | |
|---|---|---|
| Իրաք | 49 դրամ | = 39,40% |
| Տերալ | 34 դրամ | = 27,20% |
| Արմինիա | 14 դրամ | = 11,20% |
| Աֆրիկա | 11 դրամ | = 8,80% |
| Առան | 7 դրամ | = 5,60% |
| Սեջիստան | 4 դրամ | = 3,20% |
| Քերման | 2 դրամ | = 1,60% |
| Խորասան | 2 դրամ | = 1,60% |
| Իսպանիա | 1 դրամ | = 0,80% |
| Խուզիստան | 1 դրամ | = 0,80% |

Այս ժամանակներին է վերաբերում նաև Հայկական ՍՍՀ Աբովեանի շրջանի Գառնի գիւղում 1930 թ. գտնուած դրամական գանձը, որի նորագոյն դրամը կրում է

*հիջրայի* 207 (822—823) *տարեթիւը*[21]: *Ըստ դրուագման վայրերի դրամները բաշխւում են.*

| | Դրամ |
|---|---|
| *Մեդինա–աս–Սալամ* | 16 |
| *ալ–Մուհամմեդիա* | 9 |
| *ալ–Իֆրիկիա* | 3 |
| *ալ–Քուֆա* | 3 |
| *Վասիտ* | 3 |
| *ալ–Աբբասիա* | 2 |
| *ալ–Բասրա* | 2 |
| *Մեդինատ Բալխ* | 2 |
| *Մեդինատ Իսպահան* | 2 |
| *Քերման* | 2 |
| *Մաադեն Բաջունայս* | 1 |
| *Մաադեն աշ–Շաշ* | 1 |
| *Դիմեշք* | 1 |
| *Մեդինատ Զերենջ* | 1 |
| *Մեդինատ Զէյ* | 1 |
| *Մերվ* | 1 |
| *առ–Ռէյ* | 1 |
| *Տաբարիստան* | 1 |
| *Տուդդա* | 1 |
| *անորոշ* | 3 |

*Ուշագրաւ է, որ Գառնի գիւղում գտնուած Թ. դ. առաջին քառորդին պատկանող այս գանձում եւս աբբասեան դրամներից բացի կան նաեւ սասանեան Խսրով Բ.*

---

[21] *ՀՊԹ*, *թիւ* 7200—7228, 8274—8309, ПМК, III, *թիւ* 824:

Պարուէզի եւ Իրանի օմայեան նահանգապետ) Ուբէյդալլահ իբն Զիեադի, հիջրայի 62 (681—682) թ., ինչպէս նաեւ Տաբարիստանի արաբական կուսակալ Օմար իբն ալ-Ալայի (տեղական տարեգրութեան 128 = մ. թ. 770ի.) արծաթ դրամները: Այդ նոյն գանձի մէջ մտել են նաեւ յետռեֆորմեան դրամներ, որոնք թողարկուել են օմայեան խալիֆաներ՝ Աբդ-ալ-Մելիքի, Վալիդ երկրորդի եւ Հիշամի գահակալութեան տարիներին: Գտնուած գանձի դրամները ներկայացնում են հետեւեալ հարստութիւնները.

| | Դրամ |
|---|---|
| Սասանեաններ | 1 |
| Իրանի արաբական կուսակալներ | 2 |
| Օմայեաններ | 5 |
| Աբբասեաններ | 47 |
| Ընդամէնը՝ | 55 |

Ինչպէս տեսնում ենք, գանձում գերակշռում են աբբասեան դրամները, որոնք շրջանառութեան մէջ են մտել հետեւեալ խալիֆաների գահակալութեան տարիներին.

| | Դրամ |
|---|---|
| ալ-Մանսուր (754—775) | 11 |
| ալ-Մահդի (775—785) | 12 |
| առ-Ռաշիդ (786—809) | 17 |
| ալ-Ամին եւ ալ-Մամուն. համատեղ գահակալութեան (809—833) | 7 |
| Ընդամէնը՝ | 47 |

Իրենց ծագման նահանգային տուեալներով գանձի դրամները ներկայացնում են.

| | | | |
|---|---|---|---|
| Իրաք | 24 դրամ | = | 44,45% |
| Ջերալ | 13 դրամ | = | 24,08% |
| Աֆրիկա | 6 դրամ | = | 11,12% |
| Խորասան | 3 դրամ | = | 5,55% |
| Քերման | 2 դրամ | = | 3,70% |
| անորոշ՝ մէկ դիրհեմ (1,85%) | | | |
| Արմինիա | 1 դրամ | = | 1,85% |
| Մաւերաննախր | 1 դրամ | = | 1,85% |
| Սեջիստան | 1 դրամ | = | 1,85% |
| Սիրիա | 1 դրամ | = | 1,85% |
| Տաբարիստան | 1 դրամ | = | 1,85% |

Համանման ցուցմունքներ է տալիս նաեւ Հայկական ՍՍՀ Մարտունու շրջանի Ներքին Գետաշէն գիւղում գտնուած դրամական գանձը, որի նորագոյն դրամը թուագրուել է հիջրայի 220, այսինքն մ. թ. 835 թ.[22]:

Գետաշէնի յիշեալ գանձի դրամները ըստ հարստութեան բաշխւում են.

| | |
|---|---|
| Սասանեաններ | 1 դրամ |
| Օմայեաններ | 1 դրամ |
| Աբբասեաններ | 18 դրամ |
| Ընդամէնը՝ | 20 դրամ |

Ըստ դրամների ծագման վայրերի.

[22] ՀՊԹ, Թիւ 17735/1—20:

| | Դրամ |
|---|---|
| Մեդինատ աս-Սալամ | 5 |
| ալ-Աբբասիա | 4 |
| ալ-Մուհամմեդիա | 3 |
| Մեդինատ բալխ | 2 |
| ալ-Քուֆա | 1 |
| Վասիտ | 1 |
| Իսպահան | 1 |
| Սամարքանդ | 1 |
| Առան | 1 |
| Նիհաւենդ | 1 |

Ըստ նահանգների․

| | |
|---|---|
| Իրաք | 7 դրամ = 35% |
| Ջեբալ | 5 դրամ = 25% |
| Աֆրիկա | 4 դրամ = 20% |
| Խորասան | 2 դրամ = 10% |
| Առան | 1 դրամ = 5% |
| Սոգդ | 1 դրամ = 5% |

Նոյնքան ուշագրաւ տուեալներ է պարունակում Մթիսձիրեան գանձը, որը գտնուել է Վրացական ՍՍՀ Կուարելեան շրջանում[23]։ Գանձի նորագոյն դրամը վերաբերում է 810—833 թթ․, ըստ որում պահպանուած բոլոր արծաթ դրամները իրենց ծագման հարստութեան տուեալներով ներկայացնում են հետեւեալ խմբերը․

[23] Джалагания, стр. 38.

| | |
|---|---|
| *Սասանեաններ* | 3 *դրամ* |
| *Օմայեաններ* | 16 *դրամ* |
| *Աբբասեաններ* | 283 *դրամ* |
| *Իդրիսեաններ* | 3 *դրամ* |
| *Ընդամէնը՝* | 305 *դրամ* |

*Իրենց ծագման տեղանուններով Մթիս-ձիրեան գանձի դրամները ստորաբաժան-ւում են.*

| | Դրամ |
|---|---|
| *Մեդինա աս-Սալամ* | 84 |
| *ալ-Մուհամմեդիա* | 49 |
| *ալ-Աբբասիա* | 35 |
| *Իֆրիկիա* | 20 |
| *ալ-Քուֆա* | 19 |
| *Բասրա* | 16 |
| *Ջէյ* | 12 |
| *Առան* | 10 |
| *Վասիտ* | 8 |
| *Մադեն Բաջունայս* | 7 |
| *առ-Ռեյ* | 4 |
| *Ջերենջ* | 4 |
| *Հարունիա* | 3 |
| *Քերման* | 3 |
| *Դիմեշք* | 1 |
| *Արմինիա* | 3 |
| *Վելիլա* | 3 |
| *Արտաշիր Խուրրա* | 2 |
| *Հարունաբադ* | 2 |

| | Դրամ |
|---|---|
| *ատ–Թաֆիկա* | 2 |
| *Բալխ* | 2 |
| *Սեջիստան* | 2 |
| *Հերաթ* | 1 |
| *Շեք–ալ–Տէյմերա* | 3 |
| *աս–Սամխա* | 1 |
| *ալ–Անդալուս* | 3 |
| *Մերվ* | 1 |
| *Սամարքանդ* | 1 |
| *Նիշապուր* | 1 |
| *անորոշ* | 3 |

*Այլ կերպ ասած՝ Մթխաձիրեան գանձի դրամները ապրանքային փոխանակութեան միջազգային շուկայում ներկայացնում են արաբական տիրակալութեան հետեւեալ երկ–րամասերը·*

| | Դրամ |
|---|---|
| *Իրաք* | 127 |
| *Ջեբալ* | 66 |
| *Աֆրիկա* | 56 |
| *Արմինիա* | 15 |
| *Առան* | 10 |
| *Սեջիստան* | 6 |
| *Խորասան* | 6 |
| *Ֆարս* | 3 |
| *Քերման* | 3 |
| *Ջեզիրա* | 2 |
| *Սիրիա* | 2 |
| *Իսպանիա* | 1 |

Նման ցուցմունքներ է տալիս նաև Վրացական ՍՍՀ Բոգդանովկայի շրջանի Դելիսեան գիւղում գտնուած (1949 թ.), իններորդ դարի երեսնական թթ. պատկանող գանձը[24], որի արծաթ դրամները իրենց պատկերագրութեան տեսակներով խմբաւորւում են.

| | Դրամ |
|---|---|
| Սասանեաններ | 1 |
| Տաբարիստանի աբբասեան կուսակալներ | 2 |
| Օմայեաններ | 5 |
| Աբբասեաններ | 25 |

Այս գանձից պահպանուած յիշեալ դրամների մօտ կէսը դրուագման տեղանունների եւ արձանագրութիւնների մանրամասնութիւնների ընթերցման տեսակէտից, ցաւօք, մնացել են անորոշ: Սակայն որոշուածները ներկայացնում են իրենց ծագման հետեւեալ տեղանունները.

| | Դրամ |
|---|---|
| Մեդինա աս-Սալամ | 4 |
| Վասիտ | 3 |
| Իֆրիկիա | 3 |
| Դիմեշկ | 2 |
| Տաբարիստան | 2 |
| ալ-Աբբասիա | 1 |
| Արմինիա | 1 |

[24] Джалагания, 29; ПМК, VI, թիւ 1607.

| | Դրամ |
|---|---|
| Ադան | 1 |
| Սեջիստան | 1 |
| Ռէյ | 1 |

Յաջորդ գանձը Հայկական ՍՍՀ Շամշադինի շրջանի Պառաւաքար գիւղի հանդում գտնուած (1970 թ.) գանձն է, որի կազմի նորագոյն արծաթ դրամը թողարկուել է հիջրայի 228 թ. այսինքն մ. թ. 842—843 թթ.[25]: Դրամների խմբաւորումն ըստ նրանց ծագման վայրերի ցոյց է տալիս.

| | Դրամ |
|---|---|
| ալ-Աբբասիա | 6 |
| Մեդինա աս-Սալամ | 5 |
| Մեդինա Ռէյ | 2 |
| անորոշ | 2 |
| Իֆրիկիա | 1 |
| Մադէն Բաջունայս | 1 |
| Միսր | 1 |
| ալ-Մուհամմեդիա | 1 |

Այլ կերպ ասած՝ գանձի դրամները տոկոսային յարաբերութեամբ ներկայացնում են խալիֆաթի հետեւեալ նահանգները.

| | | |
|---|---|---|
| Աֆրիկա | 8 դրամ | = 42,10% |
| Իրան | 3 դրամ | = 15,79% |
| անորոշ | 2 դրամ | = 10,54% |
| Իրաք | 5 դրամ | = 26,31% |
| Հայաստան | 1 դրամ | = 5,26% |

25 ՀՊԹ, թիւ 18446/1—19:

Առաւել հարուստ տուեալներով ներկայանում է մեր առաջ Հայկական ՍՍՀ Մարտունու շրջանային կենտրոնում գտնուած դրամական գանձը[26], որից պահպանուած դրամների շարքում նորագոյնը թողարկուել է հիջրայի 236, այսինքն՝ մ. թ. 850—851 թթ.: Ըստ հարստութեան գանձի դրամները ներկայացնում են.

| | |
|---|---|
| Սասանեաններ | 3 դրամ |
| Օմայեաններ | 11 դրամ |
| Աբբասեաններ | 72 դրամ |

Բացի դրանցից, այդ նոյն գանձում կան նաեւ Իրանի օմայեան կուսակալներից Զիյադ իբն Աբու Սուֆեանի անունով հիջրայի 41—55, այսինքն՝ մ. թ. 664—675 թթ. թողարկուած, այսպէս կոչուած՝ «արաբա-սասանեան» երկու արծաթ դրամներ եւ Տաբարիստանի աբբասեան նահանգապետ Օմար իբն ալ-Ալայի իշխանութեան տարիներին տեղական տոմարի 132 թ., այսինքն՝ մ. թ. 783—784 թթ. դրուագուած մէկ հատ կէս դրախմանոց: Մարտունու գանձի պահպանուած դրամները յիշատակում են իրենց ծագման հետեւեալ վայրերի անունները.

| | Դրամ |
|---|---|
| Մեդինատ աս-Սալամ | 16 |
| ալ-Մուհամմեդիա | 8 |
| ալ-Աբբասիա | 6 |

26 ՀՊԹ, թիւ 17749—17758:

| | Դրամ |
|---|---|
| *Վասիտ* | 6 |
| *Մեդինատ Սամարքանդ* | 5 |
| *Մեդինատ Բալխ* | 2 |
| *Մեդինատ Զերենջ* | 2 |
| *Առան* | 1 |
| *Արմինիա* | 1 |
| *ալ-Քուֆա* | 1 |
| *աշ-Շաշ* | 1 |
| *Սուրա-մին Ռաա* | 1 |
| *Քերման* | 1 |
| *Սաանա* | 1 |
| *Տաբարիստան* | 1 |

*Մնացած դրամների վրա, տարաբախտաբար, տեղանուններին վերաբերող գրութիւններ չեն պահպանուել:*

*Մարտունու գանձի աբբասեան դրամները իրենց վրա ունեցած արձանագրութիւններով յիշատակում են հետեւեալ խալիֆների անունները, որոնց գահակալութեան տարիներին դրանք մտել են շրջանառութեան մէջ*[27].

| | Դրամ |
|---|---|
| *ալ-Մանսուր* (136—158 = 754—775) | 4 |
| *ալ-Մահդի* (158—169 = 775—785) | 6 |
| *ալ-Հադի* (169—170 = 785—786) | 1 |
| *ար-Ռաշիդ* (170—193 = 786—809) | 37 |

---

27 *Գահակալութեան տարեթուերը նշուած են ինչպէս հիջրայի, այնպէս էլ մեր տարեգրութեան սկզբունքով:*

| | | |
|---|---|---|
| ալ-Մամուն | (195—218 = 810—833) | 3 |
| ալ-Մուտասիմ | (218—227 = 833—842) | 5 |
| ալ-Վասիկ | (227—232 = 842—847) | 2 |
| ալ-Մութավաքքիլ | (232—247=847—861) | 14 |

Ինչպես տեսնում ենք, աբբասեան դրամների առաւելագոյն մասը վերաբերում է Հարուն առ-Ռաշիդի տարիներին եւ հետագայում այդ առաւելութիւնը պահպանուել է: Սակայն Մարտունու գանձը հետաքրքրական է նաեւ իր պարունակած արծաթ դրամների կոտորակային մասերով: Այսպէս, օրինակ, գանձի մէջ հաւաքուած են.

| | Հատ |
|---|---|
| ամբողջական դիրհեմներ | 18 |
| դիրհեմի $^{2}/_{3}$ մասը | 3 |
| դիրհեմի $^{3}/_{4}$ մասը | 5 |
| դիրհեմի $^{1}/_{2}$ մասը | 9 |
| դիրհեմի $^{1}/_{3}$ մասը | 7 |
| դիրհեմի $^{1}/_{4}$ մասը | 22 |
| դիրհեմի $^{1}/_{5}$ մասը | 17 |
| դիրհեմի $^{1}/_{6}$ մասը | 6 |
| դիրհեմի $^{1}/_{8}$ մասը | 2 |
| Ընդամէնը՝ | 89 |

Անհրաժեշտ ենք համարում նշել, որ Հայաստանում եւ նրան հարեւան երկրներում ամբողջականներից մասերի վերածուած արծաթ դրամների յայտնաբերումները շատ չեն, հետեւաբար նրանց չրջանառութեան

մասին պատելու զանգուածային տուեալներ չկան: Հայաստանի դրամական տնտեսութեան համար Մարտունու այս գանձը մնում է դեռեւս իբրեւ բացառիկ վկայութիւն:

Յիշատակելի է նաեւ Վրաստանում[28] գտնուած, Թ. դ. կէսին վերաբերող մէկ ուրիշ գանձ, որը բաղկացած է բացառապէս արաբական դիրհեմներից՝ հետեւեալ յարաբերութեամբ.

| | |
|---|---|
| օմայեաններ | 15 դրամ |
| աբբասեաններ | 37 դրամ |

Ըստ ծագման վայրերի այդ գանձի դրամները խմբաւորւում են.

| | Դրամ |
|---|---|
| Մեդինատ–աս–Սալամ | 19 |
| Վասիտ | 9 |
| Բասրա | 3 |
| Մուհամմեդիա | 3 |
| Ջէյ | 2 |
| Արմինիա | 2 |
| Իսպահան | 2 |
| Սամարքանդ | 2 |
| Սուրա–մէն–Ռաա | 2 |
| Դիմեշք | 1 |
| ատ–Սամիա | 1 |
| Սուք–ալ–Ահվազ | 1 |
| Քերման | 1 |

[28] Джалагания, նշուած աշխ. էջ 40:

| | Դրամ |
|---|---|
| *Մահի* | 1 |
| *Քուֆա* | 1 |
| *Բալխ* | 1 |
| *առ–Ռաֆիկա* | 1 |

*Գանձի վերջին դրամը թողարկուել է խալիֆ ալ–Մութաուաքքիլի* (847—861) *իշխանութեան տարիներին: Ինչպէս տեսնում ենք այստեղ չկան Իսպանիայում եւ Աֆրիկայում դրուագուած դրամներ:*

*Ըստ նահանգների դրամները ներկայացնում են.*

| | | | |
|---|---|---|---|
| *Իրաք* | 34 *դրամ* | = | 65,40% |
| *Ջեբալ* | 7 *դրամ* | = | 13,45% |
| *Խորասան* | 4 *դրամ* | = | 7,69% |
| *Արմինիա* | 2 *դրամ* | = | 3,85% |
| *Սիրիա* | 2 *դրամ* | = | 3,85% |
| *Ջեզիրա* | 1 *դրամ* | = | 1,92% |
| *Քերման* | 1 *դրամ* | = | 1,92% |
| *Խուզիստան* | 1 *դրամ* | = | 14,92% |

*Աբբասեան դրամների առաւելութեամբ Արմենիայում զարգացել է դրամական շրջանառութիւնը նաեւ Թ. դ. վերջին: Այդ մասին վկայում է Վրացական ՍՍՀ Ախմետեան շրջանի Պիչխովան գիւղում գտնուած գանձը, որի նորագոյն դրամները վերաբերում են ալ–Մուտադիդ խալիֆայի* (892—

902) պաշտակալութեան տարիներին [29]: Գանձի դրամները յիշատակում են իրենց ծագման հետեւեալ տեղանունները·

| | Դրամ |
|---|---|
| Մեդինատ աս–Սալամ | 41 |
| ալ–Մուհամմեդիա | 9 |
| ալ–Բասրա | 8 |
| Վասիտ | 7 |
| ալ–Կուֆա | 6 |
| ալ–Աբբասիա | 3 |
| Սամարքանդ | 3 |
| Իֆրիկիա | 2 |
| Արմինիա | 2 |
| աշ–Շաշ | 2 |
| Մաադին Բաջունայս | 2 |
| Հերաթ | 1 |
| Իսպահան | 2 |
| Սուրա–մին–Ռաա | 2 |
| Քերման | 1 |
| Ռամ–Հուրմուզդ | 1 |
| Դիմեշք | 1 |
| ալ–Անդալուս | 1 |
| Առան | 1 |
| Զերենջ | 1 |
| Բուխարա | 1 |
| Բեղաա | 1 |
| Տուդղա | 1 |

[29] Джалагания, էջ 41—42:

*Սրանց խմբաւորումը նահանգների կար-գով արտացոլւում է.*

| | | |
|---|---|---|
| *Իրաք* | 64 *դրամ* | = 64,65% |
| *Ջեբալ* | 11 *դրամ* | = 11,11% |
| *Աֆրիկա* | 7 *դրամ* | = 7,07% |
| *Մաւերաննախր* | 6 *դրամ* | = 6,06% |
| *Արմինիա* | 4 *դրամ* | = 4,04% |
| *Իսպանիա* | 1 *դրամ* | = 1,01% |
| *Առան* | 1 *դրամ* | = 1,01% |
| *Սիրիա* | 1 *դրամ* | = 1,01% |
| *Խուզիստան* | 1 *դրամ* | = 1,01% |
| *Խորասան* | 1 *դրամ* | = 1,01% |
| *Սեջիստան* | 1 *դրամ* | = 1,01% |
| *Քերման* | 1 *դրամ* | = 1,01% |

*Ուշագրաւ է նաեւ Ժ. դարի վերջին պատկանող, Մինդեչաուրի պեղումներից յայտնաբերուած* (1948 *թ.*) *դրամական գանձը*[30], *որը բաղկացած է հետեւեալ քաղաքների ու երկրամասերի արծաթ դրամներից.*

| | Դրամ |
|---|---|
| *Մեդինա աս–Սալամ* | 8 |
| *Սամարքանդ* | 5 |
| *Արմինիա* | 4 |
| *Վասիտ* | 4 |
| *Ջէյ* | 4 |

[30] ПМК, V, *թիւ* 1454:

| | Դրամ |
|---|---|
| *ալ-Մուհամմեդիա* | 3 |
| *Բասրա* | 1 |
| *Դարաբջիրդ* | 1 |
| *Սուրրա-մեն-Ռաա* | 1 |
| *աս-Սամիա* | 1 |
| *Սանաա* | 1 |

*Սրանց հետ միասին նոյն գանձում եղել են սասանեան 25 եւ խիստ մաշուած 22 դրամներ ։ Աշխարհագրական ծագումով յայտնի, յիշեալ 36 դրամները ներկայացնում են հետեւեալ նահանգները·*

| | | | |
|---|---|---|---|
| *Իրաք* | 14 *դրամ* | = | 38,81% |
| *Ջեբալ* | 7 *դրամ* | = | 19,43% |
| *Մաւերաննահր* | 5 *դրամ* | = | 13,90% |
| *Արմինիա* | 4 *դրամ* | = | 11,12% |
| *Աֆրիկա* | 3 *դրամ* | = | 8,40% |
| *Ֆարս* | 1 *դրամ* | = | 2,78% |
| *Ջեզիրա* | 1 *դրամ* | = | 2,78% |
| *Սիրիա* | 1 *դրամ* | = | 2,78% |

*Ամփոփելով Թ. դարին վերաբերող վերոյիշեալ դրամական գանձերի քննութեան, տուեալները, կարող ենք արձանագրել մեր հետեւութիւնները·*

*ա. Հայկական քաղաքներում Թ. դ. ողջ ընթացքում լայն տարածում են ունեցել արաբեան դիրհեմները, որոնք թողարկւում էին Արեւելեան խալիֆաթի տարբեր երկրա-*

մասերում եւ ունէին միջազգային շրջանառութիւն․

Բ․ Հայաստանում, ինչպէս նաեւ հարեւան երկրներում արաբական դրամների հետ միասին շրջանառութեան մէջ գործածական նշանակութիւն են ունեցել հնուց մնացած սասանեան դրախմաները եւ դրանց ընդօրինակութեամբ թողարկուած այսպէս կոչուած «արաբա-սասանեան» արծաթ դրամները։ Շրջանառութեան մէջ են եղել նաեւ հնուց մնացած օմայեան արծաթ դրամները, որոնք աբբասեան դրամների հետ միասին ընդունուում էին առեւտրում։ Սակայն ինչպէս օմայեան, այնպէս էլ սասանեան եւ արաբա-սասանեան արծաթ դրամները Թ․ դարի ընթացքում նուազել են ու հետագայում լրիւ սպառուել։

Գ․ Հայաստանում եւ հարեւան երկրներում լայնօրէն տարածուած արծաթ դրամները եղել են առաւելապէս Ը․ դարի վերջին եւ Թ․ դարի առաջին երեք տասնամեակներում թողարկուած աբբասեան դիրհեմները։ Հետագայում այդ առաւելութիւնը պահպանուել է։ Աբբասեան առաջին հինգ խալիֆների օրօք աւելի շատ դրամներ են մտել շրջանառութեան մէջ, քան նրանց յաջորդների օրօք։ Թ․ դարի վերջին պատկանող դանձերը բաղկացած են առաւելապէս վաղ աբբասեան ժամանակների, մասնաւորապէս ալ-Մանսուր (754—775), ալ-Մա°հդի (775—785), Հարուն առ-Ռաշիդ (786—809) եւ նրա

գահաժառանգներ ալ-Ամին (809—813) ու ալ-Մամուն (810—833) խալիֆաների իշխանութեան տարիներին:

դ. Հայաստանը ընդգրկուած է նչել Արեւելեան խալիֆաթի տիրակալութեան երկրների միջեւ ընթացող միջազգային առեւտրի ոլորտը: Ապրանքա – դրամական յարաբերութիւնների զարգացման միջոցով հայկական շուկաներն են թափանցել Իրաքի, Սիրիայի, Ջեբալի, Ջեզիրայի, Ֆարսի, Խուզիստանի, Խորասանի, Սեջիստանի, Մաւերաննահրի եւ անգամ արաբական տիրակալութեան աֆրիկեան ու սպանական քաղաքներում թողարկուած արծաթ դրամները: Սակայն Հայաստանում եւ հարեւան երկրներում Թ. դ. տարածուած աբբասեան դրամների շարքում առաւելութիւնը պատկանել է Իրաքի (Մեդինատ-աս-Սալամ, ալ-Բասրա, ալ-Քուֆա, Վասիտ) եւ այնուհետեւ Իրանի (ալ-Մուհամմեդիա, Ռէյ, Իսպահան), ինչպէս նաեւ բուն Հայաստանի եւ Աղուանքի քաղաքներում թողարկուած արծաթ դրամներին:

ե. Մինչեւ Թ. դարի 30ական թթ. Հայաստանի, Աղուանքի եւ արեւելեան Վրաստանի քաղաքներում նկատելի տարածում են ունեցել նաեւ Միջերկրականի աֆրիկեան շուկաներից (ալ-Աբբասիա, Իֆրիկիա, Վելիլա, Տուղղա) դուրս եկած արծաթ դրամները: Սակայն հետագայում Աֆրիկայի հիւսիսային ափերից եկող դրամների հոսանքը

թուլացել էր եւ արդէն Թ. դարի վերջին այն լրիւ աննկատելի է դառնում:

Գ. Հայաստանի եւ հարեւան երկրների ապրանքա—դրամական գործարաններէն բնորոշ է եղել ամբողջական արծաթ դրամների ընդունելութիւնը: Արտաքին ու ներքին առեւտրում ամբողջական դրամները ընդունուել են ինչպէս հատ հաշուով, այնպէս էլ արծաթի կշռային չափերով: Մասերի վերածուած (կտրատուած) արծաթ դրամները հայկական քաղաքներում զանգուածային տարածում չեն ունեցել:

Այժմ (Անդրկովկասում գտնուած դրամական գանձերի քննութեամբ) տեսնենք, թէ արեւելեան ինչպիսի դրամներ են տարածուած եղել Հայաստանում Ժ. դարում եւ այդ դրամները միջազգային կապերի ինչ ուղղութիւններ են յիշատակում:

Նախ եւ առաջ ուշագրաւ է Դուինում յայտնաբերուած Ժ. դարի առաջին կէսին վերաբերող 20 արծաթեայ դրամներից բաղկացած գանձը[31]: Ըստ հաստատութիւնները Դուինի գանձը ներկայացնում է.

| | |
|---|---|
| Աբբասեաններ | 19 դրամ |
| Սաջեաններ | 1 դրամ |

Աբբասեան արծաթ դրամները թողարկուել են հետեւեալ խալիֆաների գահակա—

[31] Мушегян, стр. 139.

լութեան տարիներին, նրանց անունների յի-
շատակութեամբ.

| | Դրամ |
|---|---|
| Հարուն ար-Ռաշիդ (786—804) | 1 |
| ալ-Մուտամիդ (870—892) | 1 |
| ալ-Մուտադիդ (892—902) | 1 |
| ալ-Մուկտաֆի (902—908) | 2 |
| ալ-Մուկտադիր (908—932) | 11 |
| ալ-Կահիր (932—934) | 2 |
| ար-Ռադի (934—940) | 1 |

Սաջեան հարստութիւնը ներկայացուած է Յուսուֆ իբն Դիւդադի անունով 931 թ. Հայաստանում (Արմինիա) թողարկուած մէկ հատ արծաթ դրամով:

Իրենց ծագման աշխարհագրական տուեալներով, ըստ դրուագման տեղանունների գանձի դրամները բաշխւում են.

| | |
|---|---|
| Մեդինատ աս-Սալամ | 6 դրամ = 30% |
| Նիսիբին | 3 դրամ = 15% |
| Տուստեր մին ալ-Ահվազ | 2 դրամ = 10% |
| Արմինիա | 1 դրամ = 5% |
| Շիրազ | 1 դրամ = 5% |
| ալ-Բասրա | 1 դրամ = 5% |
| Վասիտ | 1 դրամ = 5% |
| Ռաս ալ-Այն | 1 դրամ = 5% |
| Խառան | 1 դրամ = 5% |
| անորոշ | 3 դրամ = 15% |

Այդ դրամների խմբաւորումը՝ ըստ երկրամասերի կարգով ցոյց է տալիս.

| | | |
|---|---|---|
| Իրաք | 8 դրամ | = 40% |
| Չաղիրա | 5 դրամ | = 25% |
| Խուզիստան | 2 դրամ | = 10% |
| Ֆարս | 1 դրամ | = 5% |
| Արմինիա | 1 դրամ | = 5% |
| անորոշ | 3 դրամ | = 15% |

Ինչպէս տեսնում ենք, Ժ. դարի առաջին կէսին եւս Հայաստանի դրամական տնտեսութեան մէջ բացայայտ առաւելութիւն ունէին աբբասեան դրամները: Միաժամանակ ի դէմս Սաջեան Յուսուֆ իբն Դիւդադի, նշւում է բոլորովին նոր հարստութիւն թողարկած արծաթ դրամի առկայութիւնը: Արտաքնապէս չնչին թուացող, բայց նոր այս տուեալը որոշակի պարզութեամբ դիտւում է Այրարատեան դաշտից բաւական հեռու, նախկին Բորչալուի, այժմեան Վրացական ՍՍՀ Մարնէուլի, շրջանում գտնուած դրամական գանձի կազմով[32]: Մէկ գանձում հաւաքուած են ոչ միայն աբբասեան, այլեւ Սաֆֆարեան, Սամանեան, Բուվէյհեան, Սաջեան եւ այլ հարստութիւնների արծաթ դրամները: Գանձի պարունակութիւնից պահպանուած շուրջ 300 արծաթ դրամներից նորագոյնը կրում է հիջրայի 334

[32] ПМК, I, 28.

(*այսինքն՝ մ. թ.* 945—946) *տարեթիւը։* *Որոշուած դրամները յիշատակում են իրենց ծագման հետեւեալ տեղանունները.*

| | Դրամ |
|---|---|
| *Մեդինատ աս-Սալամ* | 34 |
| *Մոսուլ* | 14 |
| *Նիսիբին (Մծբին)* | 8 |
| *Սուրրա-Մեն-Ռաա* | 8 |
| *Բասրա* | 3 |
| *Վասիտ* | 3 |
| *Սամարքանդ* | 3 |
| *աշ-Շաշ* | 3 |
| *ալ-Ահվազ* | 2 |
| *Սուք-ալ-Ահվազ* | 2 |
| *Տուստեր-Մին-ալ-Ահվազ* | 2 |
| *ալ-Քուֆա* | 2 |
| *ալ-Մուհամմեդիա* | 2 |
| *Ռաս ալ-Այն* | 2 |
| *Ամիդ* | 1 |
| *Անտակիա* | 1 |
| *Արդեբիլ* | 1 |
| *Արմինիա* | 1 |
| *Առռաջան* | 1 |
| *Ջեզիրա* | 1 |
| *ար-Ռաֆիկա* | 1 |
| *Թիֆլիս* | 1 |
| *Շիրազ* | 1 |
| *Ֆարս* | 1 |
| *Ջնջուած* | 14 |

*Սրանց նահանգային խմբավորումը արտահայտվում է.*

| | | |
|---|---|---|
| *Իրաք* | 50 *դրամ* | = 44,70% |
| *Ջեզիրա* | 27 *դրամ* | = 24,20% |
| *Խորասան* | 6 *դրամ* | = 5,40% |
| *Խուզիստան* | 6 *դրամ* | = 5,40% |
| *Ֆարս* | 3 *դրամ* | = 2,70% |
| *Ջեբալ* | 2 *դրամ* | = 1,80% |
| *Ադրբեջան* | 1 *դրամ* | = 0,90% |
| *Արմինիա* | 1 *դրամ* | = 0,90% |
| *Վրաստան* | 1 *դրամ* | = 0,90% |
| *Սիրիա* | 1 *դրամ* | = 0,90% |
| *անորոշ* | 14 *դրամ* | = 12,20% |

*Արաբական տիրակալության տարբեր երկրամասերում առաջացած նոր հարստությունների թողարկած դրամների շրջանառությունը գնալով ավելի ծավալուն էր դառնում Ժ. դ. երկրորդ կեսին: Կարևոր ցուցմունքներ են տալիս այդ մասին երկու դրամական գանձեր, որոնք գտնվել են պատմական Աղուանքի հարավ-արևելքում: Դրանցից մեկը բացվել է այժմեան Ադրբեջանական ՍՍՀ Մասսայլինեան շրջանի Բանդաշի գյուղում,* 1946 *թ. հողային աշխատանքների ժամանակ: Գանձից պահպանված* 61 *արծաթ դրամների շարքում նորագույնը՝ կրում է իր վրա հիջրայի* 342 (*այսինքն՝ մ. թ.* 953) *տարեթիվը*[33]*: Հավաքված դրամների*

[33] ПМК, IX, *թիվ* 2106.

խմբաւորումն ըստ հարստութիւնների եւ իշխող էմիրների նշում է գանձի հետեւեալ կազմը·

| | |
|---|---|
| Աբբասեաններ | 39 դրամ |
| Բուվեյհեաններ | 12 դրամ |
| Սամանեաններ | 5 դրամ |
| Ադրբեջանի էմիրներ | 3 դրամ |
| Տոխարիստանի էմիրներ | 3 դրամ |
| Սաալուկեաններ | 1 դրամ |

Ինչպէս տեսնում ենք, Բամբաշխում յայտնաբերուած գանձը բաղկացած է առաւելապէս աբբասեան արծաթ դրամներից, սակայն դրանց կողքին առկայ են Սամանեան եւ Բուվեհեան էմիրների դիրհեմները, որոնք Ժ. դարում լայն տարածում ունէին Իրանի հարաւ–արեւելեան շրջաններում, մասնաւորապէս Խորասանում եւ Ֆարսում։ Այս գանձը հնարաւորութիւն է տալիս ենթադրելու, որ առանձին դէպքերում միջազգային առեւտուրը Կուր–Արաքս միջագետքի տնտեսական շրջանները կարող էր մղել Ժ. դարում հզօրացած իրանական ծագում ունեցող էմիրութիւնների արծաթ դրամները։ Դրանք գալիս էին աբբասեան դիրհեմների հետ խառնուած եւ միասին սպասարկում էին ապրանքափոխանակութեան պահանջները։ Արտաքնապէս սամանեան եւ բուվեհեան դիրհեմները, ինչպէս նաեւ մուսուլմանական էմիրութիւնների Թ.—Ժ. դարերում թողարկուած արծաթ

դրամները շատ չէին տարբերւում աբբասեան դիրհեմներից եւ պահպանում էին արաբատառ արձանագրութիւնների ձեւաւորման այն հիմնական սկզբունքները, որոնք ընդունուած էին մահմեդական Արեւելքում: Գանձի մէջ եղած դրամների խմբաւորումը նրանց ծագման տեղանուններով արտացոլում է.

| | Դրամ |
|---|---|
| Մեդինատ աս-Սալամ | 13 |
| ալ-Բասրա | 10 |
| ալ-Մուհամմեդիա | 6 |
| ալ-Ահվազ | 4 |
| Շիրազ | 4 |
| Սամարքանդ | 2 |
| Ադրբեջան | 2 |
| Ամիդ | 1 |
| Արմինիա | 1 |
| Բերդաա | 1 |
| Իսպահան | 1 |
| Նիսիբին | 1 |
| Վասիտ | 1 |
| Սուրրա-մին-Ռաա | 1 |
| Սիրաֆ | 1 |
| Ենդերաբէ | 1 |
| Ջնջուած | 11 |

Ինչպէս տեսնում ենք, Ժ. դարի երկրորդ կէսին շարունակւում էր դրամների թողարկումը տնտեսական կեանքի գրեթէ նոյն կենտրոններում:

Այդ տեսակէտից դրամների խմբաւո-

ւորումը համապատասխան երկրամասերի արտացոլում է նրանց առևտրային յարաբերութիւնը.

| | | |
|---|---|---|
| Իրաք | 25 դրամ | = 41,00% |
| Ջեբալ | 7 դրամ | = 11,43% |
| Ֆարս | 5 դրամ | = 8,20% |
| Խուզիստան | 4 դրամ | = 6,57% |
| Խորասան | 3 դրամ | = 4,93% |
| Ջազիրա | 2 դրամ | = 3,28% |
| Ադրբեջան | 2 դրամ | = 3,28% |
| Արմինիա | 1 դրամ | = 1,64% |
| Առան | 1 դրամ | = 1,64% |
| Չնջուած | 11 դրամ | = 18,05% |

Քաղաքական պատմութեան տեսակէտից գանձի դրամները ներկայացնում են ոչ միայն հարստութիւններ, այլեւ նրանց առանձին գահակալներին, ինչպէս նաեւ առանձին էմիրութիւնների տիրակալներին, նրանց տիտղոսների արձանագրութիւններով: Այսպէս օրինակ.

Աբբասեաններ

| | | Դրամ |
|---|---|---|
| ալ-Մամուն | (195—218 = 810—833)[34] | 1 |
| ալ-Մուտազ | (252—253 = 866—869) | 2 |
| ալ-Մուտադիդ | (279—289 = 892—902) | 5 |

---

[34] Ժամանակագրութիւնը տրւում է ինչպէս հիջրայի, այնպէս էլ քրիստոնէական տոմարի թուերով:

## *Աբբասեաններ*

| | Դրամ |
|---|---|
| *ալ-Մուկտաֆի* (289—295 = 902—908) | 1 |
| *ալ-Մուկտադիր* (295—320 = 908—932) | 14 |
| *ալ-Կախիր* (320—322 = 932—934) | 1 |
| *առ-Ռադի* (322—329 = 934—940) | 8 |

## *Սամանեաններ*

| | |
|---|---|
| *Նասր իբն Ահմեդ* (301—331 = 914—943) | 5 |

## *Բուվեհեաններ*

| | |
|---|---|
| *Իմադ ադ-Դաուլա Ալի* (322—338 = 934—949) | 6 |
| *Մուիզզ ադ-Դաուլա Ահմեդ* (334—356 = 945—967) | 3 |
| *Ռուկն ադ-Դաուլա Հասան* (355—366 = 947—977) | 2 |
| *Ազուդ ադ-Դաուլա Ֆանա Խուսրաու* (338—372 = 949—983) | 1 |

## *Սաալուկեաններ*

| | |
|---|---|
| *Մուհամմեդ իբն Ալի* (298—316 = 910—929) | 1 |

## *Ադրբեջանի էմիրներ*

| | |
|---|---|
| *Մուֆլիխ ալ-Յուսուֆի* (319—323 = 931—935) | 1 |
| *Դայսամ իբն Իբրահիմ* (325—341 = 937—953) | 2 |

## *Տոխարիստանի էմիր*

| | |
|---|---|
| *Ահմեդ իբն Սախլ* (304 = 916—917) | 1 |

Ժ. դարի երրորդ քառորդին պատկանող այս տուեալները հաստատում են Եաղ Կի-բաղի գիւղում յայտնաբերուած գանձի դրամներով, որոնք թէեւ գտնուել են Աղուանքում, բայց առատ լոյս են սփռում Հայաստանի եւ հարեւան երկրների պատմութեան հարցերի վրայ: Շուրջ երեք հարիւր արծաթ դրամներից բաղկացած այդ գանձը, որի նորագոյն դիրհեմը կրում է իր վրայ հիջրայի 342 (այսինքն՝ մ. թ. 953—954) տարեթիւը, ներկայացնում է Արեւելքի պատմութեան ասպարէզը մասած հետեւեալ տէրութիւնների դրամական միաւորները տեղական յարաբերութեամբ արտայայտած.

| | | | |
|---|---|---|---|
| Սասանեաններ | 4 | դրամ = | 1,36% |
| Օմայեաններ | 1 | դրամ = | 0,34% |
| Աբբասեաններ | 157 | դրամ = | 53,30% |
| Սաֆֆարեաններ | 1 | դրամ = | 0,34% |
| Սամանեաններ | 31 | դրամ = | 10,54% |
| Բուվեհեաններ | 59 | դրամ = | 20,06% |
| Բողբոսի մաշուած արձանագրութիւններով | 12 | դրամ = | 4,10% |
| Սալլարեաններ | 1 | դրամ = | 0,34% |
| Համդանեաններ | 11 | դրամ = | 3,74% |
| Վեջիհեաններ | 1 | դրամ = | 0,34% |
| Անդերարի էմիրներ | 6 | դրամ = | 2,03% |
| Ադրբեջանի էմիրներ | 5 | դրամ = | 1,70% |
| Տաբարիստանի էմիրներ | 3 | դրամ = | 1,02% |
| Ոմարայի էմիրներ | 2 | դրամ = | 0,68% |

*Գանձի վերոյիշեալ կազմը ցոյց է տալիս, որ Ժ. դարի երրորդ քառորդին արծաթեայ արեւելեան այս բոլոր դրամները, անկախ իրենց ծագման ժամանակագրական տուեալներից, ունեցել են գործառական նշանակութիւն ապրանքափոխանակութեան մէջ:*

*Առանձնացնելով հատուկէնտ օրինակներով ինչպէս հնուց մնացած (սասանեան, օմայեան), այնպէս էլ Թ.—Ժ. դարերում թողարկուած, բայց խիստ հազուադէպ եւ շրջանառութեան համար ոչ բնորոշ (Ումարայի, Տաբարիստանի, Օմանի) դրամները, մենք կ'ունենանք գանձի հիմնական կազմը՝ աբբասեան, բուվեհեան, սամանեան եւ համդանեան դրամները: Ուշադրաւ է, որ այս գանձով եւս ընդգծւում է աբբասեան դրամների առաւելութիւնը* (33,35%) *Ժ. դարի երկրորդ կէսին բնորոշ դրամական շրջանառութեան մէջ: Ապրանքային փոխանակութեան պարզագման պահանջով դրամները թողարկուել են հեռաւոր վայրերում (ըստ գանձի պարունակութեան).*

| | Դրամ |
|---|---|
| *Մեդինատ ըս–Սալամ* | 54 |
| *Բասրա* | 33 |
| *ալ–Ահվազ* | 18 |
| *Շիրազ* | 18 |
| *Սամարքանդ* | 15 |

| | Դրամ |
|---|---|
| Էնդերաբէ | 10 |
| Մուհամմեդիա | 9 |
| Վասիտ | 6 |
| աչ-Շաչ | 9 |
| Առռաջան | 4 |
| Իսպահան | 4 |
| Արդեբիլ | 3 |
| Ֆարս | 3 |
| Ֆեսա | 2 |
| Բուխարա | 2 |
| Նիսաբուր | 2 |
| Բալխ | 2 |
| Մարդին | 2 |
| Հառան | 7 |
| Սուրրա-Մեն-Ռա | 7 |
| Մոսուլ | 7 |
| Քուֆա | 6 |
| Ադրբեջան | 4 |
| անորոշ | 7 |
| Խիստ մաշուած, անընթեռնելի արձանագրութիւններով | 51 |
| Նիսիբին | 2 |
| Օման | 1 |
| Տորջան | 1 |
| Մեդինատ ալ-Մուտա-վաքիլլիա | 1 |
| Բերդաա | 1 |
| Արմինիա | 1 |
| Ընդամէնը՝ | 292 |

Եթէ նկատի առնենք գանձի դրամներից միայն այն 236 օրինակները, որոնց վրայ պահպանուել են նրանց ծագման տեղանուններին վերաբերող արձանագրութիւնները, ապա այդպիսիների խմբաւորումը միջազգային առեւտրի ոլորտի մէջ մտած երկրամասերի շարքով կարող է ցոյց տալ հետեւեալ յարաբերութիւնը.

| | | | | |
|---|---|---|---|---|
| Իրաք | 109 | դրամ | = | 45,78% |
| Ֆարս | 27 | դրամ | = | 11,34% |
| Մավերաննահր | 26 | դրամ | = | 10,02% |
| Խուզիստան | 18 | դրամ | = | 7,56% |
| Ջազիրա | 16 | դրամ | = | 6,72% |
| Սիրիա | 8 | դրամ | = | 0,42% |
| Խորասան | 15 | դրամ | = | 6,30% |
| Տերալ | 13 | դրամ | = | 5,46% |
| Ադրբեջան | 7 | դրամ | = | 2,94% |
| Արմինիա | 3 | դրամ | = | 2,26% |
| Առան | 1 | դրամ | = | 0,42% |

Ինչպէս տեսնում ենք, ի տարբերութիւն անցեալ ժամանակների, բարձրացել էր իրանական քաղաքների դերը դրամների թողարկման գործում: Այդ իրողութիւնը կապուած էր ապրանքային արտադրութեան եւ միջազգային փոխանակութեան աճող պահանջների հետ: Գանձը իր դրամական խոշոր խմբերի յարաբերակցութեամբ արտացոլում է այն փոփոխութիւնները, որոնք

կատարուել էին Արեւելքում իրանական ծագում ունեցող հարստութիւնների, մասնաւորապէս Բուվեհեանների եւ Սամանեանների հզօրացման հետեւանքով: Այդ հարստութիւնները արդէն Ժ. դարի երկրորդ կէսին դարձել էին լայնածաւալ Իրանի տիրակալները եւ իրանց հսկողութեան տակ էին վերցրել մի կողմից Պարսից ծոցից, Ֆարսի ու Խուզիստանի միջով դէպի արաբական երկրները, միւս կողմից Խորասանի վրայով դէպի Սիր-Դարիայի եւ Ամու-Դարիայի վաճառաշահ քաղաքները տանող կարաւանային առեւտրի մայրուղիները: Հետեւաբար, պատահական չէ, որ Ժ.րդ դարի 2րդ կէսի գանձերում հանդէս են գալիս Աբբասեաններից անկախութիւն նուաճած առանձին ֆեոդալական տիրակալութիւնների, մասնաւորապէս Բուվեհեանների եւ Սամանեանների արծաթ դրամները: Վերջիններիս հետ գանձը նշում է նաեւ Անդերաբի եւ Ադրբէջանի ամիրաների թողարկած դրամական միաւորների շրջանառութիւնը: Սակայն յիշեալ ամիրայական դրամները որոնք թափանցել են Աղուանքի հարաւ-արեւելեան շրջանները, մասնաւորապէս Կասպից ծովին մերձաւոր վայրերը, բուն Հայաստանի հիւսիս-արեւելեան կողմերում (Այրարատ, Շիրակ, Վանանդ, Սիւնիք, Լոռի) լայն տարածում չեն ունեցել:

Նոյնը պէտք է ասել գանձերում եղած Տոխարիստանի քաղաքներում թողարկուած

դրամների վերաբերեալ: Դրանք Հայաստանում հազուագիւտ են եւ նրանց շրջանառութիւնը Ժ․րդ դարի հայկական շուկաներում տեւական ընթացք չի ունեցել: Ինչ վերաբերում է Իրանի հիւսիսային նահանգներում, մասնաւորապէս Հայաստանի մերձաւոր Ադրբեջանում թողարկուած Սաջեանների եւ նրանց յաջորդների, ինչպէս նաեւ Սալարեանների դրամներին, ապա այդպիսիք ոչ միայն տարածման նշմարելի ընթացք են ունեցել Հայաստանում, այլեւ դրանցից շատերը յաճախ անգամ դրուագուել են հայկական քաղաքներում:

Այսպիսով, Անդրկովկասում յայտնաբերուած Ժ․րդ դարին պատկանող դրամական գանձերի քննութիւնը ցոյց են տալիս, որ միջազգային առեւտրի շնորհիւ հայկական քաղաքներում լայն տարածում են ունեցել Մերձաւոր Արեւելքի տարբեր երկրներում թողարկուած աբբասեան արծաթէ դրամները: Վերջիններիս հետ միասին Հայկական լեռնաշխարհի հիւսիս-արեւելեան կողմերում շրջանառութեան մէջ են եղել Արեւելեան Խալիֆաթից անկախութիւն նուաճած մի շարք նոր հարստութիւններ, մասնաւորապէս Սաջեանների, նրանց յաջորդների եւ Սալարեանների թողարկած արծաթ դրամները, որոնք աբբասեան դիրհեմների հետ խառնուած գործառական նշանակութիւն են ունեցել արտաքին եւ ներքին առեւտրում:

Ամփոփելով դրամական շրջանառութեան տուեալները, մանաւորապէս «Արմենիա» նահանգի հայկական, վրացական եւ ալբանական շուկաներում տարածուած դրամների ու դրամական գանձերի ցուցմունքները, մեր առաջ ուրուագծւում են Հայաստանի միջազգային կապերի հետեւեալ ուղղութիւնները Ը.—Ժ.դդ. վերաբերեալ.

Ա. Հայաստանը կապուած է եղել Միջագետքի, Իրաքի եւ Միջերկրականի աֆրիկեան շուկաների հետ: Այս ընդհանուր ուղղութիւնից Հայաստանում զանգուածային տարածում են գտել Վասիտ, Դիմեշք, Կիննեսերին, Մեդինատ-աս-Սալամ, ալ-Քուֆա, ալ-Բասրա, Ռաս-ալ-Այն, Մոսուլ, Նիսիբին, Հառան, ալ-Աբբասիա եւ ուրիշ վաճառաշահ քաղաքներում դրուագուած արծաթ դրամները:

Բ. Հայաստանը կապուած է եղել նաեւ իրանական նահանգներ Ադրբեջանի, Ջեբալի, Խուզիստանի եւ Ֆարսի ապրանքափոխանակութեան կենտրոնների հետ: Այս ուղղութիւններից հայկական շուկաներում տարածում են գտել ալ-Մուհամմեդիա, Ռէյ, Իսպահան, Համադան, ալ-Ահվազ, Շիրազ, Ռամ-Հորմուզդ եւ այլ քաղաքներում դրուագուած արաբատառ արծաթ դրամները: Առնչութիւնների իրանական ոլորտից Հայաստան են թափանցել նաեւ Տաբարիստանի, Խորասանի (Նիշապուր, Հե–

րաթ, Բալխ, Մերվ) եւ երբեմն Մաւերաննահրի (Սամարքանդ, Բուխարա, աշ-Շաշ) քաղաքներում դրուագուած արծաթէ դրամները :

Հայաստանի միջազգային կապերի այս ուղղութիւնները Արեւելքի երկրների հետ դիտւում են առաւելապէս աբբասեան դրամների շրջանառութեան ներքին ոլորտի հետ կապուած : Արեւելեան խալիֆաթի քայքայման ժամանակներում չնայած ֆեոդալական յարաբերութիւնների զարգացման հետեւանքով առաջացած նոր տիրակալութիւնների եւ վերջիններիս կողմից զանգուածօրէն թողարկուող արծաթ դրամների, այդուհանդերձ միջազգային շուկայում առաւելութիւնը պատկանում էր աբբասեան դրամներին : Թ.—Ժ. դարերում հզօրացած նոր հարստութիւնների թողարկած դրամները չփոխեցին Հայաստանի դրամական տնտեսութեան բնորոշութիւնը : Նրանք դրուագւում էին Աբբասեանների տիրակալութեան նախկին կենտրոններում եւ շրջանառութեան իրենց ընթացքով հաստատում են աբբասեան դրամների ցուցմունքները Հայաստանի ապրանքա-դրամական կապերի հիմնական ուղղութիւնների մասին :

Ուշագրաւ է, որ դրամագիտական տուեալներով ուրուագծուող Հայաստանի տնտեսական կապերի վերոյիշեալ ուղղութիւնների մասին յիշատակւում է նաեւ միջ-

նադարի հայկական ուղեցույցներից մեկում[35]: Նկատի ունենալով հայոց Դուինի քաղաքից դեպի օտար երկրներ գնացող կարավանային առևտրի ճանապարհները, մատենագիրը նշում է, որ Դուինից Հայաստանի հարավային շրջաններով կարավանները հասնում էին Իրաք և այնուհետև Քուֆա-Բասրա քաղաքներով մտնում Պարսից ծոցի ավազանի շուկաները: Այդ նույն ուղեցույցի համաձայն մեկ ուրիշ ուղղությամբ կարավանները Հայաստանից անցնում էին դեպի հարավ-արևմուտք, հասնում Մոսուլ և Դամասկոս, այնուհետև Երուսաղեմ, իսկ Երուսաղեմից գնում էին Եգիպտոս ու հետագայում դեպի «Անյայտ ովկիանոս»[36]: Արևելյան ուղղությամբ յիշատակվում է Դուին-Պարտավ-Կասպից ծով ճանապարհը: Հյուսիսային ուղղությամբ կարավանները Դուինից մեկնում էին Թիֆլիս և այնուհետև Սև ծովի շրջանները:

Իրաքում, Միջագետքում և Իրանում Թ.—Ժ. դդ. պատրաստված խեցեղէն առարկաների՝ Հայաստանում յայտնաբե-

[35] Գիրք աշխարհաց և աստղերարանութեանց, որ է Աղուէսագիրք, Ցամսթէլտամում, ի Թուղ Փրկչին 1668, էջ 65—69: Այրարատ, Բնաշխարհ Հայաստանեայց, տեղագրեց Հ. Ղ. Ալիշան, Վենետիկ, 1890, էջ 143:

[36] Նոյն տեղում, էջ 69:

*բուած նմուշներ*[37], *նույնպես հաստատում են դրամագիտական նյութերի ցուցմունքները։ Հայաստանում ապրանքային արտադրության զարգացման Թ.—Ժ. դարերում եղած վիճակի մասին վկայում են Անի, Դվինի քաղաքների պեղումներից ի հայտ եկած հարուստ նյութերը։ Հայկական ծագում ունեցող ապրանքներին մասին հիացմունքով են ակնարկում արաբ մատենագիրները, մասնավորապես ալ-Իսթախրին*[38], *Իբն Հաուկալը*[39], *ալ-Մուկադդասին*[40] *և Թ. դարի պարսիկ անանուն աշխարհագիր Հուդուդ ալ-Ալամ գրքի հեղինակը*[41]*։ Մի-*

---

37 В. Мелковников, Керамика и стекло из расконок Двина. Труды Государственного, исторического музея Армении, том IV, Ереван, 1952, стр. 110—111.

38 Ал-Истахрий, Из книги путей и царств. Перевод с арабского Н. Караулова. Сборник материалов для описания местностей и племен Кавказа, вып. XXIX, Тифлис, 1901, стр. 19, 21, 15.

39 Ибн-Хаукаль, Из книги путей и царств. Перевод с арабского Н. А. Караулова. Сборник материалор для описания местностей и племен Кавказа, вып . XXXVIII, Тифлис, 1908, стр. 92—95.

40 Ал-Мукаддасий, Из книги «Дучшее из деленкй для познания климатов». Перевод с арабского Н. А. Караулова. Сборник материалов для описания местностей и племен Кавказа, вып. XXXVIII, Тифлис, 1908, стр. 9—10.

41 Hudud al-Alam, The Regions of the World. A persian geography 372 ah.—982 a. d.

ջազգային շուկայում լայն ճանաչում էին
գտել հայկական գորգերը, բարձերը, ծած-
կոցները եւ յատկապէս հայկական «որդան
կարմիր» ներկը: Կարելի է վկայակոչել հայ-
կական ծագում ունեցող ոսկէ, արծաթէ
առարկաներ, զարդարանքներ եւ արհեստա-
գործութեան տարբեր ապրանքային նշանա-
կութեան արժէքներ, որոնց միջազգային
առեւտուրը դուրս է բերել Հայաստանից եւ
տարել օտար երկրներ: Քիչ չեն նաեւ պատ-
մական վկայութիւնները օտար երկրներից
Հայաստան բերուած ապրանքների մասին:
Սակայն այդ ամէնը միայն լրացնում ու հաս-
տատում են դրամական գանձերի քննու-
թեան ներկայացուած արդիւնքները:

Սակայն բացի Խալիֆաթի տիրակալու-
թեան երկրներից, ուր դրամները թողարկ-
ւում եւ ընդունւում էին արաբական կշռային
դրութի սկզբունքներով, Եւրոպայում գըտ-
նուած դրամական գանձերը որոշակի ցոյց
են տալիս միջազգային առեւտրի ոլորտում
արեւելեան երկրների, այդ թւում Հայաս-
տանի կապը Արեւմուտքի երկրների հետ:

Ապրանքային արտադրութեան զարգաց-
ման հետ կապուած Մերձաւոր եւ Միջին
Արեւելքի երկրներից արծաթէ դրամները
զանգուածային հոսանքով անցնում էին Եւ-

---

Translated and explained by Minorsky, with the preface by V. V. Barthold, London, 1937, p. 142—145.

րոպայի արեւելեան եւ հիւսիսային շրջանները: Դրանք արաբական խալիֆաթի տիրակալութեան ժամանակներում թողարկուած օմայեան եւ աբբասեան դրամներ էին, որոնց միջազգային առեւտուրը դուրս էր բերում շրջանառութեան ներքին ոլորտից եւ տարբեր ուղղութիւններով մղում եւրոպական երկրները: Օմայեան եւ աբբասեան արծաթէ դրամներից բացի այդ հոսանքին հետագայում խառնուեցին նաեւ խալիֆաթի հսկայական տարածքի վրայ առաջացած արեւելեան տարբեր ամիրայութիւնների Սաֆֆարեանների, Ձիարեանների, Սամանեանների, Սալլարեանների, Բուվեհեանների, Համդանեանների, Մրուանեանների եւ այլոց արծաթէ դրամները: Շուրջ երկու հարիւր տարի (806—1025 թթ.) տեւող արծաթէ դրամների Արեւելքից Արեւմուտք անցնող այդ հոսանքի հետ Եւրոպայի Արեւելեան եւ հիւսիսային շրջաններն էին անցնում նաեւ Հայաստանում ու Աղուանքում թողարկուած արծաթէ դրամները: Միջազգային շուկայում գործառական նշանակութիւն ունէին առաւելապէս արծաթէ դրամները: Ոսկին այն ժամանակներում համեմատաբար քիչ էր հանդէս գալիս:

Հայաստանում եւ Աղուանքում թողարկուած արաբատառ արծաթէ դրամների բազմաթիւ օրինակներ են յայտնաբերուել եւրոպական գանձերի կազմում: Դրանք ի յայտ են եկել ոչ միայն Կենդրոնական Ռու-

սաստանում, այլև Մերձբալթեան երկրներում, Ֆինլանդիայում, Շվեդիայում, Լեհաստանում, Գոտլանդ կղզում, Դանիայում, Գերմանիայի ծովամերձ շրջաններում և այլուր: Քննութիւնները ցոյց են տուել, որ գերմանական ու սլաւոնական շրջաններում յայտնաբերուած Թ.—Ժ. րդ դարերի գանձերի մէջ յաճախ են գտնուել Արմինիա, Առան, Բերդաա, երբեմն–երբեմն նոյնիկ Մաադէն Բաջունայս, Հարունիա, Հարունաբադ, ալ–Բաբ, Դեբիլ, Թիֆլիս, Ջանզա, Բիթլիս, Նասիբին փողերանոցների արաբատառ անունների յիշատակութեամբ արծաթ դրամներ:

Միջազգային առևտուրն արաբատառ արծաթ դրամները շրջանառութեան ընդհանուր հոսանքով Եւրոպա էր տանում երեք հիմնական ուղղութիւններով: Դրանցից առաջին ուղղութիւնը սկսւում էր Իրաքից, Սիրիայից ու Միջագետքից դէպի Հայաստան և Աղուանքի վրայով ու Կասպից ծովով ձգւում դէպի հիւսիս՝ Վոլգայի աւազանը: Մերձվոլգեան շրջաններում այդ հոսանքը բաժանւում էր երկու ճիւղի, որոնցից մէկը ուղղւում էր դէպի Մերձբալթեան երկրներ ու Գոտլանդի վրայով հասնում Սկանդինաւիա, իսկ միւսը՝ թեքւում Արևմուտք և Դնեպր–Վիսլա սխեմով մտնում առևտրի սլաւոնա–գերմանական շուկաները: Երկրորդ հոսանքը գալիս էր Իրանի տարբեր մարզերից և ձգւում դէպի Դերբենդ (ալ–Բաբ) ու

Կասպից ծովից Վոլգայով թեքում Դոնի ավազանը: Այս երկրորդ հոսանքը փոխանցվում էր Դնեպրին եւ շարունակում ընթանալ դեպի հյուսիս: Երրորդ ուղղությամբ արտաքին դրամները Իրանի հարավային ու արեւելյան երկրամասերից, Հայաստանից ու Միջագետքից ձգվում էին դեպի Փոքր Ասիա եւ Սեւ ծովի վրայով մտնում Դնեպրի ավազանը, ուր միանում էին առաջին եւ երկրորդ հոսանքներին: Սակայն բացառված չէ, որ առանձին դեպքերում հայկական քաղաքներում թողարկված արծաթ դրամները կարող էին անցնել Մերձվոլգյան ու Մերձդնեպրյան շրջանները եւ այնուհետեւ թափանցել Եվրոպայի հյուսիս-արեւելյան երկրամասերը տնտեսական կապերի անմիջական ընթացքով: Հայ վաճառականներին քաջ յայտնի էին Վոլգայով դեպի Խազարական թագավորություն տանող ճանապարհները[42]:

Դեռեւս Թ. դարի կեսին արաբներից հալածված հայերը օգնության նպատակով դիմել էին խազարներին եւ Վոլգայի բուլղարներին[43]: Մերձվոլգյան շրջանների հետ

[42] С. Т. Еремян, Армения, Армянское купечество и развитие торговли между Европой и Азией до XIX в. Пятый международный конгресс экономической истории. Изд-во «Наука», Москва, 1970, стр. 10—11; М. Бережков, О торговле Руси в Ганзой до конца XIV в., СПБ, 1879, стр. 18.

[43] В. В. Бартольд, Арабские известия о

*Հայաստանի ունեցած առեւտրական առնչությունների մասին հիշատակում է Ժ. դարի արաբ ճանապարհորդ Իբն-Ֆադլանը: Վերջինս հաղորդում է, որ Վոլգայի բուլղարական թագավորի պալատը զարդարված է եղել հայկական ծագում ունեցող զարդերով*[44]*: Հնագիտական պեղումները ցույց տվեցին, որ մերձվոլգյան շրջաններում Ժ. դարում գոյություն են ունեցել հայկական գաղթավայրեր*[45]*, որոնց մասին պահպանվել են նաեւ մատենագրական հիշատակություններ*[46]*: Հայկական յուշարձաններ են հայտնաբերվել ոչ միայն Բուլղար քաղաքում, այլ եւ Վոլգայի ավազանի շատ ուրիշ վայրերում*[47]*: Բուլղարի հայկական գաղութի միջնաբերդից գտնված զարդարանքի ու*

---

русах, «Советское востоковедение», I, М-Л, 1940, стр. 18.

[44] Путешествие Ибн-Фадлана на Волгу. Перевод Ковалевсково, под редакцией И. Ю. Крачковского, М-Л, 1939, стр. 73.

[45] А. П. Смирнов, Волжские Болгары, М, 1951, стр. 256, Труды Государственного исторического музея, вып. XIX.

[46] Л. Меликсет-Бек, Древняя Русь и Армения, Ереван, 1946, стр. 237—142. Сборнис трудов института языка им. Марра АН Армянской ССР.

[47] Б. В. Миллер, Об армянских надписях в Болгарах и Казани. Известия Российской Академии института материальной культуры, том IV, Ленинград, 1925, стр. 66—80.

գործուածքի մնացորդները կապւում են Դուինի պեղումներից ի յայտ եկած նիւթերի հետ[48]: Վոլգայի բուլղարական շըրջանների միջով էին անցնում տարանցիկ առեւտրի այն գլխաւոր ուղիները, որոնք կապում էին սլաւոնական շուկաները Արեւելքի հետ[49]:

Այդ ճանապարհներով գաղթող առեւտրում գործօն դեր է խաղացել հայ վաճառականութիւնը եւ պատահական չէ, որ Իրանից ու Հայաստանից դէպի Կասպից ծով եւ այնուհետեւ Մերձվոլգեան շրջաններով մինչեւ Սպիտակ ծով հասնող կարաւանային առեւտրի ճանապարհը ԺԱ. դարի վերջից յայտնի է եղել «Մեծ հայկական ճանապարհ» անունով[50]:

Յայտնաբերուած դրամական գանձերը նշում են կապերի այդ ուղղութիւնները: Սակայն հարց է առաջ գալիս, թէ երբ էր

---

[48] А. П. Смирнов, Армянская колония в г. Болгари. Тезисы доклада, прочтенного на конференции по археологии Кавказа в Ереване, 25 октября 1956 г.

[49] В. Л. Янин, Нумизматика и проблемы товарно-денежного обращения в Древней руси, «опросы истории», Москва, 1955, թիւ 8, стр. 137.

[50] Л. М. Меликсет-Бек, Древняя Русь и Армения, стр. 137—142; С. Т. Еремян, Армения, Армянское купечество и развитие торговли между Европой и Азией до XIX в., Москва, 1970, стр. 10.

սկսուել արաբատառ դրամների հոսանքը դէպի Եւրոպա։

Քննութիւնները ցոյց են տալիս, որ օմայեան եւ աբբասեան արծաթ դրամները Եւրոպայի սլաւոնական եւ գերմանական շուկաներում երեւացել են ոչ շուտ, քան Ը. դարի վերջին կամ Թ. դարի առաջին տարիներին[51]։ Հետագայում արեւելեան արծաթ դրամների հոսանքը դէպի Եւրոպա դիտւում է մի քանի ելեւէջներով եւ սպառւում է ԺԱ. դարի առաջին տարիներին[52]։ Արծաթի սղութիւնը, որ ծայր էր առել միջին Ասիայում եւ այնուհետեւ տարածուել մի շարք արեւելեան երկրներում, մասնաւորապէս Իրանի, Իրաքի, Սիրիայի, Հայաստանի եւ հարեւան երկրների արծաթագործութեան մէջ, չէր կարող չարտացոլուել միջազգային ապրանքա-դրամական յարաբերութիւններում։ Արեւելքում արծաթի այսպէս կոչուած «ճգնաժամի» հարցը ուսումնասիրութեան առանձին խնդիր է։ Սակայն գիտենալու համար, թէ Հայաստանից Եւրոպա արտաքին առեւտրի շնորհիւ ինչպիսի դրամներ են անցել, ստորեւ ներկայացնում ենք խիստ համառօտագրուած յիշատակութիւններ այդ մասին, ըստ որում

[51] Р. Р. Фасмер, Завалишинский клад куфических монет VIII—X вв. Известия ГАИМК, том VII, вып. II, Л-д, 1931, стр. 12—13.

[52] В. Л. Янин, Денежно-весовые системы домонгольской Руси. Автореферат диссертации, Москва, 1954, стр. 7.

նկատի առնելով Ը.—Ժ.րդ դդ. թողարկված բացառապես արծաթե այն դրամները, որոնք դրվագվել են Հայաստանում «Արմինիա» անվան արաբատառ արձանագրությամբ. և այսպես՝

1. Վոլխով գետի ափին, Ստարայա Լադոգայի մոտ (այժմյան Լենինգրադյան մարզ) 1892 թ. գտնվել է գանձ բաղկացած 28 ամբողջական և 3 կտրված արծաթ դրամներից (դիրհեմ): Վերջիններիս շարքում հայտնաբերվել է հիջրայի 162 (778—779) տարեթվերով Հայաստանում թողարկված դրամ: Գանձի մեջ եղած դրամներից նորագույնը պատկանել է հիջրայի 170 (786—787) թվին[53]:

2. Կրիվենոկայա ստանիցայում, Չերկասկից մոտ 8 կմ. հյուսիս-արևելք, Սուխոյ Կագալնիկա ձորի մոտ (այժմյան Ռոստովյան մարզ) 1894 թ. գտնվել է գանձ բաղկացած 82 արծաթյա դրամներից, որոնց շարքում եղել են Հայաստանում (Արմինիա) հիջրայի 167 (783—784) թվին թողարկված դիրհեմներ մեկական օրինակով: Գանձի վերջին դրամը պատկանել է հիջրայի 190 (806) թվին[54]:

3. Պսեօլ գետի վերին հոսանքի մոտ,

[53] МТ, 140, թի. 24; ПМК I, թի. 254. Դրամական գանձերին վերաբերող ծանոթագրությունները տրված են համառոտագրություններով, ըստ որում МТ նշանակում է՝ Топография кладов восточных монет (сасанидских и куфических) СПБ, 1910.

[54] МТ, 237, թի. 8; ПМК, I, թի. 250.

նախկինում Խարկովեան նահանգի (այժմեան Ուկրայինական ՍՍՀ Սումայի մարզ) Նիժնայա Սիրովատկա գիւղում 1847 թ. գտնուել է 206 արծաթ դրամներից բաղկացած գանձ: Այդ դրամների շարքում եղել են Հայաստանում (Արմինիա) հիջրայի 167 (783—784), 186 (802), 195 (810—811) թուերին թողարկուած դիրհեմների մէկական օրինակներ: Գանձի ամենանոր դրամը թողարկուել է հիջրայի 197 (812—813) թուին[55]:

4. Եարոսլաւլի մարզի Ռոստովեան շըրջանի Ուգոդիչի գիւղում 1913 թուին յայտնաբերուել է 147 ամբողջական եւ կտրուած դիրհեմներից բաղկացած գանձ: Ողջ գանձի պարունակութիւնից որոշման ենթակայ են եղել 127 դրամներ: Վերջիններիս շարքում եղել են աբբասեան դիրհեմներ թողարկուած Հայաստանում (Արմինիա) հիջրայի 180 (796—797) թուին եւ 195 (810—811) թուին[56]:

5. Դնեպր գետի ափին այժմեան Բելոռուսական ՍՍՀ Մոգիլովեան մարզում, 1822 թուին գտնուել է 1300 ամբողջական եւ մի քանի հարիւր կտրտուած արծաթ դրամներից բաղկացած գանձ: Վերջինիս կազմում եղել են դիրհեմներ՝ թողարկուած Հայաս-

---

[55] МТ, 52; ПМК, II, թի. 610.

[56] Р. Фасмер, Два клада куфических монет стр. 20, Л, 1927; ПМК, II, թի. 1609.

տանում: Գանձի ամենանոր դրամը պատկանել է հիջրայի 199 (814—815) թուին[57]:

6. Ուկրաինական ՍՍՀ, Չեռնիգովեան մարզի Եարիլովիչ գիւղում. (Նախկինում՝ Գորոդնեանցկի ուեզդ), Սոժ գետի ափին, 1875 թուին յայտնաբերուել է 235 արծաթ դրամներից բաղկացած գանձ: Վերջինիս մէջ եղել է հիջրայի 203 (818—819) թուին Հայաստանում (Արմինիա) թողարկուած դիրհեմ: Գանձի ամենանոր դրամը պատկանել է հիջրայի 205 (820—821) թուին:

7. Ուգլիչ քաղաքի մօտ 1879 թուին գտնուել է 205 ամբողջական եւ 909 կտրուած արծաթ դրամներից, ինչպէս նաեւ հինգ արծաթեայ ձուլուածքներից բաղկացած գանձ: Այդ գանձի դրամների շարքում եղել են նաեւ հիջրայի 162 (788—789), 166 (782—783), 174 (790—791), 192 (807—808) թուերին Հայաստանում թողարկուած արծաթ դրամներ մէկական օրինակով: Գանձի ամենանոր դրամը վերաբերել է հիջրայի 217 (832) թուին[58]:

8. Կոխանել գիւղի մօտ, Նարվայի եւ Վեզեմբերգի միջեւ, 4 կմ դէպի հիւսիս նախկին Նարվա–Ռեւելեան երկաթգծից (այժմեան էստոնական ՍՍՀ Կոխտլա–Յարվէ) 1923 թուին գտնուել է 500 արծաթ դրամներից բաղկացած գանձ, որի կազմում եղել են Հայաստանում (Արմինիա) հիջրայի 162

---

[57] MT, 25, թի. 14; ПМК, I, թի. 262.

[58] MT, 54—55, թի. 314.

(778—779), 203 (818—819) *թուին դրոշմ-ված արաբական դրամներ: Ողջ գանձի մեջ եղած դրամներից ամենանորը պատկանել է հիջրայի* 223 (837—838) *թուին*[59]:

9. *Վորոնեժի շրջանի Դեւիցի գիւղում*, 1939 *թ. յայտնաբերուել է* 323 *արծաթ դրամներից բաղկացած գանձ: Վերջինիս կազմում եղել են դրամներ, թողարկուած Հայաստանում հիջրայի* 103 (723—724), 149 (766—767), 217 (832) *թուերին: Այդ գանձի մէջ, ժամանակով ամենանոր դրամը վերաբերել է հիջրայի* 223 (837—838) *թուին*[60]:

10. *Գլազով քաղաքից մօտ* 33 *կմ հեռաւորութեան վրայ, նախկին Կոստինեան շըրջանում (այժմեան Ուդմուրական ԱՍՍՀ)*, 18՝ *թուին գտնուել է* 1500 *արծաթ դրամներից բաղկացած գանձ: Վերջինիս կազմում եղել են Հայաստանում թողարկուած դրամներ: Այդ գանձի մէջ ժամանակով ամենանոր դրամը պատկանել է հիջրայի* 228 (842—843) *թուին*[61]:

11. *Լենինգրադեան մարզի Ստարայա Լադոգա քաղաքում*, 1938 *թուին հնագիտական պեղումների ժամանակ յայտնաբերուել է հինգ ամբողջական եւ* 18 *կտրուած արծաթէ դրամներից բաղկացած գանձ: Վեր-*

---

[59] Walter Anderson, Der Chalifenmünzfund von Kochtel, mit Beiträgen von Richard Vasmer, Dorpat, 1926, s. 100, 69, 25, *թթ.* 54 a, 74, 191; ПМК, II, *թթ.* 625.

[60] ПМК, IV, *թթ.* 1301.

[61] МТ, 8, *թթ.* 39; ПМК, I, *թթ.* 249.

ջինիս կազմում եղել են հիջրայի 143—151 (760—769) թուերին Հայաստանում թողարկուած դիրհեմներ։ Գանձի մէջ եղած դրամներից ժամանակով ամենանորը կրել է իր վրայ հիջրայի 232 (846—847) տարեթիւը[62]։

12. Բելոռուսական ՍՍՀ Դուբրովենսկ շրջանի Բայեւո գիւղի մօտ, Սոբոլեւո սովխոզի տարածքի վրայ 1936 թուին գտնուել է 307 ամբողջական եւ կոտրուած արծաթեայ դրամների գանձ։ Վերջինիս մէջ եղած դրամների շարքում յիշատակւում է Հայաստանում հիջրայի 167 (783—784) թուին դրուագուած աբբասեան մէկ դիրհեմ։ Ողջ գանձի պարունակութեան ամենանոր դրամը վերաբերել է 857 թուին[63]։

13. Վոլխով գետի ափին, Նովգորոդ քաղաքում, երկաթգծի շինարարութեան ժամանակ, 1920 թուին յայտնաբերուել է արաբատառ, քուֆի արծաթեայ դրամներից բաղկացած գանձ։ Վերջինիս պարունակութիւնից 203 ամբողջական դրամներ ձեռք է բերել գիտութիւնների ակադեմիայի նիւթական մշակոյթի պատմութեան ինստիտուտը։ Այդ դրամների շարքում գտնուել են հիջրայի 246 (860—861) եւ 248 (862—863) թուերին Հայաստանում թողարկուած աբբասեան արծաթէ դրամներ, մէկական օրինակ։ Ողջ գանձի մէջ ժամանակով ամենանոր դրամը վերաբերել է հիջրայի 250 (864) թուին[64]։

[62] ПМК, IV, թիւ 1302.
[63] ПМК, IV, թիւ 1303.
[64] ПМК, I, թիւ 264.

14․ Մոսկուայում 1837—1838 թուերին շինարարական աշխատանքների ընթացքում, յայտնաբերուել են մի քանի արծաթեայ դրամներ, որոնց շարքում յիշատակւում է Հայաստանում հիջրայի 255 (865) թուին դրուագուած աբբասեան դրամի առկայութիւնը[65]։

15․ Ռեազան քաղաքից մօտ 3 կմ հեռաւորութեան վրայ, Օկա գետի ափին, Բորկի գիւղի մօտ, 1874 թուին երկաթգծի շինարարութեան ժամանակ գտնուել է 50 արծաթեայ դրամներից բաղկացած գանձ։ Այդ գանձի դրամների շարքում ի յայտ են եկել հիջրայի 252 (866) եւ 253 (867) թուերին Հայաստանում դրուագուած երկու աբբասեան դրամներ[66]։

16․ Միչնեւօ գիւղի մօտ, նախկին Կալուգայի նահանգում, Ուպա գետի ափին (այժմեան Տուլայի մարզում) 1892 թուին գտնուել է 101 արծաթեայ դրամներից եւ մէկ հատ արծաթեայ շղթայից բաղկացած գանձ։ Վերջինիս ողջ պարունակութիւնից որոշուել է 32 դրամ, որոնց շարքում յիշատակւում են Հայաստանում հիջրայի 196 (811—812) եւ 252 (866), 255 (868—869) թուերին դրուագուած աբբասեան դրամներ։ Գանձում եղած դրամներից ժամանակով ամենանորը թողարկուել է հիջրայի 255 (869) թուին[67]։

[65] МТ, 27; թի․ 145; ПМК, I, թի․ 263.
[66] МТ, 40, թի․ 224; ПМК, I, թի․ 272.
[67] МТ, 12, թի․ 66; ПМК, I, թի․ 251.

17. *Նովգորոդեան մարզի Դեմեանսկ շրջանի Շումիլով գիւղի մօտ,* 1937 *թուին յայտնաբերուել է* 1348 *արծաթեայ դրամներից բաղկացած գանձ, որի մէջ ժամանակով ամենանոր դրամը թողարկուել է հիջրայի* 257 (870—871) *թուին: Այդ գանձում եղել են նաեւ Հայաստանում հիջրայի* 161 (777—778), 166 (782—783), 203 (818—819), 252 (866), 253 (867), 254 (868) *եւ* 255 (868—869) *թուերին դրուագուած աբբասեան դրամներ*[68]:

18. *Կուղնեցկ գիւղի մօտ, նախկին Տվերի նահանգի Վեսեգոն շրջանում (այժմեան ՌՍՖՍՀ Կալինինի մարզ, Օվինիշչենի շրջան),* 1899 *թուին գտնուել է* 162 *արծաթեայ դրամներից բաղկացած գանձ, որի մէջ ժամանակով ամենանոր դրամը վերաբերել է հիջրայի* 256 (869—870) *թուին: Այդ գանձի կազմում յիշատակւում են Հայաստանում հիջրայի* 252 (866), 253 (867), 256 (869—870) *թուերին դրուագուած աբբասեան դրամներ*[69]:

19. *Ձայլէ — Օրբերեմպալկի գիւղում նախկին Սոկոլովսկի շրջան, Սեդելեցկի նահանգ),* 1869 *թուին յայտնաբերուել է* 470 *արծաթեայ դրամներից բաղկացած գանձ: Վերջինիս կազմից որոշուել է միայն* 16 *դրամ: Գանձի ժամանակով ամենանոր դրամը պատկանել է հիջրայի* 257 (870—871)

---

[68] ПМК, IV, *թի.* 1305.

[69] ПМК, II, *թի.* 611.

թուին: Որոշուած դրամների շարքում եղել է Հայաստանում հիջրայի 203 (818—819) թուին դրուագուած մէկ դիրհեմ[70]:

20. Գերնով քաղաքի արուարձանում (այժմեան Գեառնու, Խատոնական ՍՍՀ) 1828 թուին գտնուել է գանձ, բաղկացած 38 արծաթեայ դրամներից: Ժամանակով ամենանոր դրամը վերաբերել է հիջրայի 258 (871—872) թուին: Այդ գանձում եղել են նաեւ Հայաստանում թողարկուած դրամներ, որոնց վերաբերեալ, ցաւօք, ստոյգ տուեալներ չեն պահպանուել[71]:

21. Միտրովկա գիւղի մօտ, նախկինում Տուլայի նահանգի Կաշիրեան ուեզդում (այժմեան Մոսկովեան մարզի Կաշիրեան շրջանում), 1898 թուին գտնուել է 866 ամբողջական եւ կտրատուած արծաթեայ դրամներից բաղկացած գանձ, որի կազմի ամենանոր դրամական միաւորը պատկանել է 873 թուին: Գանձում եղած դրամների շարքում ի յայտ են եկել Հայաստանում թողարկուած արաբական դիրհեմներ՝ 162 (778—779), 217 (832—833), 239 (853—854) 219 (853—861) տարեթուերով (մէկական օրինակ), ինչպէս նաեւ 252 (866—867) — տասնհինգ օրինակ եւ 255 (868—869) — 2 օրինակ[72]:

22. Օրլովեան մարզի Տելչինեան շըր–

---

[70] МТ, 45, թիւ 255; ПМК, II, թիւ 629.

[71] МТ, 20—21, թիւ 117; ПМК, 1, 256.

[72] МТ, 141, թիւ 33; ПМК, I, թիւ 274.

ջանի «Ռեւոլուցիա» կոլտնտեսութեան դաշտում, 1938 թուին գտնուել է արծաթեայ արաբատառ դրամների գանձ, որի մէջ ամենանոր դրամը պատկանել է հիջրայի 262 (875—876) թուին: Գանձում հաւաքուած դրամների շարքում եղել են նաեւ Հայաստանում թողարկուած դիրհեմներ հիջրայի 252 (866) եւ 256 (869—870), տարեթուերով[73]:

23. Պոդգերնոյէ վարելահողում, Նախկին Կուրսկի նահանգի Սուջանսկ ուեզդում (Ներկայիս ՌՍՖՍՀ Կուրսկի մարզի Սուջանսկի շրջան) 1879 թուին գտնուել է 295 արծաթեայ դրամներից բաղկացած գանձ: Գանձի ողջ պարունակութիւնից մասնագիտօրէն որոշուել է 216 դրամ, որոնցից ամենանորը վերաբերել է հիջրայի 262 (875—876) թուին: Գանձի կազմում եղել են նաեւ դրամներ թողարկուած Հայաստանում (Արմինիա) հիջրայի 246 (860—861) եւ 252 (866) թուերին[74]:

24. Պոլտաւա քաղաքում 1898 թուին գտնուել է 100 արծաթեայ դրամներից բաղկացած գանձ: Դրանցից 61ը ենթարկուել է մասնագիտական քննութեան, ըստ որում ամենանոր դրամը կրել է իր վրայ հիջրայի 269 (882—883) տարեթիւը: Յիշեալ գանձի կազմում եղել են նաեւ աբբասեան դիրհեմներ, թողարկուած Հայաստանում հիջ-

[73] ПМК, IV, թիւ 1306.

[74] МТ, 16, թիւ 90; ПМК, I, թիւ 253.

րայի 250 (864—865), 269 (882—883), 252 (866) թուերին[75]:

25. Բորովլիկովից գիւղի մօտ, նախկին Օստրովսկի ուեզդում (այժմեան Պսկովեան մարզ) 1809 թուին գտնուել է 124 արծաթեայ դրամներից բաղկացած գանձ: Դրանցից ամենանորը վերաբերել է հիջրայի 293 (905—906) թուին: Գանձի կազմում եղել են Հայաստանում թողարկուած աբբասեան դրամներ հիջրայի 255 (868—869), 267 (880—881), 277 (890—891), ինչպէս նաեւ 279 (892—893) տարեթուերով: Յիշեալ դրամներից բացի եղել է նաեւ Պարտաւում հիջրայի 279 (892—893) թողարկուած դրամ[76]:

26. Կիեւ քաղաքում, 1913 թուին գտնուել է 2760 արծաթեայ դրամներից եւ 6 ոսկեայ ապարանջաններից բաղկացած գանձ, որի կազմում ամենանոր դրամը կրել է իր վրայ հիջրայի 294 (906—907) տարեթիւը: Գանձի դրամների շարքում եղել են նաեւ աբբասեան դիրհեմներ, թողարկուած Հայաստանում (Արմինիա) հիջրայի 144 (761—762), 147 (764—765), 151 (768), 153 (770), 155 (771—772), 179 (795—796), 255 (868—869) տարեթուերով՝ մէկական օրինակներով, 161 (777—778), 162 (778—779), 167 (783—784), 276 (889—890), 277 (890—891), տարեթուերով՝ — երկուական օրի-

[75] MT, 140, թիւ 29; ПМК, I, թիւ 266.

[76] MT, 37—38, թիւ 211; ПМК, I, թիւ 268.

նակներով, ինչպես նաեւ 267 (880—881) տարեթուով — 5 օրինակ [77]:

27․ Լիցիխովշչինա գիւղում, նախկին Մինսկի ուեզդում, (այժմեան Սամոխվալիչեան շրջան Մինսկի մարզ (Բելոռուսական ՍՍՀ) 1894 թուին գտնուել է 502 արծաթեայ դրամներից բաղկացած գանձ, որի կազմում ամենանոր դրամը վերաբերել է հիջրայի 299 (911—912) թուին: Գանձում եղել են նաեւ դրամներ թողարկուած Հայաստանում հիջրայի 252 (866), 267 (880—881), տարեթուերով՝ մէկական օրինակ եւ հիջրայի 277 (890—891) տարեթուով՝ երեք օրինակ [78]:

28․ Զանվա գետի ափին Զանվենեան քարանձաւում (այժմեան Պերմի մարզ ՌՍՖՍՀ) 1893 կամ 1894 թուերին Ս․ Սերգեեւի պեղումների ժամանակ գտնուել են երեք կտրուած դրամներ: Դրանցից մէկը թողարկուել է Հայաստանում արքաեան խալիֆ ալ-Մուտամիդի (870—892) իշխանութեան տարիներին [79]:

29․ Տուրկալօ գիւղում (այժմեան Եարօսլաւի Ռոստովեան շրջան ՌՍՖՍՀ) 1854 թուին գերեզմանի հնագիտական պեղումների ժամանակ գտնուել են երկու արծաթեայ դրամներ, որոնք ըստ Ե․ Ա․ Պախոմովի

---

[77] ПМК, II, թի․ 612.

[78] МТ, 138, թի․ 13; ПМК, I, թի․ 258, VIII, 99.

[79] ПМК, II, թի․ 613.

որոշման, հաւանաբար, դրուագուել են Հայաստանում Աբբասեանների օրօք [80]:

30. Լիւբեչ քաղաքում (այժմեան Չեռնիգովեան մարզ, Ուկրայինական ՍՍՀ), Մազեպեան կոչուող սարի վրայ 1845 թուին գտնուել է արաբատառ (Քուֆի) դրամների գանձ, բաղկացած 50 դիրհեմներից, որոնցից նորագոյնը վերաբերել է հիջրայի, 322 (933) թուին: Գանձի կազմում եղել է Աբբասեան արծաթ դրամ, թողարկուած Հայաստանում հիջրայի 267 (880—881) թուին [81]:

31. Մուրոմ քաղաքում (ՌՍՖՍՀ Վլադիմիրի մարզ) Վոյեվոդեան սարի վրայ, 1868 թուին գտնուել է ամբողջական եւ կոտրուած արծաթեայ դրամների գանձ: Վերջինիս կազմում նորագոյն դրամը վերաբերել է 939—940 թուերին: Աբբասեան դրամների շարքում եղել են դիրհեմներ թողարկուած Հայաստանում հիջրայի 277 (890—891) տարեթուով՝ 4 օրինակ [82]:

32. Ռեազանի մարզի Բորկովեան գերեզմանի մօտ, 1874 թուին գտնուել են Թ.—Ժ. դարերին վերաբերող արաբատառ արծաթեայ դրամների երկու գանձ, որոնց մէջ եղել են Հայաստանում թողարկուած դիրհեմներ [83]:

33. Վեանա գետի մօտ, Տալլին քաղա-

[80] ПМК, II, թիւ 618.

[81] МТ, 50, թիւ 289; ПМК, I, թիւ 277.

[82] МТ, 5—6, թիւ 28; ПМК, I, թիւ 248, VIII, 98—99.

[83] ПМК, V, թիւ 1516.

քից հարաւ, նախկին Ֆրիդրիխահոֆ բնակավայրում (Բեւել քաղաքի մօտ) 1913 թուին գտնուել է 312 ամբողջական եւ 611 կտրտուած արծաթ դրամներից, ինչպէս նաեւ 7 արծաթեայ ապարանջաններից բաղկացած գանձ։ Դրամներից նորագոյնը վերաբերել է 952 թուին։ Գանձում եղել են արաբական դիրհեմների երկու բեկոր, որոնց վրայ պահպանուած գրութիւնները վկայել են, որ դրանք թողարկուել են Հայաստանում, հիջրայի 267 (880—881) եւ 287 (900) թուերին։ Դրամները պահպանուել են իրենց կէսի չափով, ըստ որում, մէկի վրայ յիշատակուած է եղել արաբական խալիֆ՝ ալ-Մուտամիդի անունը, իսկ միւսի վրայ՝ ալ-Մուտադիդի անունը[84]։

34. Վլադիմիր քաղաքի մօտ, 1821 թ. գտնուել է արեւմտաեւրոպական եւ արաբատառ (Քուֆի) դրամներից բաղկացած գանձ 699—1024 տարեթուերով։ Գանձում եղած Օմայեան եւ արաբական դրամների շարքում եղել են նաեւ արծաթ դրամներ՝ թողարկուած Հայաստանում։

Արաբական դրամները պատկանել են հիջրայի 80—203 (699—819) թթ.[85]։

35. Պոյտ աւանում, նախկին Վեզենբերգեան շրջանում (այժմեան Էստոնական ՍՍՀ, Ռակվերէ շրջան)։ 1906 թ. գտնուել է արեւմտաեւրոպական, բիւզանդական եւ

[84] ПМК, II, թւ. 627.
[85] МТ, 5, թւ. 27; ПМК, I, թւ. 247.

արաբական (Քուֆի) ամբողջական և կտո-րատուած արծաթեայ դրամների գանձ, որում հաւաքուած են եղել 701—1025 թթ. վերաբերող դրամներ: Վերջինների շարքում յայտնուել է Դուինում հիջրայի 85 (704) թ. թողարկուած դրամի 2/3 մասը[86]:

36. Սորաչի Գորբի գիւղում, Նովգորոդի շրջան, 1906 թ. գտնուել են 52 ամբողջական և 7 կտորուած արեւմտաեւրոպական, երկու բիւզանդական, 33 ամբողջական և 153 կտորատուած արաբատառ դրամներ: Ժամանակով գանձի ամենանոր դրամը վերաբերել է 1066 թ.: Յայտնաբերուած դրամների շարքում եղել է Հայաստանում հիջրայի 332 (943—944) թթ. դրուագուած դիրհեմ[87]:

37. Կունդէ աւանում (ներկայիս Էստոնական ՍՍՀ, Վիրուսի շրջան), 1904 թ. գտնուել է արեւմտաեւրոպական և արաբատառ արծաթ դրամներից բաղկացած մի գանձ, որի մէջ եղել է նաև հիջրայի 249 (863—864) թուականին Հայաստանում թողարկուած արծաթէ դրամ: Գանձի մէջ ժամանակով ամենանոր դրամը պատկանել է 11րդ դարին[88]:

38. Ֆինլանդիայի Ալանդ կղզում, Բերտարիուի շրջանում, 1876 թ. գտնուել է 800 ամբողջական և կտորուած արծաթ

---

86 ПМК, II, թւ. 628.
87 ПМК, II, թւ. 617.
88 ПМК, II, թւ. 626; VII, 102.

դրամներից բաղկացած գանձ, որի մէջ եղել են արաբատառ դիրհեմներ՝ թողարկուած Հայաստանում[89]:

39. Շվեդիայի Էլլանդ նահանգի, Խամարուդդէ աւանում, 1865 թուականին գտնուել է 56 ամբողջական եւ 123 կոտրուած արեւելեան արծաթ դրամների գանձ, որի նորագոյն դրամը պատկանել է հիջրայի 234 (848—849) թուականին: Գանձի կազմում եղել է աբբասեան դիրհեմ, թողարկուած Հայաստանում հիջրայի 155 (771—772) թուին[90]:

40. Շվեդիայի Գեստրիկլանդ նահանգի Վալլբո համայնքի Գեկլինգէ ագարակում 1850 թ. գտնուել է 292 ամբողջական եւ 112 կոտրուած արծաթեայ արաբատառ (Քուֆի) դրամներից բաղկացած գանձ: Այդ գանձի մէջ են եղել 705—858 թուականներին վերաբերող դրամներ, որոնց շարքում նաեւ Հայաստանում թողարկուած դիրհեմ հիջրայի 161 (777—778) տարեթուով[91]:

41. Շվեդիայի Էլլանդ նահանգի Պֆարրդոֆ ագարակի Սանդ-բիու գերեզմանոցում 1840 թ. գտնուել է 1122 ամբողջական, 1100 կոտորուած արծաթի արաբատառ դրամներից, ինչպէս նաեւ 11 սասանեան դրամներից բաղկացած գանձ, որի մէջ նորագոյն դրամը վերաբերել է հիջրայի 278

---

[89] MT, 60, թիւ 14, ПМК, I, թիւ 279.
[90] ПМК, II, թիւ 630.
[91] MT, 90, թիւ 8; ПМК, II, թիւ 631.

(891—892) *թուին*: *Արաբատառ դրամների շարքում ի յայտ են եկել օմայեան եւ աբբասեան դիրհեմներ, Թողարկուած Հայաստանում*[92]:

42. *Շվեդիայի Մեդելպադ նահանգում, Բիրստաբիու ագարակի Սկեն գերեզմանոցում,* 1835 *թուին գտնուել է արծաթեայ զարդերից եւ դրամներից բաղկացած գանձ: Դրամներից նորագոյնը պատկանել է հիջրայի* 292 (904—905) *թուին: Գանձի աբբասեան դրամների շարքում, որոնք կրել են իրենց վրայ հիջրայի* 148—287 (765—891) *տարեթուերը, եղել են նաեւ դրամներ, Թողարկուած Հայաստանում*[93]:

43. *Շվեդիայի Գեստրիկլանդ նահանգի Ալրուդէ ագարակի Վալբօ գերեզմանոցում* 1824 *թուին գտնուել է* 66 *ամբողջական եւ* 50 *կտրուած արծաթեայ դիրհեմներից բաղկացած դրամների գանձ, որի նորագոյն դրամը պատկանել է հիջրայի* 312 (924—925) *թուին: Գանձի կազմում եղել է Հայաստանում Թողարկուած աբբասեան դիրհեմ հիջրայի* 287 (900) *տարեթուով*[94]:

44. *Գոտլանդ կղզու Ներ համայնքի Հեմմորս ագարակում* 1850 *թուին գտնուել է արծաթեայ զարդերից եւ* 142 *ամբողջական ու* 174 *կտրուած արաբատառ արծաթեայ դրամներից բաղկացած գանձ, որի նորագոյն*

[92] МТ, 96, *թիւ* 80; ПМК, I, *թիւ* 289.
[93] МТ, 89, *թիւ* 6; ПМК, I, *թիւ* 290.
[94] МТ, 90. *թիւ* 9; ПМК, I, *թիւ* 291.

դիրհեմը պատկանել է 834 թուին: Այդ գանձում եղած աբբասեան արծաթէ դրամների շարքում ի յայտ է եկել հիջրայի 146 (763—764) տարեթուով Հայաստանում թողարկուած մէկ հատ դրամ[95]:

45. Գոտլանդ կղզում, Աւենսկենս ագարակի էնդրէ գերեզմանոցում 1847—1849 թուերին գտնուել է 148 ամբողջական եւ 119 կտրուած արաբատառ արծաթ դրամներից բաղկացած գանձ, որի նորագոյն դրամը պատկանել է հիջրայի 248 (856—857) թուին: Շուրջ 205 աբբասեան դրամների շարքում, որոնք շրջանառութեան մէջ են մտել հիջրայի 132—233 (749—848) թուերին, եղել է նաեւ Հայաստանում թողարկուած դիրհեմ[96]:

46. Գոտլանդ կղզու Ֆարդումէ լճի ափին, Ռուտէ եւ Հելուի գերեզմանոցների միջեւ, 1844 թ. գտնուել է 1154 ամբողջական եւ 8 կտրուած արծաթէ դրամներից բաղկացած գանձ: Մասնագիտական որոշման է ենթարկուել գանձի պարունակած 205 դրամը, որոնց շարքում նորագոյնը վերաբերել է հիջրայի 309 (921—922) թուին: Այդ գանձում եղել են նաեւ աբբասեան դրամներ, թողարկուած Հայաստանում[97]:

47. Գոտլանդ կղզու Միրունքս ագարակի Լինդէ գերեզմանոցում գտնուել է արծաթեայ դրամներից եւ զարդերից բաղկա-

---

[95] МТ, 69, թիւ 81; ПМК, II, թիւ 632.
[96] МТ, 85, թիւ 207; ПМК, I, թիւ 283,
[97] МТ, 63, թիւ 20; ПМК, I, թիւ 281.

ցած գանձ, որում եղել են արեւմտաեւրոպական, բիւզանդական եւ արաբատառ դրամներ: Վերջիններիս շարքում ի յայտ է եկել հիջրայի 287 (900) տարեթուով Հայաստանում թողարկուած մէկ դիրհեմ[98]:

48. Գոտլանդ կղզու Նիւ–հաղեն ագարակի Կլինտէ գերեզմանոցում եկեղեցու մօտ 1833 թուին գտնուել է 117 արծաթեայ ամբողջական եւ կոտրուած դրամներից եւ 2 արծաթեայ ձողերից բաղկացած գանձ, որի նորագոյն դրամը պատկանել է հիջրայի 310 (922—923) թուին: Այդ գանձի կազմում եղել են նաեւ աբբասեան դրամներ, թողարկուած Հայաստանում հիջրայի 252—267 (866—881) տարեթուերով[99]:

49. Գոտլանդ կղզում Նեհր ագարակի Օտեմ գերեզմանոցում 1846 թուին գտնուել է արծաթեայ բիւզանդական (2) եւ արաբատառ (136) դրամներից բաղկացած գանձ, որի նորագոյն դրամը պատկանել է հիջրայի 325 (936—937) թուին: Գանձի աբբասեան դրամների շարքում եղել է նաեւ մէկ դիրհէմ, թողարկուած Հայաստանում հիջրայի 267 (880—881) տարեթուով[100]:

50. Գոտլանդ կղզում, Սունդրէ եւ Վամբլինգբո գերեզմանոցների միջեւ 1839 թուին գտնուել է 1923 ամբողջական եւ կոտրուած արծաթեայ դրամներից բաղկացած

98 MT, 76, թիւ 129; ПМК, I, թիւ 285.
99 MT, 77—78, թիւ 141; ПМК, I, թիւ 284.
100 MT, 65, թիւ 39.

գանձ, որի նորագոյն դրամը վերաբերել է Հիջրայի 344 (955—956) թուին։ Աբբասեան դրամների շարքում եղել է նաեւ Հայաստանում թողարկուած դրամ, բայց որում աբբասեան դրամները պատկանել են Հիջրայի 188—332 (803—944) թուերին[101]։

51. Գոտլանդ կղզում, Ռումս ագարակի Գրետլինգբո գերեզմանատանը 1852 թուին գտնուել է 352 ամբողջական եւ 162 կոտրուած արծաթեայ դրամների գանձ, որի կազմի նորագոյն դրամը վերաբերել է Հիջրայի 350 (961—962) թուին։ Այդ գանձում եղել է նաեւ Հայաստանում Հիջրայի 288 (900—901) տարեթուով դրամ[102]։

52. Գոտլանդ կղզում, Բոտելս ագարակի Հերում գերեզմանատանը 1860 թուին գտնուել է արծաթ դրամների եւ զարդերի գանձ, բաղկացած՝ 9 բիւզանդական, 14 արեւմտաեւրոպական, 543 ամբողջական եւ 321 կոտրուած արաբատառ դրամներից, որոնց մէջ նորագոյն դրամը պատկանել է Հիջրայի 353 (964—965) թուին։ Աբբասեան դրամների շարքում եղել է Հիջրայի 279 (892—893) տարեթուով Հայաստանում թողարկուած մէկ դիրհեմ[103]։

53. Գոտլանդ կղզում, Բոտելս ագարակի Հաֆդեմ գերեզմանոցում գտնուել է բիւզանդական, արեւմտաեւրոպական եւ

[101] МТ, 73, թիւ 106; ПМК, I, թիւ 287.
[102] МТ, 72, թիւ 102; ПМК, II, թիւ 633.
[103] МТ, 77, թիւ 137; ПМК, II, թիւ 634.

արաբատառ Ը.—Ժ. դարերին վերագրուող դրամներից բաղկացած գանձ: Վերջինիս նորագոյն դրամը պատկանել է հիջրայի 359 (969—970) թուին: Արեւելեան դրամները ներկայացրել են 220 ամբողջական եւ 2046 կտրուած դիրհեմներ, արաբական դրամների շարքում եղել է նաեւ Հայաստանում թողարկուած դիրհեմ: Գանձի արաբական դրամները վերաբերել են հիջրայի 193—334 (808—946) թուերին[104]:

54. Գոտլանդ կղզում, Կատլունդ ագարակում, Գրետլինգբո գերեզմանոցում 1842 թուին գտնուել է արծաթեայ զարդերից եւ 1554 արծաթեայ ամբողջական ու կտրուած արեւմտաեւրոպական, բիւզանդական եւ արեւելեան դրամներից բաղկացած գանձ: Դրամներից նորագոյնը կրել է իր վրայ հիջրայի 392 (1001—1002) տարեթիւը: Այդ գանձում յայտնուել է Սաջեան Յուսուֆ իբն-Դիւդադի անունով, հիջրայի 302 (914—915) տարեթուով Հայաստանում թողարկուած մէկ դիրհեմ[105]:

55. Գոտլանդ կղզում, Մալլգորդս ագարակի Ալսկոգ գերեզմանոցում գտնուել է արծաթեայ զարդերից եւ 125 ամբողջական ու 16 կտրուած բիւզանդական՝ 1, արեւմտաեւրոպական՝ 91, արաբատառ՝ 41 դրամներից բաղկացած գանձ: Վերջինիս պարունակութեան նորագոյն դրամը պատկանել է

[104] MT, 70—71, թիւ 94; ПМК, I, թիւ 286.
[105] MT, 72, թիւ 99; ПМК, I, թիւ 288.

1025 *թուին։ Հիջրայի* 167—323 (783—935) *թուերին դրուագուած աբբասեան դրամների շարքում ի յայտ է եկել նաեւ Հայաստանում թողարկուած մէկ դիրհեմ*[106]։

56. *Պոմերանիայի Դարս աւանում* 1873 *թ. գտնուել է* 4 *արծաթեայ ձողերից եւ* 25 *ամբողջական ու* 45 *կտրուած արծաթէ դրամներից բաղկացած գանձ, որի նորագոյն դրամը պատկանել է հիջրայի* 187 (802—803) *թուին։ Գանձի աբբասեան դրամների շարքում եղել է հիջրայի* 186 (802) *տարեթուով Հայաստանում թողարկուած մէկ դիրհեմ*[107]։

57. *Պոմերանիայում, Շտետինի մօտ (այժմեան Շեցին) Պիննով ագարակում, Պեենի գետի ափին, Շեցինի նաւահանգստի մօտ* 1890 *թ. գտնուել է մի քանի հարիւր արծաթէ ամբողջական ու կտրուած արեւելեան դրամներից բաղկացած գանձ, որի նորագոյն դրամը պատկանել է հիջրայի* 209 (824—825) *թուին։ Գանձի Օմայեան դրամների շարքում թողարկուած հիջրայի* 80—132 (699—750) *թուերին ի յայտ է եկել մէկ դրամ թողարկուած Հայաստանում։ Այդ դրամի վրայ տարեթիւը չի պահպանուել։ Աբբասեան դրամների շարքում ի յայտ են եկել հիջրայի* 148 (765—766), 161 (777—778), 248 (862—863) *տարեթուերով Հայաստանում թողարկուած դրամներ։ Գանձի*

---

[106] MT, 67, *թ.* 66; ПМК, II, *թ.* 635.
[107] MT, 126, *թ.* 36; ПМК, I, *թ.* 295.

աբբասեան դրամները (180 հատ) պատկանել են հիջրայի 132—209 (749—825) թուերին: Այդ նոյն գանձում յիշատակուածներից բացի եղել է նաեւ մէկ հատ աբբասեան դրամ թողարկուած Հայաստանում, բայց ջնջուած տարեթուով[108]:

58. Պոմերանիայում, Լարեսի մօտ (այժմեան Լորեց), 1878 թ. գտնուել է 122 ամբողջական եւ կտրուած արծաթէ դրամներից բաղկացած գանձ, որի նորագոյն դրամը պատկանել է հիջրայի 253 (867—868) թուին: Այդ գանձի կազմում ի յայտ է եկել նաեւ հիջրայի 190 (805—806) տարեթուով Հայաստանում թողարկուած դիրհեմ:

59. Պրուսիայում, 1835 թ. գտնուել է 33 արեւելեան դրամներից բաղկացած գանձ, որի նորագոյն դրամը պատկանել է հիջրայի 341 (952—953) թուին: Գանձի կազմում եղել է նաեւ հիջրայի 250 (864—865) տարեթուով Հայաստանում թողարկուած դիրհեմ[109]:

60. Պոմերանիայում, Կոլբերգ քաղաքի մօտ, Բուդենտինէ աւանում, 1837 թ. գտնուել է արծաթեայ առարկաներից ու արեւմտաեւրոպական, ինչպէս նաեւ արեւելեան դրամներից բաղկացած գանձ, որի նորագոյն դրամը պատկանել է 979 թուին: Այդ գանձի աբբասեան դրամների շարքում ի յայտ է եկել Հայաստանում թողարկուած

---

108 MT, 129, թի 47; ПМК, I, թի 292.

109 MT, 112, 54; ПМК, I, թի 297.

դրամ։ Գանձի աբբասեան դրամները թո-ղարկուած են եղել հիջրայի 157—312 (773—925) թուերին[110]։

61. Զելանդիա կղզում (Դանիա) Հաա-լեւի մօտ, Տերպեր ագարակում, 1911 թուին գտնուել է 434 ամբողջական եւ 1217 կտր-տուած եւրոպական եւ արեւելեան արծաթ դրամների գանձ, որի մէջ նորագոյն դրամը պատկանել է 962 թուին։ Արաբատառ դրամ-ների շարքում ի յայտ են եկել երկու արծաթ օմայեան արծաթ դրամների բեկորներ (ջնջուած տարեթուերով) եւ աբբասեան դրամներ, նոյնպէս թողարկուած Հայաս-տանում հիջրայի 252 (866), 267 (880/881), 287 (290/891), 286/899) 287 (900) տարե-թուերով[111]։

Կարելի է բերել Եւրոպայում գտնուած դրամական գանձերի ուրիշ օրինակներ, որոնցում եւս առկայ են եղել Հայաստանում դրուագուած արծաթէ դրամներ։ Սակայն արդէն վերոյիշեալներն էլ բաւական են գիտենալու համար, որ հայկական քաղաք-ներում 8—10րդ դարերում թողարկուած արաբատառ դիրհեմները միջազգային ապ-րանքափոխանակութեան շնորհիւ դուրս են անցել իրենց շրջանառութեան ներքին ոլոր-տից եւ թափանցել ինչպէս արեւելեան, այն-պէս էլ եւրոպական երկրների շուկաները։

---

[110] MT, 124, թիւ 24; ПМК, I, թիւ 296.
[111] ПМК, II, թիւ 636.

